# ՀԱՅ ԱՇՈՒՂՆԵՐ

ԼՈՒՍ ԳՑԱԾ ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹԷՆՈՎ

ԳԷՈՐԳԵԱՅ ԱԽՎԵՐԴԵԱՆ

---

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

ՕՐԻՈՐԴ ՄԱՆԷ ԱԽՎԵՐԴԵԱՆԻ

---

ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՄԲ

ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԻ

ԹԻՖԼԻՍ
Արագատիպ Մնացական Մարտիրոսեանցի.
Միքայէլեան փողոց, տուն 81.
1903

*Մի եղէց անպտուղ ի փոքր վաստակոյս՝ իբր ապաժան սերմանող անբերրի երկրի։*

Գրիգոր Նարեկացի, Բան Բ.

ԻՒՐ ԲԱԶՄԵՐԱԽՏ ՀՕՐ

# ԳԷՈՐԳ ԱԽՎԵՐԴԵԱՆԻ

ՅԻՇԱՏԱԿԱՆ

ԾՆՈՂԱՍԻՐՈՒԹԵԱՆ

ԱՆԿԵՂԾ ՀԱՒԱՍՏԵՕՔ

ՆՈՒԷՐ

ԻՒՐ ԵՐԱԽՏԱԶԳԱԾ

ԴՈՒՍՏՐ

ՕՐԻՈՐԴ ՄԱՆԷ

ԱԽՎԵՐԴԵԱՆԻՑ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ

*Ով թերթել և կարդացել է անմահ Սայաթ-Նովայի աշուղական երգարանը, նա անշուշտ ճանաչում է պատուական գրքի ուսումնասիրող և լոյս ընծայող հանգուցեալ բժշկապետ Գէորգ Ախվերդեանին։*

*Սայաթ-Նովայի յառաջաբանից յայտնի է, որ լուսահոգի բժշկապետը տարիներով՝ շատ նիւթերի թւում, հաւաքում էր «կենդանի աղբիւրից հանած կենդանի նիւթեր» ժամանակակից հայ ազգի պատմութեան համար։*

*Այսպէս էր կոչում Ախվերդեանն իւր ձեռք բերած աշուղական երգերը։*

*Հանգուցեալը մտադիր է եղել իւր բոլոր ժողովածուները ուսումնասիրութեամբ լոյս ընծայելու, բայց իւր շատ ու շատ հաւաքած երգերից յաջողել է հրատարակելու միայն իւր հայրենակից Սայաթ-Նովայի աշխատութիւնները. տասնամեայ երկարատև հիւանդութիւնն և մահն արգելք են եղել նրան իւր մտադրութիւնն իրագործելու։*

*Այդպիսով շատ երգերի հետ՝ նրա սեփհական գրաւոր աշխատասիրութիւնները մնացել են անտիպ։*

*Հանգուցեալոյ համեստափայլ դուստր օրիորդ Մանէ Ախվերդեանը ցանկացել է յաւէրժացնել իւր բազմարդիւն հօր յիշատակը։*

*Հօր ձեռագիր ժողոված երգերի կոյտն օրիորդն առաջարկեց Ազգագրական Հանդէսին՝ խմբագրելու և լոյս ընծայելու։*

*Տպագրութեան բոլոր ծախքերը յարգոյ օրիորդն ինքը հոգալով, գրքերն ամբողջովին նուիրում է Ազգագրական Հանդէսին։*

*Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ընդունելով մեծարգոյ օրիորդի*

*սիրալիր առաջարկութիւնը, իւր կողմից պարտք համարեց գրքի ճակատը զարդարել բազմաշխատ Ախվերդեանի համառօտ կենսագրութեամբ։*

*Կենսագրական նիւթերը քաղուած են գրաւոր աղբիւրներից և ականատեսների հաստատուն վկայութիւններից։*

*Ազգագրական Հանդիսի խմբագրութեան ցանկութիւնն էր գրքիս մէջ զետեղած աշուղների կարճ կենսագրութիւնը նմանապէս կցել տպագրութեան հետ, բայց հնարաւորութիւն չեղաւ։ Հաւաստի աղբիւրներ կամ շատ սակաւ են, կամ իսպառ չըկան, իսկ չինծու յերիւրանքների Հանդէսս չըկամեցաւ ձեռնարկել. ուստի և բաւականացաւ հանգուցեալ Ախվերդեանի ձեռքով արած փոքրիկ տեսութիւններով։*

*Գրքիս վերջին Ազգագրական հանդիսի խմբագրութիւնը հարկ համարեց կցել և մի համառօտ բառարան՝ օտարազգի և խրթին բառերի։*

*«Գուսանք» վերնագրի ներքոյ առաջին հատորում Ախվերդեանը լոյս է ընծայել Սայաթ-Նովան, որի երկրորդ հատորն է յարգոյ օրիորդի ներկայ հրատարակութիւնը «Հայ աշուղները»։*



# ԳԷՈՐԳ ԱԽՎԵՐԴԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*ԺԹ. դարի Ա. քառորդի պտուղ էր Գ. Ախվերդեանը. նա Թիֆլիս քաղաքի պատուաւոր հայ ընտանիքի զաւակ էր. նրա ծնունդն էր* 1818 *թուականին։*

*Թէ ինչպէս է անցկացրել փոքրիկ Գէորգն իւր մանկութեան օրերը, ինչ դաստիարակութիւն է ստացել,—ոչինչ յայտնի տեղեկութիւններ չկան. այսքանը հաստատ է, որ հօրից որբացած՝ մանուկը մինչև* 12 *տարեկան հասակը մնել է այրի մօր հսկողութեան ներքոյ։ Լինելով կրակոտ և աշխոյժ բնաւորութեան տէր, նա յետ չի մնացել հասակին յատուկ կենդանութիւնից, սիրել է հայրենի աշխարհի երեխայական խաղերն ու զուարճութիւնները։*

*Երեխայի այս կայտառութիւնը, երևի, շատ հաճելի չէ թուացել նրա հոգածու մօրը։ Վերջինս փութացել է հնարք գտնել զաւակին օտարութեան մէջ դաստիարակութիւն տալու։ Տիկնոջ սրտի բաղձանքն ի կատար է ածում իւր հարազատ եղբայր Ստեփան Ղամբարեանը։ Նա* 1830 *թուին տանում է փոքրիկ Գէորգին Մոսկուա և յաջողեցնում Լազարեան ճեմարանի սան դարձնելու։*

*Կենդանի և ժիր մանուկը միանգամայն վերածնւում է ճեմարանում. մանկական խաղերը նա ըստ ամենայնի մոռանում է և նուիրւում ուսման։ Շատ չի քաշում, Ախվերդեանը աչքի է ընկնում ճեմարանի կազմակերպութեանը՝ իբրև փայլուն յառաջադէմներից մէկը և իւր վարք ու բարքովն ընկերաց մէջ օրինակելին։ Հետևաբար՝ զարմանալու ոչինչ չկար, երբ* 1834 *թուին աւարտում է ճեմարանի այն ժամանակուան լիակատար դասընթացը և մտնում Մոսկուայի Կայսերական համալսարանի բժշկական բաժինը։*

*Համալսարանում Ախվերդեանը նմանապէս գերազանց է հանդիսանում և պրոֆեսօրների համակրանքը գրաւում ու զարմացքի առարկայ դառնում։*

սիրալիր առաջարկութիւնը, իւր կողմից պարտք համարեց գրքի ճակատը զարդարել բազմաշխատ Ախվերդեանի համառօտ կենսագրութեամբ։

Կենսագրական նիւթերը քաղուած են գրաւոր աղբիւրներից և ականատեսների հաստատուն վկայութիւններից։

Ազգագրական Հանդիսի խմբագրութեան ցանկութիւնն էր գրքիս մէջ զետեղած աշուղների կարճ կենսագրութիւնը նմանապէս կցել տպագրութեան հետ, բայց հնարաւորութիւն չեղաւ։ Հաւաստի աղբիւրներ կամ շատ սակաւ են, կամ իսպառ չըկան, իսկ չինծու յերիւրանքների Հանդէսս չըկամեցաւ ձեռնարկել. ուստի և բաւականացաւ հանգուցեալ Ախվերդեանի ձեռքով արած փոքրիկ տեսութիւններով։

Գրքիս վերջին Ազգագրական հանդիսի խմբագրութիւնը հարկ համարեց կցել և մի համառօտ բառարան՝ օտարազգի և խրթին բառերի։

«Գուսանք» վերնագրի ներքոյ առաջին հատորում Ախվերդեանը լոյս է ընծայել Սայաթ-Նովան, որի երկրորդ հատորն է յարգոյ օրիորդի ներկայ հրատարակութիւնը «Հայ աշուղները»։



# ԳԷՈՐԳ ԱԽՎԵՐԴԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ

ԺԹ. դարի Ա. քառորդի պտուղ էր Գ. Ախվերդեանը. նա Թիֆլիս քաղաքի պատուաւոր հայ ընտանիքի զաւակ էր. նրա ծնունդն էր 1818 թուականին։

Թէ ինչպէս է անցկացրել փոքրիկ Գէորգն իւր մանկութեան օրերը, ինչ դաստիարակութիւն է ստացել,—ոչինչ յայտնի տեղեկութիւններ չըկան. այսքանը հաստատ է, որ հօրից որբացած՝ մանուկը մինչև 12 տարեկան հասակը սնել է այրի մօր հսկողութեան ներքոյ։ Լինելով կրակոտ և աշխոյժ բնաւորութեան տէր, նա յետ չի մնացել հասակին յատուկ կենդանութիւնից, սիրել է հայրենի աշխարհի երեխայական խաղերն ու զուարճութիւնները։

Երեխայի այս կայտառութիւնը, երևի, չատ հաճելի չէ թուացել նրա հոգածու մօրը։ Վերջինս փութացել է հնարք գտնել զաւակին օտարութեան մէջ դաստիարակութիւն տալու։ Տիկնոջ սրտի բաղձանքն ի կատար է ածում իւր հարազատ եղբայր Ստեփան Ղամբարեանը։ Նա 1830 թուին տանում է փոքրիկ Գէորգին Մոսկուա և յաջողեցնում Լազարեան ճեմարանի սան դարձնելու։

Կենդանի և ժիր մանուկը միանգամայն վերածնւում է ճեմարանում. մանկական խաղերը նա ըստ ամենայնի մոռանում է և նուիրւում ուսման։ Շատ չի քաշում, Ախվերդեանը աչքի է ընկնում ճեմարանի կազմակերպութեանը՝ իբրև փայլուն յառաջադէմներից մէկը և իւր վարք ու բարքով ընկերաց մէջ օրինակելին։ Հետևաբար՝ զարմանալու ոչինչ չըկար, երբ 1834 թուին աւարտում է ճեմարանի այն ժամանակուան լիակատար դասընթացը և մտնում Մոսկուայի Կայսերական համալսարանի բժշկական բաժինը։

Համալսարանում Ախվերդեանը նմանապէս գերազանց է հանդիսանում և պրոֆեսօրների համակրանքը գրաւում ու զարմացքի առարկայ դառնում։

Դեռ ևս երկրորդ կուրսում՝ համալսարանական ուսանողների համար մրցանակ նշանակած ոսկէ մեդալը Աբովեանն է ստանում և ընդհանուրի ուշադրութիւնը շահում։

Թէ ինչ նիւթական միջոցներով է կարողացել շարունակել Աբովեանը համալսարանական ուսումը, դարձեալ որոշ կերպով դժուարանում է ասել Աբովեանի կենսագիրը։ Այսքանը պարզ է, որ մեծ դժուարութիւններ է կրել Աբովեանը և աշխատել է իւր հօր բարեկամներից ծածկելով իւր դրութիւնը՝ դառն աշխատանքով իւր ապրուստը հայթհայթել։

Չենք կարող նմանապէս ասել, թէ ինչ բարեյաջող դէպքերի շնորհիւ Աբովեան ուսանողը մուտք է գտնում գերմանական պատուոր, լրջամիտ և մեծահամբաւ Ձեգերհօլմի ընտանեկան շրջանում, ուր շարունակ օգտուելով յայտնի գիտնականի խորհուրդներից, իւր ամբողջ կեանքում ղեկավարւում է խոհական բարոյագիտի մարդասիրական և քրիստոնէավայել ուղղութեամբ։ Անշուշտ Ձեգերհօլմի ազդեցութեամբն է Աբովեանը կատարելագործուել ֆրանսիական, գերմանական և անգլիական լեզուագիտութեանց մէջ։

Ինչ և իցէ, գիտութեան մեծ պաշարով յաջողապէս աւարտում է Աբովեանը համալսարանը և 1839 թուին վերադառնում Թիֆլիս ու կարգւում գինուորական բժիշկ։

Մայրենի քաղաքում երիտասարդ բժիշկը կարճ միջոցում աչքի է ընկնում իւր յաջողաձեռնութիւնով և անշահասիրութիւնով։

Առանց խտրութեան՝ նա մեծ սիրով այցելում է իւր օգնութեանը դիմող իւրայինին և օտարին, հարուստին և անանկին։ Վերջիններիս ոչ միայն բժշկում էր եռանդով, այլ և իւր աղքատիկ քսակից հոգում էր հիւանդի դեղերի և յարմարութիւնների ծախքերը, մինչև իսկ արթուն գիշերներ էր անցկացնում վտանգաւոր հիւանդի անկողնի մօտ՝ դարձեալ խտրութիւն չդնելով իւր օգնութեանը կարօտ տկարի աստիճանի և վիճակի մէջ։ Ի՞նչ կարծիք ուրեմն, որ ընդհանուրի սիրելին է դառնում այդպիսով և անուն ու պատիւ վաստակում։

Երկար չի մնում, սակայն, թիֆլիսցիների սիրելի Աբովեանն իւր ծննդավայրում։ Զինուորական նախարար Չերնիշեւը Անդրկովկասն ուսումնասիրելու համար գալով Թիֆլիս, երիտասարդ բժշկի մէջ գտնում է բազմակողմանի զարգացումն և մեծ հմտութիւն, վերցնում է հետը և նրա գործակցութեամբ կատարում իւր ուսումնասիրութիւնը ու վերջն իբրև անձնական բժիշկ՝ տանում է իւր հետ Պետերբուրգ։

Շատ չանցած՝ Աբովեանի աստղը սկսում է փայլել Ռուսիոյ մայրաքաղաքում. նախարարի բարձր հովանաւորութիւնն ամեն դուռը բաց է անում նրա առաջին, կարճ միջոցում նա գրաւում է թէ նախարարի ընտանիքի սէրն ու մտերմութիւնը և թէ բարձր շրջանների ու-

չադրութիւնը։ Ամեն տեղ ել ու մուտ է անում Աբովեանը և ամեն տեղ սիրալիր ընդունելութեան է արժանանում։

Ահա մի բարեյաջող դէպք, որով հարթ և լայն ասպարէզ է բացւում Աբովեանին աշխարհային փառքերի և աստիճանների հասնելու, բայց որից ինքը չի կամենում օգտուել։ Ընդհակառակը՝ ձեռքից եկածին չափ՝ չարունակ պէտք էր գալիս բարի դիտաւորութեամբ Չերնիշեւին դիմողներին, միջնորդում էր նախարարին և գործ գլուխ բերում։ Սակայն ինչ արած, որ Պետերբուրգում բաղդի ժպիտը ոչ միայն իւր օգտին չի գործ դնում Աբովեանը, այլ նրա սրտին առաւել մեծ վէրք է պատճառում. փոխանակ ուրախանալու՝ նա խորապէս տրտմում ու տխրում է. մի ինչ որ ներքին թախիծ ճնշում ու ճմլում է նրա զգայուն սիրտը. նրա վեհ հոգին ձգտում է առաւել վեհ նպատակների, հայրենիքի սէրը նրան հանգիստ չի տալիս, նրան քաշում է դէպի իւր ծընընդավայրը։

Եւ ահա վերջապէս նա վստահանում է դիմել նախարարին և առաջարկել իւր հրաժարականը։

«Тоска по родинѣ» (հայրենեաց թախիծը) չի քաշւում անկեղծօրէն պատասխանել Աբովեանը նախարարի զարմացական հարցասիրութեանը։ Շատ ցաւում է նախարարը, բայց վերջ ի վերջոյ ստիպուած է լինում արձակուրդ տալ Աբովեանին՝ 1846 թուին, հայրենիք վերադառնալու։ Իրաւունք ունէր նախարարը ցաւել սիրած մարդից զրկուելու համար. Չերնիշեւն այնքան էր սիրում Աբովեանին, որ յաճախապէս ժամեր էր որոշել նրա հետ խօսակցելու համար։

Գալիս է Աբովեանը Թիֆլիս նախարարի և իւր ամուսնու յանձնարարականներով։ Մեզ համար մեծ ցաւ եղաւ, գրում է նախարարի կինը փոխարքայ Վորոնցովի կնոջը, այդպիսի մի պատուական անձնաւորութիւնից զրկուելը։ Եւ խելացի ու հեռատես կուսակալն անձամբ հաւաստիացաւ Աբովեանի ընդունակութիւններին և բնատուր հանճարին։

Ամեն մի լուրջ խնդրի ժամանակ, ամեն մի կովկասեան շահերին վերաբերեալ ներքին խորհրդածութիւններին և մասնաժողովներին՝ իշխան Փոխարքան մասնակից էր անում Աբովեանին. Կովկասի ջրաբաշխական խնդիրներում, Ղարաբաղը ոռոգելու գործում Աբովեանը զգալի մասնակցութիւն է ունեցել. մինչև իսկ մի քանի յայտնի դատաստանական վճիռների մէջ Աբովեանի կարծիքը գերակշռութիւն է ունեցել։ Երկու յայտնի իշխանների գործած գեղծումների առթիւ՝ Աբովեանի գրած գրաւոր վճիռն է կատար ածուել, մինչդեռ նա ոչ դատաւոր և ոչ պաշտօնեայ է եղել, այլ սոսկ ներքին խորհրդատու, բայց հանճարաւոր և քաղաքագէտ ու արդար խորհրդատու։

Միայն բժշկականութիւնն և մայրաքաղաքի փարթամ կեցութիւնը

չէր Պետերբուրգումն Ախվերդեանի պարապմունքը. բանախոյզ երիտասարդի մէջ ծնում է հայրենի գրականութեան սէրը և նա սկսում է ժողովել հայերէն գրքեր ու ձեռագիրներ։

Բաղդը նրան յաջողում է։ Պետերբուրգից վերադարձին՝ Մոսկուայում նա իւր մատենադարանին աւելացնում է հանգուցեալ Սալլանթեանի գրադարանից սեպհական փողով գնուած բազմաթիւ նոր գրքեր։

Միանգամայն անձնատուր եղած հայ պատմութեան ուսումնասիրութեանը, Ախվերդեանն առաջին անգամի պէս ջերմ չը կպաւ բժշկականութեանը։

Նա սկսեց ժողովել ամենայն տեղերից հայերէն տպուած ու ձեռագիր մատեաններ. Էջմիածնի և Լազարեան ճեմարանի մատենադարանները, այն ժամանակուան Թիֆլիսի միակ գրավաճառ յայանի Էնֆիաճեան եղբարց գրավաճառանոցը, Փոխարքայի դիւանատան մէջ գտնուած հայ ազգին և եկեղեցւոյն վերաբերեալ թղթերն ու յիշատակարանները իշխան Վօրոնցովի բարեհաճ հրամանաւ նա ուսումնասիրեց ու օգտուեց, մինչև իսկ Լեհաստանի դիւանների վրայ դարձրեց իւր հետախոյզ աչքը՝ հայ գաղթականութիւնից մնացած պատմական յիշատակարաններ գտնելու յուսով, ասում է «Կռունկ» ամսաթերթի էջերում Ախվերդեանի դամբանականը գրող, արդէն հանգուցեալ Համբարձում Էնֆիաճեանը [1]։

Օրուայ մեծ մասն իւր մատենադարանին նուիրած՝ Ախվերդեանը չարունակ քաղուածքներ էր անում կարդացած գրքերից, մանաւանդ՝ պատմական յիշատակարաններից։ Նրա գլխաւոր փափագն էր մի հայոց պատմութիւն գրել, ուր մանրամասնօրէն ուսումնասիրուած լինէին ոչ թէ միայն չոր ու ցամաք պատմական փաստերը, այլ և լոյս ցերեկի նման արտափայլէր հայի հին ու նոր քաղաքական և առանին կեանքը, ազգային սովորութիւնները, լեզուն և ամենայն ինչ։ Եւ Ախվերդեանը համոզուեց, որ բաւական չեն գիրն ու գրեանքը, որ հատատիպ մատեաններից և ձեռագրերից ոչ պակաս անհրաժեշտ է ազգի կենդանի մատեանը զննել։ Ժողովուրդը՝ ահա ինչն եղաւ գլխաւորապէս Ախվերդեանին գրաւողը։

Թողեց նա այնուհետև քաղաքի բարձր շրջանները և մտեցաւ ստորին խաւերին։

Ամենից առաջ նրա ուշադրութիւնը գրաւեց Թիֆլիսի համքարութիւնը՝ իւր մանրամասն կազմակերպութեամբ։ Հիացած էր Ախվերդեանը. նա համքարութեան մէջ գտաւ Թիֆլիսի հասարակութեան հաստատուն տնտեսականութեան գլխաւոր յենարանը և սկսեց խորազննին հետազօտութեամբ հասու լինել համքարութեան ներքին և արտաքին կեանքին։

---

[1]) Տես «Կռունկ» ամսագիր, 1861, նոյեմբեր, երես 870—886։

Այնուհետև համքարի համար լայն յետ բացուեց Գ. Ախվերդեանի դուռը. դեռ սկզբներումն իբրև փորձառու և ձրի բժշկի, ապա իբրև անկեղծ և օգտակար խորհրդատուի, ամեն ժամանակ անարգել մուտ և ել ունէին համքարի ուստաբաշիքը, աղսաղկալներն և ամեն մի արհեստաւոր իրանց տան պէս «Հախինի տղայ» աղա Ախվերդեանի դահլիճը և ընդունարանը։ Վերջին կինտօն մրգի փթանոց թաբախը գլխին գալիս էր «աղայ դոխտուրից» իր ցաւերին դարման գտնելու, իր սեպհական գործերի մասին խելք սովորելու։

Եւ դարման էր անում «ձեռքը թեթև» բժիշկը և խորհուրդներ էր տալիս և ժամերով հարց ու խնդիր էր լինում ամեն մի համքարի անդամից համքարական ընկերութեան բոլոր կարգ ու կանոնների, ծէսերի, գրքերի վերաբերմամբ՝ Թիֆլիսի ընիկ հայ բարբառով, իւր մանկական թոթոված հայերէնով։

Չէ, դեռ նպատակին իսպառ չէր հասել Ախվերդեանը, դեռ գործի սկզբնաւորութեան պաշարը շատ թերի էր։ Ախվերդեանն իրապէս համոզուած էր, որ անցել են ժամանակները, երբ ամեն ինչ գրաբառով էր կատարւում, նա գիտէր, որ գրաբարը հոգևորականներին ու մի բուռը խալֆայ կարդացողներին է միայն ծառայել, որ ժողովուրդը Աստուծոյ տաճարումն է գրաբարի հոտն առնում և իւր առանձնական աղօթքը սուրբ սեղանի առջև դարձեալ իւր մօր կաթի հետ սովորած աշխարհիկ խօսքերումն է իւր Արարչին վեր առաքում. հետևաբար՝ եթէ ինքն իւր պատմութիւնը գրաբառով գրելու լինէր, բոլոր հայ եղած գրքերի հետ միասին՝ իւրն էլ պիտի մի փոքրաման կարդացողների խցերի կամ հացատների անկիւններում փոշիների մէջ թաղուած ընկնէր և ժողովուրդը անմասն պիտի մնար։ Քաւ լիցի, այդ չէր Ախվերդեանի ցանկացածը, նա սիրում էր անխտիր ամեն հայ մարդին և ցանկանում էր հայ գիրն ընդհանուրին սիրելի անել, որպէս զի ամեն հայ, քաղաքացի թէ գեղջուկ կարող լինի երջանկայիշատակ մեծ բարերար Մեսրոպի պարգևած տառերից օգտուել։ Տեսնում էր Ախվերդեանը, որ մայրենի քաղաքում՝ իւր ընիկ հայրենակիցների տներում՝ վրացու տառն էր ազատ մուտք գործել, շատ սակաւ տներ կային, ուր մանկական թոթովանքների կապանքներն ազատուած երեխայից բռնած՝ մինչև ոտքը գերեզմանի դուռը դրած ծերունիններն ու պառաւները ոչ միայն խօսում էին վրաց լեզուով, այլ և իրանց միտքը միմեանց վրաց տառերով էին հաղորդում, իսկ դրա պատճառն այն էր, որ վրաց գիրը սերտ կապ ունէր տներում խօսուած հասկանալի լեզուի հետ. ուրեմն ինչու այնպէս չանել, որ հայ մարդն իւր հայ գրի հետ կապուած լինի։

Տուր ժողովրդին իւր սրտին մօտ նիւթեր, և նա անշուշտ չորս ձեռքով կը գրկի այն։

Եւ Ախվերդեանը գտաւ ժողովրդի սիրելի նիւթերը. նիւթեր, որոնք նրա տխրութեան և ուրախութեան ժամանակ նրա սրտի և հոգու լարերը

թրթռացնէին, նրան հասկանալի լեզուով ցաւերը մոռանալու պաշար տային—Երգը, ժողովրդին ծանօթ նուագարանների թելերի վրայ հնչեցրած խաղերն ու մուխամբաղները. ահա ինչն էին Ախվերդեանի ընտրած նիւթերը։

Երկրորդական համարեց նա այնուհետև իր փայփայած հայոց պատմութիւնն ու այլ գիտնական ուսումնասիրութիւններն և երգեր ժողովելու հոգսին կացաւ։

Սկզբնաւորութիւնը յաջող եղաւ, շատ չանցած՝ օրին մէկը Սայաթնեան Տէր-Մովսէս աւագ քահանայից պարգև է ստանում Թիֆլիսի բարբառով խզմզած մի հաստ տետրակ՝ լիքը մուխամբաղներով. խզմզած եմ ասում, որովհետև երգերից մի քանիսը գրուած են լինում հայերէն բոլորգրով, մնացածն անվարժ նոտր գրով, իսկ շատ բաժինը՝ վրացերէն տառերով։

Այսքանը չէր. օր չանցնէր այնուհետև, որ Ախվերդեանին չայցելէին ոչ միայն իր հայրենակից Թիֆլիսեցիները, այլ և Թիֆլիս ժողովուած հայեր։ Տաճկահայ, պարսկահայ, հնդկահայ, ռուսական տիրապետութեան գաւառներից եկած հայեր, հարուստ, աղքատ, գէտ, տգէտ սկսեցին ազատ մուտք գործել նրա մօտ, իսկ ամենից գերակշիռ թիւ կազմողները լինում էին հայ աշուղներն ու շայիրները։ Սրանք իրանց նուագարաններով, հին յայտնի աշուղների և իրանց յօրինած երգերի տետրակներով գալիս էին և իրանց յարգանքը մատուցանելով՝ գրուածները թողում էին ու գնում։ Գաւառներից նմանապէս անընդհատ ստանում էր Ախվերդեանն երգերի տետրակներ։

Այս բոլորի մէջից Ախվերդեանն առաջին տպագրութեան համար նախապատուութիւն տուեց Սայաթ-Նովային երկու պատճառով. նախ՝ որովհետև իր մայրենի բարբառով էր, ուրեմն իր սրտին աւելի մօտիկ և երկրորդ՝ որ արդարև բազմաթիւ կուտակուած երգերից ամենաընտիր, ամենաբանաստեղծականն և ամենագովելին իր հայրենակից Սայաթ-Նովայինն էր. վերջինիս երգերը բոլոր աշուղական խաղերի թագն ու պսակն են. մեր ոչ մի աշուղը բանաստեղծական ձիրքով չի կարող ձգուել Սայաթ-Նովայի հետ, որը թէպէտ կեանքի վերջերումը վարդապետացել է, բայց սկզբումը մի հասարակ արհեստաւոր՝ սազը ձեռքին աշուղութիւն է արել Վրաց արքայական պալատում, իշխանների ապարանքներում, հարուստների և վաճառականների ճոխ սեղանների վրայ և աղքատի խրճթում։

Ասելով, թէ Ախվերդեանը զբաղւում էր հայերէն երգերով, մենք չենք կարող պնդել, որ նա և ուրիշ գրաւոր աշխատասիրութիւններ ևս չունէր. մենք գիտենք, որ նրա խորին ուշադրութեան առարկան էր Թիֆլիսի համքարութիւնը։ Այդ յայտնի էր տեղական բարձր իշխանութեանը։ Իշխան փոխարքայ Բարեատինսկու պատուէրով՝ Ախվերդեանը Թիֆլիսի համքարութեան վերաբերմամբ կատարել է մի լուրջ և գիտ-

նական ուսումնասիրութիւն, որը նրա երկարատև հիւանդութեան և մահուան առթիւ շատ ժամանակ մնաց անտիպ և մահից 23 տարի յետոյ միայն, 1883 թուին լոյս տեսաւ և այն՝ շատ համառօտ։

Ի դէպ ասենք՝ որ Ախվերդեանն իւր բազմակողմանի գրաւոր պարապմանց հետ՝ և պետական պաշտօնեայ էր և այն՝ սիրած ու յարգած պաշտօնեայ։ Նա փոխարքայ Բարեատինսկու մօտ առանձին յանձնարարութեանց աւագ աստիճանաւոր էր. (Старшій чиновникъ особыхъ порученій)։

Ժամանակակից յիշատակարանն է ասում, թէ իշխան փոխարքան լիապէս յարգում էր Ախվերդեանին, գնահատում էր նրա կարծիքները։ Իշխանը քաջ գիտէր, որ Ախվերդեանը մեծ ժողովրդականութիւն էր վայելում Թիֆլիսի ընդհանուր հասարակութեանց խաւերում, ուստի և յանձնեց նրան մանրամասն զեկուցումն պատրաստել համքարի և համքարութեան վերաբերմամբ։

Այս լիակատար զեկուցման մի կտորն էր, որ 1882 թուին լոյս տեսաւ «Юридическое обозрѣніе» ռուսական թերթում, իսկ առանձին տպագրուեց հետևեալ 1883 թուին։

Զեկուցումը պատրաստել հրամայելուն՝ կուսակալին առիթ էր տուել մի քանի պաշտօնական անձինքներից համքարութեան մասին իրան մատուցած զեկուցումները, այնպիսի անձինքներից, որոնք ոչ ճանաչում էին համքարութիւնն և ոչ ուսումնասիրել էին։ Բացի դոցանից, իշխան փոխարքային համքարութեան դէմ բողոքներ էին տուել մի քանի այդ կազմակերպութեան կատաղի թշնամի քաղաքի բնակիչներ։ Այն տեղն է հասել, որ քաղաքային վարչութիւնը մտադրուել է խնդրել բարձրագոյն իշխանութիւնից ջնջելու և իսպառ վերջացնելու համքարութիւնը։

1857 թուին մաղ մնաց, որ պիտի յաջողուէր համքարի թշնամիներին յաղթութիւնը տանել, եթէ Ախվերդեանը պաշտպան չը հանդիսանար ազգային դասից արհամարհուած ընկերակցութեանը. պիտի ասած՝ որ ինքը իշխան Բարեատինսկին նմանապէս խիստ տհաճ էր դէպի համքարական կազմը, բայց Ախվերդեանի խելացի զեկուցագիրը կարդալով իշխանը ոչ միայն չը ջնջեց համքարութիւնը, այլ հետևեալ խօսքերով արտայայտեց Ախվերդեանի զեկուցագրի իւր վրայ արած տպաւորութիւնը և այս մասին արձակած իւր վճիռը։

«Կարդալով այս զեկուցագիրը, գրում է իշխան փոխարքան, ես գալիս եմ այն եզրակացութեան, որ համքարական հաստատութեան մէջ՝ համեմատած իւր անօգտակարութեանը՝ օգտաւէտն աւելի շատ է։ Անօգտակարութիւնն և համքարութեան մէջ մուտք գտած զեղծումներն ու չարագործութիւնները յառաջ են գալիս կառավարութեան անհսկողութիւնից և անուշադրութիւնից։ Իսկ եթէ իշխանութիւնը լրջօրէն հսկէ և աչալուրջ լինի, չը մնասելով համքարութեան հիմնական սկըզ-

բունքներին՝ բոլոր զեղծումները կարող են ոչնչանալ։ Համքարութիւնն ինքն ըստ ինքեան կարող է կազմալուծուել, երբ կը վերացուին և կը չքանան նրա գոյութիւնը յառաջացնող պատճառները, երբ երկրի ճանապարհորդական հաղորդակցութիւնները կընդլայնուեն և կը բարւոքուին, երբ առուտուրն ու վաճառականութիւնը կը ծաղկին, երբ բարեխիղճ և զարգացած արդիւնաբերողների ու առևտրականների դասակարգը կը մեծանայ և վերջապէս, երբ մեր ատեկանութեանց մէջ կը թագաւորէ արդարութիւնն ու անշահասիրութիւնը. (13 սեպտեմբերի, 1857 ամի) [1]։

Միայն պետական անձինքներից ու հասարակ դասակարգից չէր յարգուած Թիֆլիսում Ախվերդեանը. նրա բնակարանը, երկար տարիների հիւանդի անկողնի շուրջը շարունակ հաւաքւում էին Թիֆլիսի զարգացած հայերը. ազգային գաղափարներով տոգորուած հայեր, համամարդկայնական ուղղութիւնն ազգայնական սանդուխքներով վեր բարձրացնող երիտասարդներ, ուսեալ համալսարանականներ խմբուած Ախվերդեանի սենեկում՝ նրա հետ միասին խորհում էին ազգային գիտակցութիւնը մտցնելու Թիֆլիսում կեդրոնացած բնիկ և գաւառացի հայութեան մէջ. Պետրոս Շանշեանցի նման լուսաւորեալ անձն իւր համալսարանական ընկերներով, իւր յառաջադէմ աշակերտներով անբաժան էին Ախվերդեանի մօտից. չենք մեղանչիլ, եթէ պնդենք, որ 60-ական թուականներին Ռուսաստանն ողողող գրական ուղղութիւնը հայի կաթի մէջ մակարդուեցաւ Ախվերդեանի մառանում։ Եւ եթէ Շանշեանցն էր այդ փորձառու տնտեսը, որ խալֆայական ուղղութեան ճգնաժամը բերեց, անշուշտ ոչ անմիջապէս Ախվերդեանի ազդեցութիւնը կար այդ գործում։

Անմահ պատմութեանն և ժամանակակից կենդանի ծերունիներին յայտնի է այն բարոյական վերածնութիւնը, որ ունեցաւ Թիֆլիսն և նրանով բոլոր Կովկասի հայութիւնը Շանշեանցի և իւր ձեռնասունների, նմանապէս և ուրիշ բանիմաց մարդկանց ձեռքով։

Հայ բեմ, հայ տպարան, հայ ամսագիր 60 թուականների ծնունդ են և այդ ամեն մի ճիւղերում նորաւարտ երիտասարդների մասը կայ. և հաստատ է, որ Շանշեանցի նման գիտնական և բարոյական տեսչի անմիջական ներկայութիւնն Ախվերդեանի առանձնասենեակի համար անհրաժշտ էր. իսկ Շանշեանցի շուրջը բոլորուած փոքրիկ խմբակի հետ օր ըստ օրէ ձուլւում, զարգանում և քաղաքակրթւում էին բնական խելքով օժտուած, աչքի ընկնող անձնաւորութիւններից շատերը։

Լսենք ռուս բանասէր Բէլօղօլովուն և կը տեսնենք, որ քաղաքագիտութեան և քաջութեան մէջ յայտնի, աշխարհահռչակ հերոսը— Ռուսաստանի փայլուն աստղերից մինը՝ կոմս Միքայէլ Լօռռ-Մէլիքեա-

---

[1]) Տես „Тифлисскіе амкары" երես 4—5։

նը նմանապէս Ախվերդեանի բովումն է եղել գտնւած։ Ահա ինչ է գրում գիտնական Բէլօգօլովին Լօռու-Մէլիքեանի մասին իւր գրած յիշողութեանց մէջ, այն էլ ոչ թէ ուրիշների պատմուածքների հիման վրայ, այլ նոյն իրա Լօրիսի բերանից լսած[1]։

Լօռու-Մելիքեանը Թիֆլիսում մի քեռու որդի ունէր՝—բժշկապետ Իւրիյ (Գէորգ) Ֆ. Ախվերդով, մի զարգացած և լրջամիտ անձնաւորութիւն։ Ախվերդեանից չը ծածկուեցին Լօրիսի բնաւորութեան մէջ թաղնուած հարուստ ձիրքերը և նա ամենայն զօրութեամբ սկսեց համոզել և յորդորել Լօրիսին, որքան կարելի է, շատ կարդալ, որով և ընդլայնել իւր մտաւոր հորիզոնը։ Բժշկապետն ունէր իւր ընտիր գրադարանը։ Նա առաջարկեց Լօրիսին օգուտ քաղել իւր գրքերից, որոնց թւում գտնւում էր Այֆիներիի Ցուչիկները։ Լօրիսն երախտագիտութեամբ միշտ յիշում էր, թէ ինչպիսի տպաւորութիւն թողին իւր վրայ այն Ցուչիկները և թէ ինչպէս ինքն այնուհետև սերտ սիրով սիրելով գրքերը, հարստացնում էր նրանցով կեանքի վերաբերութեամբ իւր ունեցած հայեացքներն և ամենամեծ բաւականութիւն էր ստանում։

Ահա մի մեծ մարդ, որ իւր բարձր բարոյական առաքինական ձիրքերով այսչափ ազդեցութիւն է գործել ամեն դասակարգի վրայ։ Թողնենք ընդհանուրը. մենք քրքրեցինք մեր բուն ազգային ներքին կեանքը և տեսանք, որ չի զարթնել Ախվերդեանի օրերում որ և է եկեղեցական և ազգային խնդիր, ուր նա պիտանի չի գտնուէր իւր հեռատես և առողջամիտ դատողութիւններով։

Եթէ չեմ սխալւում, հոգելոյս Մատթէոս կաթուղիկոսի ընտրութեանը Թիֆլիսի կողմից պատգամաւոր հրաւիրուեց Գ. Ախվերդեանը։ Ժողովը Ներսիսեան դպրոցումն էր։ Աղմուկը մեծացաւ. բոլորեքեան միաձայն Ախվերդեան էին ձայն տալիս և չէին տեսնում իրանց ընտրելին։

Կարճահասակ և նրբակազմ բժշկապետն երբ քանիցս հրաժարուեց պատուաւոր առաջարկութիւնից ու հասարակութեան կողմից անտես մընաց, նա սեղանը քաշեց դահլիճի միջավայրը, բարձրացաւ վրան և շնորհակալութեամբ հրաժարուեց պատգամաւորութիւնից, հաւատացնելով Թիֆլիսի հայ ներկայացուցիչներին, թէ իւր և ամուսնու տկարութիւնը հնարաւորութիւն չեն տալիս իրան ընդունելու ազգի կողմից յանձնարարելիք սուրբ գործը։

Իւր փոխանակ՝ բժշկապետն առաջարկեց բժ. Սողոմոն Ամիրեանին, որ և ընդունուեց ու ընտրուեց։

Ինչ և իցէ, ոչ միայն առողջ ժամանակ, այլ և հիւանդութեան անկողնից Ախվերդեանը չի խնայել բնաւ իւր լուսաւոր մտքի արդիւնքներով անհրաժեշտ մասնակցութիւն ունենալ ամեն մի ձեռնարկութեան մէջ։

[1]) Տես „Братская помощь“ եր. 373։

Ի՞նչ հեշտ ենք ասում՝ ոչ թէ տասնաւոր տարիների հիւանդը, ինչպիսին Ախվերդեանն էր, նոյն իսկ աւելի կարճ միջոցներով տկար մարդի մտածութեանց առարկան իւր սեպհական անձի ապաքինելու և բժշկելու հոգսը կը լինի։ Միայն քրիստոնէական առաքինութիւններով լի վեհանձն մարդիկն են իւրեանց գլուխը լուրջ խնդիրների ժամանակ մոռացութեան տալողները։

Այո, ցաւը չը կարողացաւ ընկճել առաքինի Ախվերդեանի դիմացկուն բնաւորութիւնը. նա տանում էր ամեն նեղութիւն համբերութեամբ։ Ահա ինչ է ասում Համբարձում Էնֆիաճեանը. «նա (Ախվերդեանը) հեզ էր, խոնարհ սրտիւ, ընկերասէր, հիւրամեծար և օտարասէր, համբերող, ողորմածասիրտ, ժուժկալ և չափաւոր։ Սրանց բոլորի աղբիւրն ու հիմն էր նրա հոգումը միշտ վառ ու փայլուն պահած քրիստոնէական սուրբ հաւատոյ լոյսն և երանաւէտ կենաց յոյսն... բարի անել իւր ազգին և Աստուծոյ միայն հաճոյ լինել... սրանց դիմեց միշտ նրա ընդարձակ և առաքինասէր սիրտը... Քանի՜ քանի անգամ աշխարհը փորձեց և խմեցրուց նրան իւր դառնութեան բաժակից, խլեց հեռացհետէ նրա չորս արու զաւակներն և սիրելի ամուսինը, սակայն նա միշտ անխռով և քրիստոնէական արիութեամբ ախոյեան հանդիսացաւ և մեզանից ոչ ոք նորա վերայ յուսահատութեան նշմարանք անգամ չը տեսաւ»[1]։ Զարմանալի էր արդարև Ախվերդեանի բնաւորութեան տոկունութիւնը. կեանքի վերջին երկու տարին, երբ հիւանդութիւնը չափազանց ծանրացել էր, ինքն իբրև քաջահմուտ բժիշկ՝ զգում էր իւր հիւանդութեան անբժշկելիութիւնը և մօտալուտ վախճանը ու դեղերից միանգամայն ձեռք էր քաշել. դարձեալ այս նեղ ու ծանր վիճակում, մինչդեռ իւր մտքի կորովն և աչքի տեսողութիւնը կար, շարունակ ընթերցանութեամբ էր պարապում։

Պիտի ասած՝ որ երբէք չի ընդհատել նա ընթերցանութիւնից, նա կարդում էր գիւղատնտեսութեան վերաբերեալ ամենատեսակ գըրուածքներն և ուսումնասիրում էր գիւղատնտեսական գործը, ապսպրում էր շարունակ արտասահմանից և Ռուսաստանից նոր լոյս տեսած, ամենատեսակ ճիւղերի վերաբերեալ շարադրութիւններ և չէր թողում մի տող, որ չը կարդար. ծայրէ ի ծայր կարդացել և մանրամասնօրէն ուշի ուշով ուսումնասիրել է նա ռուսական օրինագրքերի ամբողջ հատորները։

Առաքինի և վեհհոգի մարդ, կեանքի վերջին րոպէին, երբ արդէն իրանից ծածուկ չի եղել, թէ ժամէ ժամ կարող էր թողնել այս աշխարհը, նրա հոգին ու սիրտը լցւում է մի երկնային յուսով, մի վառ ազգայնական զգացմունքով։ Նա փափագում է մի վերջին անգամ ևս իւր մայրենի եկեղեցւոյ կողմից հայ ազգին նուիրած մաղթանքներով ու երգերով դիմել իւր Արարչին։ Նա կանչում է տէրտէրին և երգել տալիս

[1]) «Կռունկ Հայոց աշխարհին» 1861 թիւ, երես 883։

Սիմէօն երջանկայիշատակ կաթուղիկոսի շարադրած «Տէր ողորմեան»։ Ապա երկրորդ անգամ կրկնել է տալիս այդ երգի առաջին խորհրդաւոր տունը, որ է.

«Արի, Աստուած հարցն մերոց,
Որ ապաւէնդ ես նեղելոց,
Հաս յօգնութիւն ծառայիցս քոց,
Անօգնական ազգիս հայոց»։

«Անօգնական ազգիս հայոց»... դողդոջուն ձայնով կրկնում է հիւանդը քահանայի խօսքերն և երկու ջերմ ու անկեղծ կաթիլ արտասուքներով ձեռքերն ու աչքերն երկինք ուղղած՝ աղօթում իւր անտէրունջ ազգի համար։

Երկրորդ օրը, 1861 թուի նոյեմբեր 17-ին այլևս չկար ճշմարիտ ազգասէր, լուրջ ուսումնական, ազգի և օտարների սիրելի բժշկապետ Գէորգ Ախվերդեանը. նա մեռաւ 43 տարեկան հասակում։



# *ԱՐԱՐԱՏԵԱՆ ԲԱՐԲԱՌ*

## Ա.

### ՄՈՒԽԱՄԲԱԶ (*եղակլամայ*).

*Ասում ես դիմացիր, ո՞նց դիմանամ, մի՞թէ ես եմ քար,*
*Դարտիս արա մէկ ճար.*
*Կեանքս մաշել ես բոլորովին, ամենին իսպառ,*
*Էս ցաւն է դժուար.*
*Էսքան նեղութիւն ինձի մի՛ տալ անողորմաբար,*
*Ո՛վ դու իմ սիրահար։*

*Անգին պարգեւիցդ պարգեւիր ընդ քոյոցն գքոյս,*
*Բողբոջ ես Նորաբոյս.*
*Ե՛կ, սէր իմ ազնիւ, աղաչում եմ, խղճա՛ խղճալոյս,*
*Տո՛ւր բաւականին յոյս,*
*Էլ ինքդ էս անտանելի ցաւին գտի հնար,*
*Ինձ մի՛ թողալ անճար։*

*Շատ վախտ է՝ քաշում եմ կարօտդ, չես գալի երես,*
*Մինչ երբ դիմանամ ես.*
*Իմ անբախտութիւնս ինձի բաւ է, մի՛ անիլ էդպէս,*
*Կեանքս արեցիր կէս.*
*Ողորմութիւն արա աղքատիս, քաշի՛ մօտդ տար,*
*Տանջիլ մի՛ չարաչար։*

*Վախտ որոտում ես, վախտ ամպում ես, վախտ մթնում ես շատ,*
*Անձրեւում ես կաթ կաթ.*
*Վախտ հարաւային հողմոյ նման հնչում ես խիստ սաստ,*
*Ես ընում եմ զգաստ*

Վախտ բարկանում ես, վախտ նեղանում, կամենում ես չար,
Սարսափում է աշխարհ։ *)

Չարականների խօսքերը քեզ խրատ ես արել,
Խիստ շատ վատ ես արել.
Ուրիշների հետ սէր անելն ադաթ ես արել,
Ինձի եադ ես արել։
Ես իմ բախտիցն եմ գանգատաւոր միշտ և մուղարար,
Ինձ չի տալի դադար։

Ցաւդ ինձ ես տալիս, ուրիշներին քաղցր խօսքերդ,
Ինձ էս ա քու խէրդ,
Ինձնից աւելի, ասա տեսնեմ, ով է քու տէրդ,
Ինձ նա տայ քու սէրդ.
Դու քու դարտերդ լաւը գիտես, խեղճ Աղամ Աղբար,
Խալխն ինչ է խաբար։ **)

---

*) Նման. մի օրինակում.
Իսիթիարս կարել ես, հալել է սրտիս եղը
Էդ քո փայլուն գեղը,
Խոցուած սրտիս նշան է դրել ունքիդ աղեղը
Դու իմ ճար ու դեղը,
Սարսափ կապած թարթափներիդ պէս չի 'լիլ քէմանդար
Սուր սուր քան նշտար։

**) Նման.—Մի ուրիշ օրինակում կայ հետևեալ տունը, որ չի յարմարւում անգամ եղանակին։
Գիւզալների մէջին եարս ուրիշ բարաթ ա,
Մի լէյլի սֆաթ ա.
Պառնիկները խիստ քաղցրահամ է, լեզուն նաբաթ ա,
Թուխ մազերը սաթ ա,
. . . . հրամայի չի անիլ խաթա

## Բ

### ՄՈՒԽԱՄԲԱԶ

(Վարիանտ Ա.)

Արի՛, հոգի ջա՛ն, ինձի նաղ մի՛ անիլ,
Լաւութեան փոխանակ վատ մի՛ անիլ.
Վարդս քաղած բիւլբիւլ եմ, դատ մի՛ անիլ,
Ինձի աչքից քցածի հատ մի՛ անիլ,
Չարակամներիդ սիրտը շատ մի անիլ։

Հագուստդ նարաբ ինսանի՛ կարած ա,
Գիւլգեազ նախշդ գիւլաբաթնով արած ա,
Ակռըքներըդ մարգարտով շարած ա,
Սարսարի եմ, խելքս գլխէս տարած ա,
Էշխիդ հիւանդ եմ, դեղ ու պադ մի՛ անիլ։

---

Որ խիստ բաբաթ ա,
Էս ինչպէս ադաթ ա,
Էս ադաթը վերցրու, էյ եար,
Ուր որ երթաս, ինձ տար,
Սիրտս դառել է քար,
Դարտիս արա մէկ ճար,
Ես եմ Ադամ Ազբար։
Ազբար Ադամին տար գիր գերեզման,
Ոտքերովդ սպան
Աչքերովդ հոգին հան
Լայաղ չի անես անուան
Է՛յ Նազանի ջան։

Կուներդ չիմշատ, բոյդ սուրահի;
Քաշքա հոգիս, նա՛ր, քո գրկումդ տայի.
Մէկ պռօշտով խարարայ սիրտս շահի,
Դուտսաղի պէս միշտ քո դռանդ պահի,
Էս ցաւիցն ինձի ազատ մի՛ անիլ։

Թուխ մազերից փունջը չը գալ համարի,
Աչքերդ նման է շամս ու ղամարի,
Ունքերդ նման է երկնային կամարի,
Գեղեցկութեան նշաններդ ջամ արի,
Տասներկուսը թայ արա, բաց մի՛ անիլ։

Նոր մադան ես անգին քարի բարեբար,
Աստուած սիրես, իմ հալիցս մի խաբար,
Վերջին նաֆասս է, անիրաւ, ինձ մի ճար,
Ազբար Ադամն աղաչում ա մուդարար,
Խարար սիրտս մէկ էլ բարբաժ մի՛ անիլ։

# Գ

## ՄՈՒԽԱՄԲԱՋ

(*Վարիանտ Բ.*)

*Արի, հոգի ջա՛ն, ինձի եաղ մի՛ անիլ,*
*Ջանս քեզի ղուրբան սաղաղ մի՛ անիլ,*
*Մի փուչ բանով ինձ բէղամաղ մի՛ անիլ,*
*Աստուած սիրես, խոց սիրտս դաղ մի անիլ,*
*Դոստ ու դուշմաններս օյեաղ մի՛ անիլ։*

*Բա ի՞նչ անեմ, ո՞ւմ ասեմ դարտ ու սարս,*
*Օրէ օր աւելանում ա ահ ու պարս,*
*Ես ա գալիս մխկտում ա ջիգեարս,*
*Էշխիդ սիրոյն ճղճղել եմ խուբարս,*
*Էշխիդ հիւանդն եմ, ինձ դեղ ու պաղ մի՛ անիլ։*

*Թուխ մազերիդ փունջը չի գալ համարի,*
*Աչքերդ նման է շամշ ու ղամարի,*
*Ունքերդ նման է երկնային կամարի,*
*Գեղեցկութեան նշաններդ ջամ արի,*
*Տան երկուսըն թայ արա, բաղ մի անիլ։*

*Լաց ու արտասունքս գետի նման ա,*
*Թուլփինջի պէս հար մարդ դժուար կիմանայ,*
*Ո՛վ ընկել ա, ո՛վ քաշել ա, կիմանայ,*
*Նա քեզ կասի՝ էշխի հետ հաղ մի՛ անիլ։*

Եբրայեցւոյ թագաւորն ես դու ահեղ,
Նոր զարդարուած թախտիդ վրէն փառահեղ,
Ջալլաթներդ կանգնացրու դու ահեղ,
Թէ սուչ չունիմ, անմեղ դուլթսաղ մի անիլ։

Նոր մաղան ես, անգին քարի բարէբար,
Աստուած սիրես, հալիցս ըլնիս խաբար.
Վերջիս նաֆասս է, անիրաւ, ինձ մի ճար,
Ազբար Ադամն աղաչում է մուղարար,
Խարաբ սէրդ անմեղ բարբադ մի անիլ։

## Դ

### ՄՈՒԽԱՄԲԱԶ

Բարձս քաշեց տարաւ, չիմացայ ով էր,
Եա աղջիկ էր, եա կնիկ էր, եա կով էր։

Աւալ աւալ ձեռը տարաւ եօրղանս,
Տեսայ խիստ շատ մուշկիլ ա ընում լանս,
Ասի՝ էդ ինչ բանի ես, այ իմ նանս,
Ձէնը չի տուեց, իմացայ՝ թէ խուով էր։

Եարար կընե, որ ճանաչեմ էդ չարին,
Աշխարհումս ուրախ չի գայ իր տարին,
Ոտներս բաց էր, գլուխս չոր քարին,
Թէ ղալում ի, ամա տեղս շատ հով էր։

Էս բանիցը դեռ խաբար չեն մեր տանը,
Կէս գիշերին գլուխս էկաւ էս բանը,
Թէ պառաւ էր.... Նրա իմանը,
Թէ ջահիլ էր, լաւ լիքը ծանդր ծով էր։

Աղբար Աղամն ասում ա էս բանքը,
Տեսնեմ կը ճանաչեմ նրա նշանքը,
Վարդապետաց խարջ ա, թէ որ տանեն վանքը,
200 սարկաւագաց տակով էր։

---

## Ե

*Ես մի սիրեկան կուզեմ, դարդից խաբարդար ըլնի,*
*Համ խելօք, համ դանանդայ, ոչ թէ խելագար ըլնի,*
*Ինձի զուլում չի անի, ահլի բաֆադար ըլնի,*
*Կեանքիս հետ կեանք ունենայ, ինձ բաֆալու եար ըլնի,*
*Մեր երկուսիս պայմանը էս թաւուր իրղար ըլնի։*

*Ամեն փուչ սիրեկանի համար մի ջիւան պիտի,*
*Հաւատարիմ սիրելու փիանդազը ջան պիտի,*
*Ճամփին զուրբան անելու, օր ու ումրդ բիրդան պիտի,*
*Քաղցր խօսալ ունենայ, անուշ սիրեկան պիտի,*
*Սրտով սիրի սիրելուն, սիրով սիրահար ըլնի։*

*Մի խօսքը սաղ դօստ կուզեմ, որ աշխարհքս հաւանին,*
*Իմանաս ինչ ա պէտքը բաֆալու սիրեկանին,*
*Դէմքդ փիանդազ անես, ջանդ զուրբան տաս ջանին,*
*Որ հոգիդ տաս՝ չի կորած էն թաւուր զովականին,*
*Թէ դրուստ միտք ունենայ, քեզ հետ մուղարար ըլնի։*

*Բաֆալու սիրեկանին պէտք է քեամալ ունենայ,*
*Ուրիշներին չի լսի, էս թաւուր հալ ունենայ,*
*Իրան սիրեկանի հետ քաղցր խօսալ ունենայ,*
*Գիշեր ցորեկ միասին սէհրը ման գալ ունենայ,*
*Չարակամ թըշնամըքոնց սրտին ահ ու վայ ըլնի։*

*Փուչ սիրեկանի համար պէտք է ախ ու վայ չանես,*
*Ընկած տեղը ամեն վախտ ուղիղ սրտով սայ չանես,*
*Բաֆալու սիրեկանի դռնաղի հետ թայ չանես,*
*Անճար Ազբար Աղամի աշխատանքը գայ չանես,*
*Չեմ հաւատալ, աշխարհս թէ նրան բարաբար ընի։*

## Չ

Ես չեմ ուզում էս թաւուր փիս մահուդը,
Որ տուել է պարոն Խէչօ հահուդը.
Մութը տեղը կտրեց, չիմացայ փուտը,
Աստուծով օրթում կերաւ, ասեց սուտը,
Պէտք է անիծեմ ես նրա մօր սուդը։

Որ յաւը տաս, քեզ համար համբաւ կըլի,
Բոլոր աշխարհի միջին էլ չաւ կըլի,
Էս ստօլի երեսքաշիկ լաւ կըլի,
Ստօլ չունիմ, կոտրուել է չորս ոտը։

Մի ասէք պարոն Բաբին՝ էս ինչ շալ ա,
Որ տուել է Ազբարին՝ էս ինչ մալ ա,
Հէնց գիդենաս՝ ներկած բարդանի շալ ա.
Փալան կընի, որ մէջը ճխտենք խոտը։

Խաբար առայ՝ էստուր գինը նէչամ ա,
Էս մահուդ չի, համա մահուդբէչայ ա,
Տեսնողները հէնց իմացան քէչայ ա,
Խարաբ ընի սրա դուրս տուող զաւօղը։

Էս մահուդի թարիֆը ես շատ արի,
Տուի դերձկին, լայաղ չարաւ, թէ կարի,
Ասեց, էս ինչ է, չի աժիլ մէկ փարի,
Լեզուով նամ տուեց, նամ չի առաւ մի տուտը։

Մուննաթ եմ անում, որ փոխես, լաւը տաս,
Ֆըռֆըռայէն, շաֆաղ տուող խաւը տաս,
Աստառն ու քօբէն շըլընքի մաւը տաս,
Խիաթին ու ղուզմէն և մէրամուտը։

Ազբար Աղամն եմ, բանս մի թանը կանեմ
Աղայ, երեսս քեզ փիանդազ կանեմ.
Թէ չես փոխիլ, Սումբաթովին արզ կանեմ,
Նըրանից կառնեմ ամեն եկամուտը *)։

---

Ծանօթ. Պօլկօվնիկ Եագօր Ստեփանիչ Սումբաթովը, Երևան, իւր նաչալնիկութեան ժամանակին, Ազբար Աղամին մէկ չուխայու մահուդ պարգև խոստացաւ և հարմայեց Բաքի որդի Խէչօին, որ էն չուխայու մահուդը տայ Ազբար Աղամին։ Յիշեալ Խէչօն փոխանակ լաւ մահուդի, ցածր մահուդ էր տուել։ Յետոյ Աղամը տարաւ յետ տալու, որ փոխի, լաւը տայ։ Խէչօն չըփոխեց. Աղամն էլ այս մուխամբազն ասաց։ Սումբաթովն այս լսել էր. Նրան շատ դուր էր եկել Աղամի խաղը և փոխանակ վատ մահուդի, նոր լաւն էր պարգևել։

# Է

## ՄՈՒԽԱՄՄԱԶ

*Էժան տեսայ՝ ընդուր առայ կաղ էծը,*
*Ծուլծուլ էլաւ, տուից մաղալլաղ էծը,*
*Մօլլի նման լաւ էր ասում խաղ էծը,*
*Խիստ քէփով էր, խմել էր արաղ էծը։*

*Էժան առայ, ասի՝ տիրոնջը խաբեցի,*
*Չաթու դրի պոզերիցը կապեցի,*
*Փախան առաւ, բազարները չափեցի.*
*Գժուացրեց ինձ, շինեց սարսաղ էծը։*

*Դուրս բերեցի Սօյուդլըղի դզերը,*
*Վ.րէս Թափեց ղասապների շները,*
*Փախաւ մտաւ մաթուշկեքանց տները,*
*Միտք ունէր դառնալ դուռումսաղ էծը։*

*Երկու յետի ոտներիցը դքեցինք*
*Էն երկար ականջներիցը ձգեցինք,*
*Ուշունց տուինք, անիծեցինք, լքեցինք,*
*Չէր ամաչում, ինձ անում էր դաղ էծը։*

Ես չի տեսել հէչ էս թավուր օյինբազ,
Պոզեր ունէր՝ որ ամեն մէկն էր մի գազ,
Համ քոսոտ էր, համ ղոթուր էր, համ անմազ,
Ոտներիցը էլել էր ղաբաղ էծը։

Ես չտեսայ սև իծի մսի համը,
Գժութիւնիցն սկի չթողայ քեամը,
Ընգուր համար թարիֆ արեց Աղամը,
Սրտիս վրէնի դրեց դիւգիւն դազ էծը։

# Ը

*Ասացեալ 'ի վերայ դողի եւ էրոցքի.*

Է՜յ հազարաթ, էս օր փիս ա հալըս իմ
Էրոցքը հարցընում ա ահվալաթըս իմ,
Կըրակի պէս էրւում է ջամալըս իմ,
Դողը կտրել ա էն ղալմաղալս իմ։

Առաւօտենց առողջ էկայ բազարը,
Տեսայ վըէս ցաւը թեքեց Նազարը,
Գըտըտուեց, պըտըտուեց, կըցեց գիւզարը,
Ջանս առաւ դող-էրոցքի ազարը,
Կորցըրեցի խելք ու քեամալըս իմ։

Դող էրոցքը իրարու հետ թայ արի,
Ջանս մտաւ, գլխիս տուի, վա՜յ արի,
Էրկուսին էլ ջանումըս լաւ սայ արի,
Ձեւիշով կտրեցի, անդազէս զայ արի,
Համ ջանս գընաց, համ բաղայ մալըս իմ։

Էդ մարդկերանց զարն է բերել ահէս,
Մի հէնց բան չի, որ ուրիշներին ծախես,
Ամեն տարի լաւ ճանաչել ա եախէս,
Էս թաւուր բանից լաւ ա իղբալըս իմ։

Չեմ գիտում, թարիֆն անեմ էստոնց ո՞րին,
Իսկի քեաֆուրը չի ընի մեր օրին,

Թողն ինձ բռնեց, էրոցքը Գրիգորին *),
Ամեն տեղից կըտրուեց Թալահս իմ։

Ինչ ֆանդերով դողն էկաւ, ջանս առաւ,
Ինչքան դեղ ու դիր արինք, յետ չի դառաւ,
Ես ջահէլ էի, շինեց հալևոր պառաւ,
Ջահէլ տեսնելիս՝ գալիս էր լալըս իմ։

Ես չեմ տեսել Երևանայ հաւի պէս,
Առաւօտենց մարդ ըլնում ա լաւի պէս,
Իրիկնապահին կպչում ա դաւի պէս,
Փիս չի ըլնի էրոցքի ու դողի պէս,
Մի օրուայ միջին կտրեց ման գալըս իմ։

Մաթալ եմ մընացել ես էս բանումըս
Էլ չեմ կարում, թէ նստեմ դուքանումս,
Ադամն ասաց՝ հաստատել եմ ջանումըս,
Բա ո՞նց կըլնի ախր ու ահվալըս իմ։

*) Գրիգորն ընկեր էր Ադամին երգեցողութեան ժամանակ։

## Թ.

### Մ Ո Ւ Խ Ա Մ Մ Ա Զ

Իմ աղլուխն ով գողացաւ տանիցը,
Խէր չը տեսնի իրան ջիւան ջանիցը,
Մաղբուն մահրում յետ նստի խիզանիցը,
Իրան պատիժն առնի Ասսանիցը։

Մի աղլուխի համար սիրտս նեղացաւ,
Ում հարցրի, օրթում կերաւ, ուրացաւ,
Չեմ գիտում, թէ ո՞ր շանորդին գողացաւ,
Գլուխս դուրս չի գալի էս բանիցը։

Մի աղլուխի համար չեմ ասիլ սուտը,
Ապրշումով նախշած ա ամէն տուտը,
Կանաչ ու կարմիր ռանգ ա միջի պուտը,
Թէ որ տեսնեմ, կը ճանաչեմ նշանիցը։

Էն սհաթին հարցրի ընկորս,
Չորս կողմս ման եկայ, թափ տուի չորս,
Չէի գիտում, թէ ինչ պէտք է ասեմ մօրս,
Շատ էի վախում, դրուստ, իմ նանիցը։

Ազբար Ադամը շատ դամ ու դուա արեց,
Մէրս իմացաւ, բան չըխօսաց, սուս արեց,
Էն սհաթին ինձի տանէն դուրս արեց,
Մինչի տեղակն առայ բազարիցը։

## Ժ

### Մ Ո Ւ Խ Ա Մ Մ Ա Զ

*Իմ բալայ բալէն ես, շատ աննման ես, ճարտար իմաստուն*
*գովելի բան ես,*
*Վարդի նման նովրաստայ նշան ես, մայխուշայ բիւլբիւլ,*
*թափ թազայ ջան ես,*
*Հոտով ծաղիկ ես, անմահական ես, ազնիւ սիրամարգ*
*դրախտական ես,*
*Դրախտի մէջը սէհրի պիտի քու, շոհլաթ ես տուել քեզն ու*
*քեզը դու,*
*Ահս շատ ա, ա՛հա, վախում եմ լսի, ղազապ անի շահս*
*Ղազապներդ ինձ պէս չիանես, միտքս չխափանես։*

*Միտքս խափանես, ինձ կանի թարաջ, հոգիս մարմնիցս*
*կըլինի խարաջ,*
*Սիրտս կու այրէ անշէջ սէրգ քաջ, անձս կըմնայ միայն*
*անիլաճ,*
*Էլ չի լինիլ քեզ մօտ խորհուրդս հաճ,*
*Խորհուրդս ընգունես ինչ կըլի եարաբ, քանդուած սիրտս մի*
*անիլ խարաբ,*
*Խարաբայ ջիգեարս, ախ վա՜յս ու քեարըս, ինչ կըլի ճարս,*
*Ոքմին չի կարող քաշիլ իմ քաշած դարդ ու սարս,*
*Բեալքայ դու դարդիս դարման ես, մէկ մօտդ տանես։*

Մոտդ տանելուս ձեռքս կու քաշես, վախում եմ կրակումդ ինձի խաշես,
Տո՛ւր հանդստութիւն ինձի, բա՛ւ է մաշես, թէ որ կատարես, դրուստ համտաշ ես,
Դարդիս կցորդ իլ, սարդար ու փաշէ՛ս,
Սարդար ու փաշի պէս հրամայի, ֆարմանլու արա՛, դրանդ պահի.
Մի բան չեմ ուզում դարտիցս սավահի,
Դարդդ մասնաւոր ինձի՜ խնդութիւն, համ ուրախութիւն, համ սրտիս ցնծութիւն,
Սրտիս մէջիցը սէրդ չհանես, ինձ նասաղ չի անես։

Ինձ նասաղ արա՛, կախ արա՛ դարէն,
Վերջը մեռնիլն է էս ցաւի չարէն.
Մի պաչ տո՛ւր սաղանայ սրտիս եարէն,
Բալքեայ պրծնիմ էս ինթազարէն,
Հասրաթ չմնամ քեզնից աշխարհէս։
Աշխարհումը ինձ մի՛ անիլ սիւթամ,
Համ տալ մի՛ ղուսա ու ղամ,
Ղուլլուղումդ միշտ կամ,
Ղուլլուղումդ ես կանգնած եմ միշտ ամեն ժամանակ,
Շատ վախտ ու ամանակ,
Սրտիս միջումը ցից ես արել խանչալ ու դանակ,
Քեզ թւում է հանաք.
Էդպէս հանաքներ որ դու անես
Շատ մարդ կու սպանես։

Մարդ կու սպանի քաղցր խօսքերդ, հոգի կու հանի քաջ մտիկ տալդ,
Մեռնիմ քու ճամփին, խօշ ընի հալդ, սիրտս քանդում ա սիրուն ման գալդ,
Պէտք է հոգի տամ, ինչ է խիալդ,

Միտք ու խիալդ ես չեմ իմանում, սուրդ հանելիս՝ մարդ ես սպանում,
Աննահախ արիւններ շատ ես անում, եկ ձեռք քաշի, ջանում,
Ոքմին չիհաւանում, աշխարհ ու ջհանում.
Աշխարհումը ուրախ դայ քու տարին, ականջ մի՛ դնի չարին,
Դու միշտ կամի բարին, քու ծառայ Ազբարին.
Ազբար Ադամին էս ցաւէն հանես, չուն՝ ահլի ջանան ես։

## ԺԱ

*Մէկ ողորմութիւն արա խղճալոյս, ով իմ սիրեկան,*
*Ինձ էս ցաւիցն հան.*
*Չեմ ողջանալ ես էս ցաւերէն, թէզուց գայ Լողման,*
*Դու լեր բժիշկ, մի՛ սպան.*
*Հնար ցաւերուս դու գիտես, էլ ում ասեմ մէկ բան,*
*Դարդիս արա դարման.*
*Թէ որ իմանաս՝ էս ցաւերս է քո սիրոյդ կողման,*
*Չունիմ ուրիշ անցան։*

*Ով ինձ տեսնում է, ասում է՝ թէ եարի դութսաղ է,*
*Կամ էշխի նասաղ է.*
*Պէտք է կարօտդ քաշեմ, քանի որ ջանս սաղ է,*
*Երբ մեռանիմ, թաղէ.*
*Դրախտ անմահական տեսիլդ մէկ բաղչայ ու բաղ է,*
*Համ լուսոյ շաւաղ է.*
*Գեղեցկութիւնդ անպատմելի տեսակ զանազան,*
*Դու ես հուրի զլման։*

*Քաղցրաձայն ողբով իբր սոխակ այս եղանակի,*
*Ով որ քեզ փափագի.*
*Պայծառ երեսդ միշտ և հանապազ լոյս կու ծագի,*
*Նման արեգակի.*
*Ով արեգակ իմ, ծագիր ի լոյս սրտիս բնակի,*
*Որ քեզ նշանակի.*
*Բերանդ մաքուր, անմահական աղբիւր աննման,*
*Մենք արբենք համաձայն։*

Աղբիւր անմահութեան, ով արբի, կու մնայ կենդանի,
Աշխարհս կայ քանի.
Իմաստնագոյն ես աշխարհումս քան զՍողոմոնի,
Դու մի յանդիմանի.
Ով իմ սիրահար, աղաչում եմ, սիրովդ մի սպանի,
Ինձ էս ցաւիցն հանի.
Այլ օգնական չունիմ, ուրիշներն են ինձ պահապան,
Մինչև ի վախճան։

Ժամանակ է սիրոյդ, անձս հուր անկեալ վառի,
Ճշմարիտ համարի.
Այլ բաց ի քեզ ցաւերուս հնար ո՛վ կարայ ճարի,
Չի կայ անհնարի,
Այսպէս խոցոտեալ պէտք է մնամ ի մէջ աշխարհի,
Ամ քառասուն տարի։
Չեմ լուեալ ի քնէ արեալ իցէ այսպէս դատաստան,
Իւր ծառային արքայն։

Սէր, քեզ սիրեցի դժուարութեամբ, բազում անցանօք,
Դառն աշխատանօք։
Գերի եմ ի քեզ բոլորովին բարեկամ ընտանեօք,
Ազգ ու ազգականօք.
Ընկալ պաղատանս, ո՛վ սիրելի, ձայն հառաչանօք,
Ճշմարիտ սահմանօք.
Ողորմած լեր, աւել նեղութիւն մի տայ էդքան,
Հերիք է բաւական։

Ի՞նչպէս անեմ, օրըստօրէ կաւելնայ ապարս,
Ո՞վ գիտէ ճարս,
Մի՛ անտես առներ, կատարի խնդիրս, ո՛վ սիրահարս,
Դու գիտես հնարս.

Ուրախութիւն է ինձ համար, երբ տեսնեմ եարս,
Կու հեռանայ չարս.
Կու տեսնիմ բարի, այլ չեմ լինի ես չարահաւան,
Որ չի կրեմ տանջան։

Մի՛ յանդիմանիր, բարկանար, ողորմեա, տէրս,
դու ես իմ սիրահարս.
Քաշկայ գայ լուսով իմ սէրս, գարնան նշոյլս,
Ծաղկի վերայ զարդարեալ զանազանս.
Երեսդ պայծառ արեգական, խալերդ տեղ տեղ լուսոյ պէս,
Անց կու կացնի գիշերս.
Աղաչում եմ ես, սիրելի՛ք, ողորմի տուէք Աղբար Ադամին,
Էս մի ջիւան տղին։

---

## ԺԲ

*Ակոռի գիւղի կործանուիլը։*

*Ո՞վ էր տեսել էս աշխարհս էս օրին,*
*Մեր մեղքիցը շարժը քանդեց Ակոռին։*

*Զարհուրելի էր շարժը եկած օր,*
*Ծառ ու քօլ իրար դիպաւ, ասեմ ո՞րը,*
*Մէրը որդուն՝ որդին մոռացաւ հօրը,*
*Սարսափանք էր նայելիս Մասիսի ձորին։*

*Էս պատիժը ամենն էր մեր մեղքիցը,*
*Արարատեան սարը շարժեց տեղիցը,*
*Տակովն արեց, մարդ չպրծաւ դեղիցը,*
*Ոչ հայ, ոչ թուրք, ոչ ջհուդ, ոչ ասորին։*

*Լերին քակեալ, թնդաց, որոտաց ձորը,*
*Ախիշ էլաւ էկաւ ձիւնաբեր ջուրը,*
*Սրբեց տարաւ, վանքն, աւազան, աղբիւրը,*
*Ողջ հաւաքեց, ածեց անդունդը խորին։*

*Բարկացել էր մեր Արարիչն էս հետին,*
*Իրար դիպաւ, շարժեց երկինք ու գետին.*
*Չի խնայեց սուրբ Յակոբ հայրապետին,*
*Որ քեռին էր Լուսաւորիչ Գրիգորին։*

*Ակոռին էր աշխարհիս հին նշանը,*
*Չը պահելով Աստուծոյ պատուիրանը,*

Անմեղ տեղը կորաւ չորս հազար ջանը,
Թէգ կը լսէր դարձ եկած մեղաւորին։

Նոյ վէր եկաւ տապանովը սարումը,
Յակոբ հայրապետն աղօթեց քարումը,
Հազար ութ հարիւր քառասուն տարումը,
Էս պատիժն էլաւ յունիսի քսան օրին։

Խրատ առէք, կարդացէք Աստծու գիրը,
Ճանաչեցէք ձեր ճանապարհն ու փիրը,
Աղօթք արէք, մէկ էլ չի գայ էս թիրը,
Պաղատեցէք Աստուածածնայ աթոռին։

Մարդ չիմացաւ խեղճ Ակոռու հնարը,
Դարբէդիար ընկաւ ամեն մի քարը,
Խըրատ առէք, դուք էլ մէ՛ք գործիլ չարը,
Էս Նասիաթն արաւ Ադամ Ազբարը,
Միշտ փառք տուէք ձեր անմահ Թագաւորին։

# ԺԳ

## Մ Ո Ւ Խ Ա Մ Մ Ա Զ

Ո՛վ իմ դուշա ջան, սրտիս սիրեկա՛ն,
Սիրոյդ էլել եմ սիրով սիրաբան,
Սիրոյդ սուսերան՝ ինձի սպա՛ն,
Սերկեան ժամանակիս թող լինի նշան,
Դառել եմ ինչպէս մէկ դի անկենդան,
Ո՛վ անողորմ խան, տէր ես վատ բնութեան,
Թէ չի անես էտէնց բան, չեմ խնայիլ ես ջան,
Կեանքս բոլոր քեզ կըտամ ղուրբան։

Կեանքս բոլոր ղալթ ես արել դուն,
Խելքս տարել ես, արել ես մաջլուն,
Գեղեցկանկար պատկերդ սիրուն
Է նախընթաց ծագմանն արևուն.
Ծագմանն արևու դու ես կարապետ,
Չեմ համարձակում ասելը թէպէտ,
Եարար կըլնի՝ դովրան քշենք երկուսս իրար հետ,
Սրտից մի՛ պահիլ խէթ,
Սրտից խէթերն չաղ են էլել ինձ վրայ ամեն,
Հոգով մարմնով ինձ սպանիլ կամեն,
Ինձ պըծացրու էս դուսաղամէն,
Ղամզարս դու ես, ապիդ դովակա՛ն,
Համ ողջախոհական, ո՛վ իմ դուշա ջան։

Դու ես ողջախոհ նման Յովսէփայ,
Տեսնողը հազար դամ կանի ա՛հ ա՛հ,

Մի էսպէս խաթն չեմ տեսել, ժորա՛յ,
Էդ տեսութեանդ թէ աշխարհս գայ.
Աշխարհք թոփ լինի, չի ընի հատը,
Շատ գովելի ա խելք ու խրատը,
Ես կը սիրեմ, քանց սիրում ա եաղը,
Էլ չեմ ասիլ վատը,
Արժան չի վատը քու պայծառ անուան,
Դէմքդ նմանում է արեգական,
Լուսովդ լուսնի ես նմա՛ն,
Քեզ ծառայ եմ մինչ օրս մահուան,
Յաւիտեանս, յաւիտենից, յաւիտեան։

Յաւիտեան ըսկի չեմ մոռանալ քեզ,
Վարքդ բարի, հանդարտ ու խոնարհ, հեզ,
Թէ հոգէառ ես, դարտիս մի չարայ տես,
Այսքան նեղութիւնները մի՛ տալ մեզ,
Շատ ուրախ կըլնիմ, թէ ջանս առնես,
Ջանս քեզ սաղաղ ա. կեանքս բոլորը կանեմ սատաղայ,
Կեանքս սատաղ ա քեզ, իմ սիրեկա՛ն,
Աշխարհիս գովական, վարքդ բարոյական,
Շատ բարի ա վարքդ, սանթանաթ ու սարքդ,
Դրութիւն ու կարգդ, ապուշ էլայ, որ տեսայ հնարքդ,
Խիստ համեղ է կարգդ. համեղ կարգդ, ո՛վ իմ սիրեկան,
Ներդաշնակել ես բուլբուլի նման, աշխարհ կուհլանան.
Նքթեալ կըթուլանան, Ապրալ Ադամիս ջանը քեզի
հէյրա՛ն,
Ո՛վ իմ դուշա ջան, սրտիս սիրեկան։

## ԺԳ

Ով չունի մէկ սիրեկան աշխարհումըս,
Նա ինչ գիտէ, սէրն ինչ է այս դարումըս։
Սէրն էս անցաւոր դարիս,
Պարտ է գործել միշտ բարիս,
Եթէ կամենաս՝ կարես
Սէրին մէկ բան հընարես։
Անհնար է, սէրի բանը ջոկ կըլնի,
Ինչպէս մարդուս շըլընքի անխզելի թոկ կըլնի,
Անխզելի սէրը սէրին կու թոկի,
Կրակի պէս սրտումը կու բորբոքի,
Մինչի հոգին մարմնուցը անջատելով կու ջոկի,
Ձկնի անջատելուն՝ կու սկսի չարչարումը։

Չարչարանքը բարակ բարակ ա սէրի,
Մինչի վերջին մահն իրան կու բերի,
Կեանքը կու մաշի մարդուս, հոգին կու գերի,
Սիրեկանի ամեն ցաւը կու ների։
Ներեն ա այն սիրոյ առաջին նշանը,
Որ գըլում է մեզ սուրբ աւետարանը,
Բանը աւետարանի սէրը երեք բաժանի.
Մէկը մարդուս արքայութիւն կուտանի,
Մէկը տան ու տեղից դադարգին կանի,
Մէկը չարաչար տանջելով կու սպանի,
Կու սպանի՝ կամփոփի վերջին չարումը։

Չար սէրըն օվ որ կամենայ ճանանչի,
Ոչ երկիւղ կունենայ, ոչ թէ կամանչի,
Միշտ մեղքի հետ խղճմտանքը կուտանջի,
Ռոխծի պէս սրտումը միշտ կու կանչի։
Կու կանչի բարձր ձայնիւ,
Գնդիւք իւրովք համայնիւ,
Համայն զունդք բեյիարայ
Կու ժողովին դուքարա։
Դուքարա ժողովք կանեն,
Ճուրջ կուգան, թէ զո՞ կըլանեն,
Դէպի դժոխքը կըտանեն,
Հոգով մարմնով կուսպանեն,
Դժոխքի տանջանքիցը Աստուած ինքը ազատի,
Ազատի, ազատ պահի մեզի իրան բարումը։

Բարի սէրը ինչ ժամանակ որ շարժէ,
Ամենայն երկիւղն ի բաց կու մերժէ,
Խաղաղութեան, բարութեան հետ կու վարժէ,
Աստուածային տեսութեանը կու արժէ։
Արժանի կանէ մարդուս Աստուծոյ տեսութեանը,
Անմահ արքայութեանը,
Եդեմ դըրախտի տանը։
Եդեմական դրախտը մէկ դամար է,
Լոյսը վրէն միշտ խաչաձև կամար է,
Բարի սէր ունեցողների համար է։
Բարի սէրը նախ և առաջ ճրագ է երկնաւոր տէրին,
Երկրորդապէս քու անձիդ, էնպէս էլ քո ընկերին։
Ընկերիդ ինչ կամենաս,
Յառաջ պէտք է իմանաս,
Ասսանից կու ստանաս.
Կու ստանաս չարին չար,

Բարին բարու փոխարէն
Անմահական աշխարհէն։
Կստանանք անմահական աշխարհումը,
Մեր վերջի դարումը*)։

Դադարում չի տալ երկրորդ սէրն խանին,
Անկեղծ սէր կունենայ առ սիրեկանին,
Չարախընդաց չի ըլնիլ ընդուր բանին,
Էնէնց կու սիրի, ոնց որ իրան ջանին,
Անձն մահի կուտայ, թէ որ սպանին։
Կուսպանուի սիրեկանի խաթերը,
Տեսած ունենք աշխարհումս շատերը,
Ջատերը էս կեանքումը
Վիշտ են կրում սիրոյ չարչարանքումը,
Սուրբ սիրոյ տանջանքումը։
Սուրբ սէրը, տես, կամքն է բարերարի,
Անձն ինչ որ կատարի, հէչ ոտը չի գալ քարի,
Թէ գործքով լինի բարի։
Բարի գործք ունեցողին պէտք է երեք ազիզ բան,
Յոյս ու հաւատ ունենայ, երկրորդը սիրոյ նըշան.
Սիրոյ նըշանն է, որ չի ատես քո եղբօրը,
Միանգամայն ճանանչես Որդին միածին Հօրը,
Հոգւոյն սըրոյ շնորհքը, չի քըննես Աստուծոյ խորը,
Չի գտնուիլ ոչ մէկը իմ սրտի բազարումը,
Խեղճ Ադամ Ագբարումը։

---

*) Մի օրինակում՝ անմահական աշխարհն է,
մեր վերջի դադարումը։

## ԺԵ

Սազ կըգայ բարակ մէջքիդ լաւ քիրմանու շալ, սիրեկա՛ն,
Երեսըդ կարմիր վարդ է, բոխաղդ ալվա՛ն, սիրեկա՛ն,
Պայծառ դէմքիդ սազ կըգայ լաւ գառ նշան խալ, սիրեկա՛ն,
Եազութ, ալմաստ, ջաւահիր ակռիքներդ լալ, սիրեկա՛ն
Գեարդանդ սուրահի է, բօյըդ սալբի տալ սիրեկան։

Մի ազիզ խօշ թաւաստ ես աշխարհիս միջին ինձ համար,
Պատկերդ նկարած է, ունքերդ երկնային կամար,
Երեսդ կարմիր վարդ է, աչքերդ է շամշ ու ղամար,
Զառ նշան սաւաստ արած՝ կապի մէջքդ ոսկէ քամար,
Հաքնուի գառ ու զարբար, համ գիւլգեազ, համ ալ, սիրեկա՛ն։

Չեմ գիտում, թէ ինչպէս կըլի իմ վերջս էս բանումը,
Աշկարայ ջունուն եմ դառել, էշխիցդ էս աշխարհումը,
Մէջլումի պէս աւարայ եմ, չեմ նստում դուքանումը,
Տեմնելիս խօշ երիշդ՝ էլ ջան չի մնում իմ ջանումը,
Կըտրուել ա թաղաթս, էլ ինձ չունիմ հալ, սիրեկա՛ն։

Թէ ասեմ հատդ չի կայ, աշխարհումս խօշ նշան ես,
Գեղեցիկ ամեն բանով Սողոմոնի պէս ճառաբան ես,
Ինչ կըլի ռահմ անես, էս կրակէն ինձի հանես,
Մի քեալմայ խօսք ասելիս՝ վախտ ես անում, թէ սպանես,
Աղայաթ դիւան ունիս, Ուռուստամի զալ սիրեկա՛ն։

*Չեմ տեսել էշխի էրուած ես ոսկի . . . . Նման,*
*Գլխովդ պտիդ կը գամ, ինչպէս թէ փարվանի Նման,*
*Մեղրածոր պռօշներդ տուր ծծեմ բալ-շամի Նման,*
*Ագբար Աղամին մորթի դռանդ ղուրբանի Նման,*
*Մի՛ բերիլ իմ գլուխս էսքան ղալմաղալ սիրեկան։*

## ԺՁ

*Փող եմ տուել՝ տուն չի գալիս չալ էծը,*
*Խօսեցնում եմ՝ հէչ չի խօսում լալ էծը։*

*Է՜յ հազարաթ, ինձ չի դառաւ մալ էծը,*
*Իմ գլուխս բերեց ղալմաղալ էծը,*
*Փախաւ գնաց ինձի տուեց թալ էծը,*
*Կոշայ հանդին խիստ լաւ կասեց կալ էծը։*

*Առաւօտենց հէնց թարս ընկաւ իմ բանըս.*
*Գիլանոնց Նասիբ էր անում ջանըս,*
*Ասի՝ ոնց թէ կոտորուեցին խիզանըս*
*Գլխիս էլաւ պատուհաս ու ամալ էծը։*

*Էժան տեսայ՝ ընդուր առայ կաղ էծը,*
*Ծուլծուլ էլաւ, տուեց մաղալլաղ էծը,*
*Մօլլի նման խիստ անում էր խաղ էծը,*
*Ձատ քէֆով էր, խմել էր արաղ էծը։*

*Ծանօթ. Էջմիածնից հեռի՝ Կոչ անուամբ գիւղ կայ, Աղբար Ադամը նոյն գիւղումը մէկ մեծ այծ է գնում, որ բերի Երևանումը մորթի, միսը ծախի, վաստակ անի։ Նոյն Կոչ գիւղից մինչև Երևան խ.րեանց տունը բերելը թէ որքան տանջանք է կրում, ոտանաւորով ասում է այսպէս։ Այծն էլ ոտից կաղ է լինում։*

*Մարդ էլ փողը կըտայ էսթաւուր մալի,*
*Ընկերըս նըստել ա ճամփումը լալի,*
*Ինչ անում ենք՝ չենք անում, տուն չի գալի.*
*Չենք գիտում՝ ի՛նչ արել ա խիալ էծը։*

*Ի՞նչ մունաթով հասցրեցինք Աղնատուն*),*
*Երիշ գնաց՝ էնտեղ էլաւ սըտիս սիւն,*
*Գըամփէն**) երևաց, ասեցի՝ հասանք տուն,*
*Ռամաշ էլաւ, ինձնից ուզեց նալ էծը։*

*Սաղ ածեցի, լազաթ չ'առայ սաղիցը,*
*Զալ չաթուով կապել տուի պոզիցը,*
*Սուր մկրատով խուզել տուի մազիցը,*
*Հարմյ կանչեց, արեց զալմազալ էծը։*

*Ինձի չունիմ աներիցը նետիցը,*
*Ճատ եմ ծեծել, հարցրեցէք փէտիցը,*
*Ինչքան արի՝ չի անցկացաւ գետիցը***)*
*Ինձնից կուզէր գեամիինան սալ էծը։*

*Ես չի տեսել մի էսթաւուր օյինբազ,*
*Հէնց պոզեր ունէր՝ ամենը մի մին գազ,*
*Համ քոսոտ էր, համ զօթուր էր, համ անմազ,*
*Ոտներիցը էլել էր գարազ էծը։*

*Օրումը նըրան մի ուրիշ տեղ ունէր,*
*Գետն անցկացնելիս՝ խիստ սիրուն լեղ ունէր,*

---

*) *Աղնատունը, Կոշայ մօտիկ մէկ գիւղ է։*
**) *Գըամփէն՝ Էջմիածնայ մօտիկ մէկ գիւղ է։*
***) *Բասախ գետի մասին է խօսքը։*

Վարաւուրդով՝ 9 լիտր եղ ունէր,
Իրան ու գէօրայ ունէր ահվալ էծը։

Էժան առայ, ասի՝ տիրոջը խաբեցի,
Զաթուն դըրի պոզերիցը կապեցի,
Փախս առաւ՝ բազարի լէնքը չափեցի,
Գժուացրեց ինձ, շինեց սարսաղ էծը։

Դուրս բերեցի Սօգիւթլուղի*) ըները,
Վրէս թափեցին դասարխանի շները,
Փախաւ, մտաւ մաթուշկէքանց տները։
Միտքն էն էր՝ դառնէր դուռումսաղ էծը։

Դագանակով ընչանք տունը բռթեցինք,
Տարանք բազարի դըռանը մորթեցինք,
Զորս մարդով անջաղ մենք նրան քերթեցինք,
Կասեմ՝ ընէր մի դաւայ ու քեալ էծը։

Ցետի ոտներովը քանդում էր հողը,
Օգտողներին բաշխեցինք էրկու կողը,
Փոշիմանեցինք, յետ դառանք, առանք փողը,
Հեսապ արի՝ էլ արեց զարար էծը։

Անեցինք՝ զարար կանենք, տանք դասապին,
Ըռաստ էկանք դարդ ու դամի աըրարին,
Մեր տըղէքը հասան փողի հեսապին,
Բուկըդ կապենք կանաչ կարմիր թել էծը։

*) Սօգիւթլուղը Երեւանայ բերդին կից ընդարձակ կանաչապատ վայելուչ դաշտ է։

*Ես չի տեսայ չալ իծի մըսի համը,*
*Էլ գժութիւնումը չի թողեց քեամը,*
*Էնդուր համար թարիֆն արեց Ադամը,*
*Սրտիս վըրէն դըրեց դուգին դաղ էծը* *)։

---

*) *Ծանօթ. Մի օրինակում կայ հետեւեալ երկու տունը.*

*Առաւօտը բարի լոյսը վըրներս բացուեցաւ,*
*Դուռը բաց արի՝ էծը տեղիցը վեր կացաւ*
*Ասեցի արի գնանք, գլխով արեց հեռացաւ,*
*Իսկի չկար մտքումը տուն գնալ էծը։*

*Ճամբի միջին նստեցի շատ լաց էլայ,*
*Աչքովս մէկ զատ ընկաւ՝ ասի գէլ ա*
*Ասեցի՝ ո՞նց թէ իծի մսիցը մաղբուն էլայ,*
*Մէկ էլ տեսայ՝ հրէս եկաւ չալ էծը։*

## ԺԷ

Քցել ես սրտիս մէջը վառ վառ կրակը, սիրեկա՛ն,
Համ գին ես, համ խման, հոգւոյս ճրագը սիրեկա՛ն.
Ականջ արա, սիրեկա՛ն, տես՛ քեզ ինչ խրատ իմ ասում,
Ոտից տակին մեռնի ինձպէսները շատ եմ ասում,
Իմ դօստը դու ես, հէնց գիտես՝ քեզ եաղ եմ ասում,
Հրեշտակաց նման ա քո օրինակդ, սիրեկա՛ն։

Սէրդ ինձ գերի ա արել, պահել ա դուլթսաղի նման,
Ո՛չ պահում ա, ո՛չ թողում ա, ո՛չ մորթում ա մատաղի նման,
Ո՛չ գիժ եմ, ոչ խելօք եմ, ոչ էլ թէ սարսաղի նման,
Ո՛չ մեռած եմ, ո՛չ թաղած եմ, ո՛չ կենդանի սաղի նման,
Ոչ գրում ես, ո՛չ ջնջում ես ումրիս նամակը, սիրեկա՛ն։

Ինձի զուլում չանի, ասացէք էն զովականին,
Էս ինչպէս անտանելի ցաւ ա քցել իմ ջանին,
Մեղք արի, ռահմ արա՛, անիրա՛ւ, ինձպէս ջիւանին,
Սեւրես գաս իմ մօտը Աստուծոյ արդար դատաստանին,
Թէ մոռանաս իմ աշխատանքը ամակը, սիրեկա՛ն։

Էշխի ջաֆին դիմացող ոչ ոք չի ըլնի իմ թայըս,
Էպքան սիթամի տեղակ՝ մի հատ պռօշտի ա փայըս,
Էն էլ ինձ բաւական ա, թէ շաւաղաթ անի շահըս.
Չեմ դառնալ էս սովդիցը, թէ կուզենայ շանց տայ մահըս,
Մի անգամ մեռնելս առել եմ աչքիս տակը, սիրեկա՛ն։

# ԱՐԱՋԼՈՒ ՍԱՐԳԻՍ*)

## ՕՍՄԱՆԼՈՒ ԴԻՒԱՆԻ

*Նազանք, թէ կուգես քու ըրաղըաթը*
*Հաքնիս էդ պումաշը, ալը՝ լաւ կըլի։*
*Գէշ մարդիցը պահես մեր թաքուն բանը*
*Չիմանայ մեր էստեղ գալը՝ լաւ կըլի։*

*Նոր իմացայ՝ դու մի թազա եար ունիս,*
*Գիշերը հինգ ոսկի գեալուր քեար ունիս,*
*Քանի կեանք ես, սիրուն էհթիբար ունես,*
*Սիրուես, սիրող անես՝ սէրը լաւ կըլի։*

*Մի հետի որ խօսես՝ սիրտս կըեղես,*
*Քու սապապէդ էլ չեմ քօշիլ ես գեղէս,*
*Գլուխդ լաւ շինես, աչկերդ դեղես,*
*Երէսիդ էլ քըցես շալը՝ լաւ կըլի։*

*Դուռը որ կերթաս, յեննէդ կուաշեմ,*
*Քու սապապէդ կըհալեմ ու կըմաշեմ,*
*Արապլուն եմ, քու հասրաթդ կու քաշեմ,*
*Պաչեմ էդ երեսիդ խալը՝ լաւ կըլի։*



**) *Արապլու Սարգիսը 118 տարեկան վախճանեցաւ։*

# ԱՐՏԵՄ

## ԴԻԻԱՆԻ

*Թէ Աստուած կը սիրես, եա՛ր, արի՜ մէկ հալըս տես,*
*Էշխովդ էրուած է ջիգեարս, անճար մղկտալս տես,*
*Ամէն դալուղ ժամանակն խարաբ միտքս ընկնելով,*
*Աչքերիցս պակասում ա լոյսը, դառն արտասունք լալս տես։*

*Եարար, բէմուրվա՛թ, ի՞նչ դառար աշխարհումս ինձ համար*
*Աչքերդ նման ա աստղ, ունքերդ ցօղ ու կամար,*
*Թող մտիկ անեմ պատկերիդ, Աստծուդ խաթեր համար,*
*Մին փոքր ժամանակ համբերիր, իմ իրդար ու հալս տես։*

*Գիշեր ցերեկ փիքր անելէն սիրու քունս չի տանում,*
*Ոչ մի անգամ սպանում ես, ոչ թէ մօտդ ես տանում,*
*Սիրեկանն էդպէս չի անի, ինչ որ դու ինձ ես անում,*
*Կտրեցիր ջանիս թաղաթը, արի՜ հոգիս տալըս տես։*

*Խեղճ Արտեմն եմ, ի՞նչ արի, եա՛ր, ինձանից հեռացար,*
*Սալամ եմ տալիս, չես առնում, աղ ու հացս մոռացար,*
*Ինչ կանես իմ չարչարանքը, որ ամակս ուրացար,*
*Անիրա՛ւ, վերջիս նաֆասն ա, ա՛րի հոգի տալս տես։*



# ԱՒԵՏԻՍ

## *ՄՈՒԽԱՄԲԱՋ*

*Դու ես իմ անուշ բալայ,*
*Երեսիդ ջուխտակ խալ ա,*
*Էս ինչ թաւուր ըղբալ ա,*
*Ջուր այրում ես ինձ հալայ։*

*Ես չիմացայ ահվալըդ,*
*Սիրուն դէմքով ջամալդ,*
*Ջահէլին բարև տալդ*
*Անում ա սիրտս եարայ։*

*Քու ճանփէն սպասելուս՝*
*Լինում ա սրտիս խրախոյս,*
*Բիւլբիւլի պէս խօսալուս,*
*Կարծում եմ՝ կանես չարայ։*

*Ի՞նչ կըլի ինձ միտք բերես,*
*Բա՛ւ է կեանքս կրակես,*
*Ձեռք շնորհացդ մեկնեա մեզ,*
*Մի՞թէ քու սիրտդ քար ա։*

*Քո անհաստատ խօսքերը*
*Ձուտով կտրեց մեր սէրը,*
*Ի՞նչ էր Աւետիսի խէրը՝*
*Քեզ համար էլաւ աւարայ։*



# ԳԷՈՐԳ

## *ՄՈՒԽԱՄՄԱԶ*

*Մէկ մօտ արի՛, որ ըլնենք եար, սիրահա՛ր,*
*Թող երանի տայ մեզ աշխարհ, սիրահա՛ր,*
*սէր Աստծու խաթրի համար, սիրահա՛ր,*
*Ռահմ արա՛, ինձ մօտդ տար, սիրահա՛ր,*
*Վա՜յ, ես մեռայ, ո՞վ անջիգեար սիրահար։*

*Սիրեկան ես, քեզ մօտ կուտանես դու, եա՛ր,*
*Քանի՛ մէկ քանի հոգիս հանես դու, եա՛ր,*
*Լաւ է, որ մի անգամ սպանես դու, եա՛ր,*
*Քան թէ դարդերս անես հազար, սիրահա՛ր։*

*Մղկտում է ջիգեարս, է ղիփուն եարայ,*
*Ասում են՝ սէրի դարդին չի ըլնի չարայ,*
*Ո՛վ սիրելի, մի՛թէ քու սիրտդ քար ա,*
*Թէ· հրեշտակ ես, հոգիս առ տար, սիրահա՛ր։*

*Իմ ջիգեարս մի՛ կտրատիլ եա՛ր, եա՛ր,*
*Ինձ պէս դօստին մի՛ կամենալ չար, եա՛ր,*
*Մի՛ սպանիլ անողորմաբար, եա՛ր,*
*Գէորգին սպահի քեզ նոքար, սիլահա՛ր։*



# ԳԻԻՐՋԻ

## *Մ Ո Ւ Խ Ա Մ Մ Ա Զ*

*Էշխից ջունուն դառած՝ գիշեր ցերեկ խաղ եմ ասում,*
*Ոչ թէ երեկ այսօր, կարելի է վաղ եմ ասում,*
*Ծոցինդ չեմ ճանաչել, դառը քօլի թաղ եմ ասում,*
*Երեսից երկու պաչին ինձ արա ղօնաղ եմ ասում,*
*Անուտել, անխմիլ եմ, քէֆս արա չաղ եմ ասում։*

*Եթէ որ գարդիմանդ ես, արի ինձ անճար մի թողալ,*
*Դոստ ու դուշմանի միջին վարդից ընկած խար մի՛ թողալ,*
*Մինչև մահս ու մեռնելս սրտիս ինթիզար մի՛ թողալ,*
*Թէ վատ եմ, տուր գլխովս էլ կշտերքից քար մի՛ թողալ,*
*Թէ լաւ եմ, խօսքդ ի՛նչ ա, տուր ծծեմ բոխախդ եմ ասում։*

*Ես ես մի քամի պիտի՝ ծամդ փարիշան ի արել,*
*Ես ես մի սայադ պիտի՝ թօռումս թառլան ի արել,*
*Ես ես մի Լազգի պիտի, տեղդ Դաղստան ի արել,*
*Ես ես քու տէրդ պիտի՝ չորս կողմդ նշան ի արել,*
*Ես ես մի գառը պիտի՝ ջանս քեզ ղուրբան ի արել,*
*Էլել եմ ոտից տակին ընդունելի մատաղ եմ ասում։*

*Ինձի էլ ումուտ ունեմ արգս անցկենայ քարումը,*
*Ի՞նչ կանես Ղֆլըանդ ա ընկել բէմուրվար եառումը,*
*Ոչ դուն ես ռահմ անում, ոչ ծախում են բազարումը,*
*Եարար ես էլ ինչ թաւուր ուրախանամ աշխարհումը,*
*Թուին հազար ութ հարիր երեսուն երեք տարումը*
*Գեանջեցի Գիւրջին եմ ես, խօսքս Ղարաբաղ եմ ասում։*



## Ա.

Այբ՝ Աստուածը քեզ պահի, ինչ արմաղան ես դուն, եա՛րս,
Բեն՝ բարեսիրտ ողորմած լեր, գեղեցիկ ջան ես դուն, եա՛րս,
Գիմ՝ գարնան վարդ բաց էլած՝ հոտով ռեհան ես դուն, եա՛րս,
Դան՝ դուռն ողորմութեան ինձ մօտ բաց անես դուն, եա՛րս,
Եչ՝ երանի քու սիրելուն, որ նոր ջիւան ես դուն, եա՛րս,
Զան՝ զուլում ցաւի տէր եմ, փրկի՛ր, լողման ես դուն, եա՛րս,
Էն՝ էկել եմ դէպի դուռըդ, անտես չի անես դուն, եա՛րս,
Ըթ՝ ընկել եմ էշխիդ մէջը, զուր չի սպանես դուն, եա՛րս,
Թօն՝ թաղաթս կտրուել է, ինչ կերպ ինսան ես դուն, եա՛րս։

Ժէն՝ ժողովիր թայ ու թուշըդ, սէհր գնանք բաղի մէջը,
Ինի՝ 'ի քէն նեղացել եմ, ինձ քցել ես դաղի մէջը,
Լիւն՝ Լէյլի ես, Մաջլունն եմ, ինձ քցել ես դուլթսաղի մէջը,
Խէն՝ խալերդ դառ նշան ա քո սիպտակ բոխախի մէջը,
Ծան՝ ծըծերդ շամամ ա, կոլոլուել են թաղի մէջը,
Կեն՝ կարօտ եմ բլբուլի պէս, վարդ ես քու եափրաղի մէջը,
Հօն՝ հաւատով սէր ունեցիր, ինձ տար քո օթաղի մէջը,
Ձան՝ ձեռովդ ինձ սպանի, բաց գերեզման, թաղի՛ մէջը,
Ղադ՝ ղաֆիլղան մահ մի՛ տալ, վախիր Աստանից դուն, եա՛րս,

Ճէն՝ ճշմարիտ ուղիղ կացիր, վերջիդ մէկ նշան ունենաս,
Մեն՝ մազեա՛մ քեզ լայաղ չի, որ մեզ պէս սիրեկան ունենաս,
Յին՝ Յայաստան աշխարհումս մէկ յիշելիք բան ունենաս,
Նուն՝ Նասիաթ առ վարպետից, մեզ մօտ գալ արժան ունենաս,
Շան՝ շողոմքոր գառը դարձիր, միշտ քեզ երկու նան ունենաս,

*Ոն՝ ողորմած հետս խօսիր, քաղցր պատասխան ունենաս,*
*Ջան՝ չափաւոր աշխարհումս քեզ խէր ու աֆսան ունենաս,*
*Պէն՝ պատրաստ կայ էն կեանքումն ուղիղ դատաստան ունենաս,*
*Ջէն՝ ջուղաբ տաս արդար բերնով, որ պատուական ես դուն, եա՛րս։*

*Ռան՝ ռահմով միշտ կացիր, ողորմասիրտ լեր աշխարհին,*
*Սէն՝ սուրահի է մինա բոյրդ, ինձ շինի քեզ տէր աշխարհին,*
*Վև՝ վալադ ես, եա՛ր, իմ ցաւին, ցաւդ ինձ կու սաստէր աշխարհին,*
*Տիւն՝ տալար ես վարդի նման, բնութեամբ ես ճեր*) աշխարհին,*
*Րէն՝ րաստ յանկարծ եկար, ո՛վ ինձ կու փրկէր աշխարհին,*
*Ցոն՝ ցաւերս շատացել է, փրկիր, արա խէր աշխարհին,*
*Իւն՝ ւիւանդ եմ վասն սիրոյդ, սիրտըդ ողորմ բեր աշխարհին,*
*Փիւր՝ փարատիր ինձ էս ցաւէն, ինձ հետ արա սէր աշխարհին,*
*Քէն՝ քանի՛ էս Գիւրջի Նաւին սիրոյդ տանջ անես դուն, եա՛րս։*

---

*) *Անհասկանալի բառ։*

## Բ

*Առանց քեզի ինչ դիմանամ, փաշա ջա՛ն,*
*Բարով տեսոյդ արժանանամ, դուշա ջա՛ն,*
*Երբոր տեսնեմ, կու հիանամ, փաշա՛ ջան,*
*Օրըստօրէ կուրախանամ, դուշա ջա՛ն,*
*Ծնծամ, ցնծամ զուարճանամ, փաշա ջա՛ն։*

*Մէջ աշխարհումս չի ճարուիլ քու հատը,*
*Վարպետից ես առել խելք ու խրատը,*
*Մենակ դու չես, աշխարհումս կայ շատը,*
*Բոլորի հետ չեմ փոխիլ քու մի մատը,*
*Էնդուր տեսոյդ միշտ կու ջանամ, փաշա ջա՛ն։*

*Դեղեցկատես նոր ծնանած գառն ես,*
*Քաղցրապտուղ արմաւենի ծառն ես,*
*Անմահական կաթն աղբիւրից սառն ես,*
*Սրտիս խորհուրդն ես, համ լեզուիս բառն ես,*
*Քեզնէ բարութիւն կու ստանամ, փաշա ջա՛ն։*

*Թա՛հր է տուել շուխ բոյրդ՝ սմբուլ կասեն,*
*Պայծառ դէմքդ նոր գարնան դիւլ կասեն,*
*Քաղցր լեզուդ մայխուշայ բլբուլ կասեն,*
*Սիպտակ բոխախդ Լրծաթէ կուլ-կուլ կասեն,*
*Մէկ բուսա տուր, միշտ ցնծանամ, փաշա ջա՛ն։*

*Բաւ է գովեմ, շատ աւելի լաւ զադ ես,*
*Սուլթան ու խան, գլխիս տէր ու շահզադէ՜ ես,*
*Աղաչում եմ, դիւանս ուղիղ դատես,*
*Գիւրջի Նաւին էս ցաւիցը ազատես,*
*Թերակատար չեմ, կիմանամ, փաշա ջա՛ն։*

---

## Գ.

Արի՛, քու չարդ տանեմ, աչքերդ չալ չալ սիրեկա՛ն,
Տուել է Տէրն ինքը քեզ լաւ խելք ու քեամալ սիրեկա՛ն,
Քեզի տեսնող ֆուղարէն չի ունենայ հալ, սիրեկա՛ն,
Կըկտրուի թաղաթը, չի կարայ մանգալ, սիրեկա՛ն։
Քաղցրախօս բիւլբիւլի պէս ունիս ղալմաղալ, սիրեկա՛ն։

Հատ ունես անմահական, ծոցիդ բաղչայ բաղ են ասում,
Խալերդ Հնդու մարմառ, դէմքդ զառ վարաղ են ասում,
Երեսդ կարմիր վարդ է, խալերդ եարփաղ են ասում,
Լոյս կուտան մէջ աշխարհի, աչքդ շամ չրաղ են ասում,
Նոր նորած լուսնի նման՝ թուխ ունքերդ թաղ են ասում,
Բե՛ր կուռս քցեմ վզովդ, շինեմ հէքիալ, սիրեկա՛ն։

Ի՞նչ կանեմ դարդ ու ղամը, քեզ պէս սիրեկան ունենամ,
Թէ որ ես բիւլբիւլ դառնամ, քեզ նման գիւլ ջան ունենամ,
Թէ որ ես հիւանդանամ, քեզ նման Լողման ունենամ,
Թէ որ ես ղուլթաղ ընկնիմ, քեզ նման սուլթան ունենամ,
Չեմ կտրիլ Աստու փառքը, քեզ պէս հոգի ջան ունենամ,
Երանի՛ էն ջիւանին, կունենայ ըղբալ, սիրեկա՛ն։

Ինթիզարով կըմնայ, հազար հազար վա՛յ էս ջանին,
Գըռուած ես ղաւթարումը, քեզ տուել են փայ էս ջանին,

Թաբիբ ես Լողմանի պէս, կարող ես տո՛ւր սա՛յ էս ջանին,
Ողորմի, սիրտդ քցի, դու մի՛ անիլ զա՛յ էս ջանին,
Դու սօնայ եաշլբաշ, քաշկայ ընկնիս թայ էս ջանին,
Վեր կենանք իրար յետնայ, դուրս ընինք մանգալ, սիրեկա՛ն։

Ասում է Գիւրջի Նաւրին՝ ողորմա՛, ես եմ բէչարայ,
Էշխիդ ձեռնին ջիգեարս դու շինել ես փարայ փարայ,
Սէրդ կցորդ ա սէրիս, սիրոյ բանը շատ դժուար ա,
Հիւանդ անկեալ եմ սիրոյդ, ե՛կ դարդերիս դարման արա՛,
Սիրոյդ մաշուած ջամալս մի քիչ գայ ամալ, սիրեկա՛ն։

## Դ

Էս ձի առնողի խելք ու քեամալը՝
Մի չարէք պոչն ա, վեց ստիլ եալը,
Հարկիզ ոտումը չի պահում նալը,
Ճանփին չի գնում, ի՜նչ ա խիալը,
Իլլաքի՛ նրա էն թօբուխ տալը։

Ինքը եաբու ա, ոտները ղօթուր,
Ալլա՜հ եարաղան, սան բունի գեօթուր,
Գարի չի ուտում, ատամն ա պօթուր,
Ջինսն ա ցոյց տալիս պոչի ժաժ տալը։

Թէզ թէզ ընկնում ա տռնաղը եարա,
Մէջքը ղօթուր ա, չի ընկնում չարայ,
Էն թավուր ձի ա, ջանէն բէզար ա,
Լաւ պար ա գալիս, ածէք ղաւալը։

Ափսո՜ս, էս ձիու ատամը գուլ ա,
Համ շատ անդեալ ա, համ շատ էլ ծոյլ ա,
Ճանփէն չի գնում, ոտները թոյլ ա,
Իլլահի՛ բեռան տակը ղողալը։

Բայթալներ բերէք, մտիկ տայ եաշին.
Առաւօտենց նստի, կըկանգնի ճաշին,
Եարար, թէ մորթենք, գին կերթայ կաշին,
Մաշեց մշրեց մեր ջանն ու հալը։

Դուք էս ձիուց ինձ արէք ազատ,
Անզգալացել ա, չի ունի թաղաթ,
Ինքը եարու ա, խասիաթը շատ վատ,
Թարիֆն անեմ ես ճամբին գնալը։

Ուզող էլ չկայ, բաշխենք ուրըշի,
Էս մեզ լայաղ չի մէջ թայ ու թուշի,
Բերէք սպանենք, միսը տանք գշի,
Ջամդաքը տարէք, բարձեցէք սայլը։

Որտեղ կապում ենք, չի կանգնում տեղը,
Կտրում փախչում ա, գնում ա գեղը,
Առնելիս՝ ջանը քսել են եղը
Մենք հէ՛չ չիմացանք նորա ահվալը։

Կասեն՝ մնացել ա շահ Նադրիցը,
Երես չի թեքում սրբած թրիցը,
Գիւրջի նաւուն վեր քցեց վըրիցը,
Օխտ իշի մսուրք շինեց ջամալը։

## Ե

*Իմ սրտին աղ ես արել,*
*Ջիգյարիս դաղ ես արել,*
*Ինձանից հեռացել ես,*
*Ինձ բէդամաղ ես արել։*

*Դու ես իմ սիրահարը,*
*Քաշկլմ տանեմ քո չարը,*
*Ինձ հօ քաշել չես դարը,*
*Համա նասաղ ես արել։*

*Ձատ մարդկանց ես դու խաբել,*
*Քո սիրոյդ եմ տապտապել,*
*Ինձ հó թոկով չես կապել,*
*Համա դուլթսաղ ես արել։*

*Ես եմ ազիզ ախպէրդ,*
*Ինձնից մի կտրիլ սէրդ,*
*Օխ ու քեաման ունքերդ*
*Ինձ վերայ թաղ ես արել։*

*Կանչում եմ մօտ չես գալիս,*
*Արեան աչօք եմ լալիս,*
*Աչքերդ լոյս է տալիս,*
*Նոր շամչրաղ ես արել։*

Կարօտդ քաշում եմ քու,
Չեմ կարող ասել ահու,
Կերպարանքդ տեսնելու՝
Ինձ էլ մուշթաղ ես արել։

Մինա բօյըդ սուրահի,
Խարալայ սիրտս շահի,
Ինձ տար մօտումդ պահի,
Բաւ է ղրաղ ես արել։

Բոխախդ բիլուլի պէս,
Ճաւղ ա տալիս հուլի պէս,
Դէմքդ բացուած գիւլի պէս,
Խալերդ չաղ ես արել։

Ես քո սիրոյդ, բարեկա՛մ,
Կամենում եմ հոգիս տամ,
Պռօշներդ քաղցրահամ
Թելից շարմաղ ես արել։

Մուրվաթ արա, սիրահա՛ր,
Մի՛ չարչարիլ չարաչար,
Ինձ քցել ես քարէքար,
Դրուստ սարսաղ ես արել։

Մատներդ կակուղ մում ա,
Հալամ էփուած չի, հում ա,
Տեսնողը հէնց գիտում ա՝
Ինձ էլ չրաղ ես արել։

Այսօր լսեցի հանգդ,
Խիստ տեղին են նշանքդ,
Աննման կերպարանքդ
Նոր զառ. վարաղ ես արել։

Սիրելի՛, ինձ ատել ես,
Ատել ես նախատել ես,
Ջիգերս կտրատել ես,
Արնով շաղախ ես արել։

Ինձ տեսնելիս՝ տուր բարով,
Խորհուրդդ յայտնի գրով,
Ինձ հօ՛ մորթել չես սրով,
Անսուր մատաղ ես արել։

Համ օրղակ ես, համ ղազ ես,
Դոստի մոտ փիանդազ ես,
Դու էնքան օյինբազ ես,
Լացս ծիծաղ ես արել։

Դու միշտ կամեցիր բարիս,
Ուրախացնիլ մի՛ չարիս,
Էս քրքրուած ջիգերիս
Քափով արաղ ես արել։

Համ դուղի ես համ լաչին,
Ես կարոտ եմ քո պաչին,
Դոստ ու դուշմանի միջին
Դու ինձի լաղ ես արել։

Դարդերս ասեմ ո՞ւմը,
Անյո՜շ ձեր կեր ու խումը,
Ծիծեռնակայ թերդումը՝
Ասում են՝ հաղ ես արել։

Դու ես իմ սիրեկանս,
Մի՛ մաշիլ ջիւան ջանս,
Կտրել ես իմ ամանս,
Դարդու նաշաղ ես արել։

Անկաջ դիր խօսքիս լաւին,
Բէչարայ Գուրջի Նաւին
Քեզնից չի կտրիլ դաւին,
Մազար ախմա՛խ ես արել։

## Գ

Ի՞նչ անուն հնարել ես, որ ինձի եաղ ես արել,
Էլիսաբէթ, ինձանից ինչի համար դատ ես արել։

Ես քո սիրոյդ ջան տալով, մեռայ աստ անդ մանգալով,
Ինձի թողել ես լալով, ուրիշին շատ ես արել։

Ես եմ քո սիրականդ, խօմ գիտեմ ամեն բանդ,
Դուլթսազ արա դուանդ, ինչո՞ւ ազատ ես արել։

Չի ճարուիլ թայդ, լաչի՛ն, ողջ ման եկայ Չինմաչին,
Ով քնի ծոցիդ միջին, ցնծին, դրախտ ես արել։

Հով արա էս կեանքումը, սէրս է քո նշանքումը,
Մէկ օր Ծաղկէվանքումը, շատ սիրտ բարբադ ես արել։

Աշխարհումն ես նշանով, սիրում են քանի՛ ջանով,
Դու գոված ես ամեն բանով, լաւ տեղ սահրադ ես արել։

Ինձ հետ քցում ես դաւի, քիչ էլ ինձ համար ցաւի՛,
Սեթէնտուր քուրքդ մաւի, լաւ քեզ աւադ ես արել։

Ալմաստ մատանիդ մատիդ, ես լող եմ խըրատիդ,
Եալդուզները ճակատիդ ողջ գարեհատ ես արել։

*Ես դարձել եմ քու գերին, սէրս է կցորդ քու սէրին,*
*Մաշելը ջահէլներին, քեզ լաւ խրատ ես արել։*

*Հիւանդ եմ պահի մտիդ, վախտ վախտ ընկնում ես խտիտ,*
*Ոսկի ու մարջան ճտիդ, երեք չորս պատ ես արել։*

*Ուզում եմ՝ կանչեմ ջառը, խօմ ես չեմ, շատ կայ խառը,*
*Ջուր խմ ես ձգում շառը, անպարտ դուլթսազ ես արել։*

*Դեկօզի չիթ մինթանէդ, պոլոլիկ սիպտակ չանէդ,*
*Ձեռք քաշած ամեն բանէդ, մեզ հողեհան ես արել։*

*Թաղայ զօստերդ լաւ են, ինձ ազատիր էս դաւէն,*
*Բէչարայ Գիւրջի Նաւէն, գիտեմ, բռադ ես արել։*

## Է.

Լեր ողորմած, ով բարերար, աշխարհին,
Քեզնից գիւման էլ չի կայ ճար աշխարհին,
Գիշեր ցերեկ չկայ ղարար աշխարհին,
Տուր բարութիւն, պատել ա չար աշխարհին,
Կենդանիքն են բոլոր տկար աշխարհին։

Էս պատիժը մեզ տուեց՝ խրատում ա,
Հէրը որդուն, որդին հօրը ատում ա,
Մի փուչ բանով հօր սիրտը կտրատում ա,
Մեր մեղքն ա, որ աշխարհս պատում ա,
Մէկ մարդ չկայ աղօթարար աշխարհին։

Անզէտ խան, խի՛ էք փախչում չօլերը,
Մարդու ցաւը խօմ չի քաշիլ քօլերը,
Քանի՛ ջիւան կոտորուեց մեր տօլերը,
Որտեղ երթաք, ձեզ կըգտնի խօլերը,
Խօմ էստի չի, պատեց արար աշխարհին։

Սրտներումս չունինք երկիւղն ու ահը,
Բամբասանքից ինչ ա ունենում շահը,
Մեծ պատիժ էր Ղլջէն մանկանց մահը,
Պահող չիկայ Աստըծու դրած պահը,
Չի գտնուիլ մէկ մարդ արդար աշխարհին։

Ղզլչիցը ետնայ եկաւ մօրեխը,
Պէտք է քաշենք, էս պատիժն ա մեր հախը,
Ընդուր համար չունենք Աստուծուց վախը,
Մէկ դուքանդար դրուստ չի անում առ ու ծախը,
Ոչ բազիրգեան, ո՛չ սանաթքեար աշխարհին։

Մեծ սասում էր հիմա խօլեր ազարը,
Ումուտ չունի մարդը, թէ հասնի բազարը,
Աչքներովս մենք տեսել ենք հազարը,
Էնդուր համար Աստուած թեքեց նազարը,
Դրուստ չի կայ մէկ կշիռք, քար աշխարհին։

Քանի՜ օջաղներ քանդուեց, տէր չի մնաց,
Երիտասարդ, ջահէլ ու ծեր չի մնաց,
Յոյս, հաւատ մեզանում սէր չի մնաց,
Հարիւր մեռլին դեռ մի տէրտէր չի մնաց,
Ոչ սարկաւագ, ոչ ժամարար աշխարհին։

Անմիտ խսա՛ն, դարձ եկէք էդ չարիցը,
Աստուած խղճայ, պրծընենք էս դարիցը,
Մենք խսան ենք, խօ՛մ չենք ծնել քարիցը,
Բայց դուրս գալով Աստծու ճանապարհիցը,
Ցաւը պատեց քանց գետ վարար աշխարհին։

Էս պատիժը կրփրկուի ժամ գնալով,
Աղօթելով դէպ առ Աստուած ու լալով,
Չի հեռանալ աղօթքից ծոյլ կենալով,
Ողորմութեամբ աղքատաց տուրքեր տալով,
Ըստուց գիւման էլ չի կայ ճար աշխարհին։

*Հազար ութ հարիւր քառասուն եօթն ամի,*
*Խօլերն եկաւ ոնց որ մէկ սաստիկ քամի,*
*Բարեկամը չէր երթում բարեկամի,*
*Ում բռնում էր, ուզում էր ջանը քամի,*
*Չէր երևում մարդու տամար աշխարհին։*

*Աստուած խղճա՛յ մեզ նման մեղաւորին,*
*Քեաֆուր բանդէս չըվախճանի էս օրին,*
*Գիւրջի Նաւէն էլ չի քննում խորին,*
*Աղաչեցէք, պաղատեցէք Լուսաւորիչ Գրիգորին,*
*Կտրաւել ա ողջ, չիկայ ճար աշխարհին։*

## Ը

Կորցրածդ ճարար. գտա՞ր, դուշա ջա՛ն,
Խաւար սրտիս լոյս մխիթար, դուշա ջա՛ն,
Ուր որ կերթաս, ինձ հետդ տար, դուշա ջա՛ն,
Պայծառ սիրտս շինիլ մի՛ քար, դուշա ջա՛ն։
Չարչարիլ մի՛ ինձ չարաչար, դուշա ջա՛ն։

Ցանկարծ տեսայ, որ վէր եկար սարիցը,
Կաքաւի պէս սորոր տալով քարիցը,
Ձեռք քաշեցի, վա՜լլա՜հ, էս աշխարհիցը,
Որ դուս եկար փոշտի ճանապարհիցը,
Վա՜լլա՜հ, գլխիս խելքը տարար, դուշա ջա՛ն։

Էդ ինչ բան ա, սիրեկա՛ն, ինձ անում ես,
Չարչարելով՝ գլխիս խելքը տանում ես,
Բէմուրվաթ ես, դու ինձի սպանում ես,
Ազգդ աղայ, դու ինքդ էլ խանում ես,
Արի՛, մի՛ տալ ինձի զարար, դուշա ջա՛ն։

Ցառաջ տեսայ, չէի գիտում, թէ ո՞վ ես,
Մօտ չես գալիս, ափսո՜ս, ինձանից հով ես,
Ես ինչ անեմ, որ ինձանից խռով ես,
Բաւ է, ջիգեարս էշխիդ միջին բովես,
Ռահմ արա՛ ինձ մուղարար, դուշա ջա՛ն։

*Դու էլ չար ես, ականջ ես անում չարի,*
*Խի՛ չես խոսում, ասա՛ տեսնեմ՝ ի՞նչ արի,*
*Տէրն ինքը քեզ միշտ հատուցանի բարի,*
*Գիւրջի Նաւուն դա՛ռ. սիրահար, դուշա ջա՛ն։*

---

## Թ.

Հողեղէն մարդու համար միշտ անուշակ սէր, գինի ջա՛ն,
Ճատին աղքատ ես շինում, շատին փողատէր, գինի ջա՛ն,
Ճատ ջահէլ հարբեցողի դու շինել ես ծեր, գինի ջա՛ն,
Քեզ սիրողը չի փախչիլ, որ նոցա ես մէր, գինի ջան,
Երանի քու տեսնողին՝ կունենայ համբեր, գինի ջա՛ն։

Խմողի չոր բողազը մէկ Թասումը Թաց ես անում,
Վրայ երկրորդ Թասումը կապ իշտահը բաց ես անում,
Վրայ երրորդ Թասումը բարեկամաց լաց ես անում,
Չորրորդ Թասը խմելիս՝ շուտ խելքին իմաց ես անում,
Ասում ես՝ վեր կաց, կռ՛րի, դառել ես անտէր, գինի ջա՛ն։

Հինգերորդ Թաս խմողը ում հետ խօսայ՝ վերջն ա դաւի,
Վրայ վեցերորդումը՝ անձը ծեծես, ինչ կըցաւի,
Եօթներորդ Թասումը գինին մարդու կըգրաւի,
ՈւԹումը՝ չի խառնըւիլ ոչ վատ բանի, ոչ Թէ լաւի,
Իննումը՝ լոյս ցերեկը կըԹուայ գիշեր, գինի ջա՛ն։

Խմողն առաջի տարին խիստ շատ դըւստ կընի հախի,
Էն մասին էհտիբարը կտրուելուց շատ կըվախի,
Եաւաշ եաւաշ տան մէջը բոլոր կիսագին կըծախի,
Լիտրը մի ժում կըխմի, կասի մնայ՝ կըքացախի,
Կասի իրան միջումը, կուշտ խմելն ա խէր, գինի ջան։

*Երկու տարէն խմողը էլ ի՛նչ դալիկ, օր կունենայ,*
*Երկու օրումը կընադղի, թէկուզ ոսկու հոր ունենայ,*
*Գինու գրաւ կըդնի, ինչ որ հագին շոր ունենայ,*
*Կտայ գինու ուղուրին, անձնումը ինչ որ ունենայ,*
*Ո՞նց ես քեզ սիրահարում էդ թաւուր դոստեր, գինի ջա՛ն։*

*Երեք տարէն խմողի իրար չի ընկնիլ հացն ու աղը,*
*Տանը շորահոտ չի գալ, կըլլւան տաշտ ու մաղը,*
*Գնալիս կու անարգեն, տուն չեն թողալ օղլուշաղը.*
*Երանի՜ ադաթ չըլէր ըսկի գինին ու արաղը,*
*Քանի՜ հաստատ օջաղներ շինել ես աւեր, գինի ջա՛ն։*

*Խմողը չորս տարումը ըսկի մարդի չի ճանանչի,*
*Ոչ երկիւղ կանի մարդից, ոչ թէ արուաից կամանչի,*
*Ինքն իրան կըծիծաղի, վախտ արջի պէս կըբառանչի,*
*Վախտ կընստի լաց կըլի, վախտ կտեսնես, հաղ կըկանչի,*
*Ձանց կտայ մարդամիջի էս թաւուր բաներ, գինի ջա՛ն։*

*Եթէ թօբա չի անի, կըփչուի վրայ հինգ տարումը,*
*Էնթաւուր ազգի թքանք էլ չի՛ ման գայ աշխարհումը,*
*Բանգի մարթը փչանայ, լաւերը միան բարումը,*
*Գիւրջի Նաւասին գրեց էս խրատը դաւթարումը,*
*Նստողը էլ չի խմի, բալքեա ասի վեր, գինի ջա՛ն։*

---

## Ժ

Մնացէք խաղաղութեամբ, գնում եմ աստէն, սիրակա՛ն,
Ո՛չ որ դանդատ չի կրի ինձ պէս նուաստէն, սիրակա՛ն,
Միտք բերեմ, խելքս կերթայ մատներից դաստէն, սիրակա՛ն,
Կու ցնծայ՝ ո՛վ տեսանի վարդը [1] Նովրաստէն, սիրակա՛ն,
Քանի՜ անձինք քո սիրոյդ անխմել մաստ են, սիրակա՛ն։

Հեռանում եմ քեզանից, միշտ կու մնամ ախ քաշելով,
Վերջը ինձ մահ կու բերէ էշխդ ջիգեարս խաշելով,
Աչքս ճամփիդ կու մնայ [2] մէկ նամակիդ սպասելով,
Օղուտ ինձ միայն մնաց, անցնելն օրերս վաշվաշելով [3],
Չեմ ուզում հեռանալս, մահ խնդրեմ աստէն սիրական [4]։

Հեռանալը դժուար է, մնացողաց միշտ երանի՜,
Վաթանը քաղցր կըլի, Արարիչն անի արժանի,
Սէրը մին ընպէս բան է՝ առանց աջալ մարդ կուսպանի,
Սիրածը միտ բերելով՝ կուդէ չօլերն անկանի,
Կցորդեմ սէրդ սիրոյս, մեռայ ես աստէն, սիրակա՛ն։

---

1) Մի օրին. Վարդից Նովրաստէն։
2) Մի օրին. Աչքերս պէլ կըմնայ։
3) Մի օրին. Կըմնամ ղարիբ տեղը տեսութեանդ վաշվաշելով։
4) Մի օրին. Չեմ ուզում հեռանալը վախում եմ սաստեն, սիրեկան։

*Ասելով՝ զարիբ տեղը ով կլսի իմ գանգատը,*
*Սէր ընկաւ Ասլու համար, կրակուեց խեղճ Քեարամ-դաղը,*
*Իր անձը մահու մատնեց Շիրինի համար Ֆահրադը,*
*Մշտապէս էր սիրահար Սադաթի յետնայ Սայադը,*
*Լէյլին Մաջլունը թողունք, որք ներկայ աստ են սիրական [1])։*

*Նրանի՛ լինի աչքիս, երբ քեզնից բարև կստանամ,*
*Էս ցաւն է անտանելի, նեղութեամբ մինչ երբ դիմանամ [2]),*
*Մայխուայ բիւլբիւլի պէս տեսութեանդ միշտ կու ջանամ,*
*Ի սէր քո փակեալ խորհուրդս ինձ նրանի՛ կընի բանամ,*
*Խօսքերըդ մարգասպան, իմ անձիս դաստ են, սիրակա՛ն։*

*Նրանի՛, արժան ընէր սիրականին իր սիրածը,*
*Սէրդ կցորդ էր սէրիս միշտ երկնային Ողորմածը,*
*Ո՞վ կընի խնդացող զարիպ տեղերում տրտմածը,*
*Իսանը պէտք է քաշի իրան ճակատի գրածը,*
*Զարախօս խաները շատ տեղ բարաստ են, սիրակա՛ն։*

*Սիրելին սիրելուցը հեռանալը շատ դժար է,*
*Սէրը մի վառ կրակ է չի հովանալ, անհնար է,*
*Հիւանդ անկեալ եմ սիրոյդ, իմ դարմանս ո՞վ կըճարէ,*
*Բէշարայ Գիւրջի Նաւին այլ բաղդ չունի, սիրահար է,*
*Թերամիտ ջահէլները միշտ անիմաստ են, սիրակա՛ն։*

---

[1]) *Մի օր. Լէյլին էր ուրախ կենօք, Մաջլունն էր խաստէն սիրական։*
[2]) *Մի օր. Խեղճ զարիբս ինչ դիմանամ*

## ԺԱ

*Ո՞ւր են իմ ջուխտակ բալէն,*
*Խաբար չունեն իմ հալէն,*
*Ջիւան ջանս փուչ արի,*
*Ճանապարհումը լալէն։*

*Չեմ գիտում, թէ ի՞նչ անեմ,*
*Ջիւան ումբրս կէս անեմ,*
*Ճարաբ կըլի՞ տեսանեմ*
*Ջուխտն իրար հետ ման գալէն։*

*Աստուածաւանդ ուխտ անեմ,*
*Արարչիս հայցուած անեմ,*
*Բալքայ սրտով պաչ անեմ,*
*Նրանց էն ջուխտակ խալէն [1]։*

*Եկէ՛ք, եկէ՛ք, սիրակա՛ն,*
*Անձինս տէր ու տիրական,*
*Մօտս եկէ՛ք առաւօտեան՝*
*Բիւլբիւլի պէս խօսալէն։*

---

[1]) *Մէկ օրինակում. Ես երեսիս խաչ հանեմ,*
*Առ Աստուած աղաչ անեմ,*
*Ճարաբ կըլի՛, որ պաչ անեմ*
*Էն ջուխտակ ղօշա խալէն։*

Երբ տեսի, ուրախացայ,
Հիւանդ 'ի՛ առողջացայ [1]),
Հարցրի, ստոյգն իմացայ,
Ազգ ու տակով հալալ են։

Ձեր ճամփումը սպասում ա,
Ցան իրար մօտ դասում ա,
Գիւրջի Նաւին ասում ա՝
Բա չէ՞ք լսում իմ Նալէն։

---

1) Մի օր. Մեռել էի, կենդանացայ։

## ԺԲ

Տրտմեցի ես, որ սիրեկանս չեկաւ,
Իմ աչքի լոյս, իմ հոգի ջանս չեկաւ,
Իմ գեղեցիկ, իմ հուրի ղլմանս չեկաւ,
Աղաւնակերպ իմ հոգի ջանս չեկաւ,
Խանդան էլած վարդ աննմանս չեկաւ։

Մինչի նրա գալը ես կըմեռանեմ,
Էշխից միջին բեր ջիգեարս եռ անեմ,
Մուրվաթ արա, արի քեզ հետ սէր անեմ,
Ճարս էն ա՝ ինչ ասի, կու համբերանեմ,
Իմ չինարի սալրի դիւանս չեկաւ։

Ումուտ դրէք, սրտիս տակին սիւն ընի,
Ցերեկը ղարար, գիշերը քուն ընի,
Ջունուն չըլեմ, միտ բերածս տուն ընի,
Սիրտս ուզում ա տեղիցը վերան ընի,
Իմ հոգին, իմ դին իմանս չեկաւ։

Ճանապարհից արտասուքս գօլ էլաւ,
Ռահմ արա, ով անիրաւ, բօլ էլաւ,
Ջունուն դառած՝ սարերն ինձի խօլ էլաւ,
Աննուշահոտ ծաղիկներս քօլ էլաւ,
Եաղուլթ, զմրուլթ, թագայ մատանս չեկաւ։

*Ինձ հասցրէք սիրեկանիս բարևը,*
*Դարդերս իրար դիպան, փոխուեց ձևը,*
*Ինչպէս թէ որ խաւարում է արևը,*
*Ինչպէս թէ որ ծառը թափի տերևը,*
*Էնպէս էլայ, անմահականս չեկաւ։*

*Գիւրջի Նաւէն ճանապարհիդ դուլ էլաւ,*
*Քեարամ-դաղի նման էրուեց, քուլ էլաւ,*
*Ասում են՝ պայծառ երեսդ հուլ էլաւ,*
*Ուրախացայ, որ սիրելիս գիւլ էլաւ,*
*Մահս տեսայ, ճաղութ ճամանս չեկաւ* [1]։



[1]) *Մի օրին. Ես բիւլբիւլ եմ, իմ խօչ նչանս չեկաւ։*

ԳԻԻՐՋԻ ՕՂԼԻ

---

ԵԳՕՐ

---

ԿԱՐԱՊԵՏ

---

ՂԱՓԱՆՑԻ ԴՈՎՐԱՆ

---

ՅԱԿՈԲ

---

ՆԱԼԲԱՆԴ ՕՂԼԻ

---

# ԳԻՐՋԻ ՕՂԼԻ

Մարգարիտ, կասեն ղանդ ու նաբաթ ես,
Սարքած գլուխդ ոսկէ սահաթ ես,
Թուխ թուխ մազերդ ուրիշ բարաթ ես,
Ունքերդ ղալամ քաշած սուրաթ ես,
Երեսդ արեգակ լուսին սհաթ ես,
Աչքերդ ֆինջան, ինչ սալամաթ ես,
Պռօշդ սպիտակ թուղթ մագաղաթ ես։

Ես մի բիւլբիւլ եմ, հալս իմանաս,
Գիշեր ու ցերեկ լալս իմանաս,
Հարդամ քո դուռը գալս իմանաս,
Էս աշխարհիս զովք ու սաֆէն թէ որ իմանաս,
Ճատ մարիֆաթ ես։

Մարգարիտ, ալմաստ քարի մաղան ես,
Մեծ հուքմի տէր ես, սուլթան ու խան ես,
Բօյըդ չինարի, սալբի դիւան ես,
Էդ ման գալովդ խելքս կու տանես,
Մէկ ղոնաղ անես, քանի խալուաթ ես։

Հագիդ սաղ կու գայ կանանչ ու ալը,
Պէտք է պաչ անեմ բոխախիդ խալը,
Քեզ ղուրբան կանեմ աշխարհքիս մալը,
Էլ չես հարցնում հիւանդիդ հալը,
Էշխիցդ հիւանդ եմ, դեղիդ կարօտ՝ ես։

*Ես—Գուրջի օղլին հասրաթդ եմ քաշում,*
*Էշխիդ կրակը իմ սիրտն է մաշում,*
*Պէտք է քեզ պահես խաս ու ղումաշում,*
*Ակուիքդ մարջան՝ ալմաստ թրաշում,*
*Թէկուզ սպանես, ինձ դնես նաշում,*
*Տեսնողն կասէ շատ բէմուրվաթ ես։*



# ԵԳՕՐ

Աշխարհքն աշխարհքով կշտացաւ, ես քեզանից, ո՛վ աչքի լոյս,
Մէկ խօսք ունիմ իլթիմասով, ականջ արա ո՛վ աչքի լոյս։

Սրտումս ունիմ ինթիզար, քու տեսն բարով, աչքի լո՛յս,
Եարաբ ի՞նչ գէթ եմ արել, կենում ես խռով, աչքի լո՛յս,
Հազար որ ինձ չօռ ասես, ես ձայն կուտամ՝ ջան աչքի լո՛յս,
Խնդրում եմ՝ մէկ թաս խմես անուշ պռօշտով, աչքի լո՛յս։

Դօստերս դուշման շինեցիր, եաղերին ինչպէս դօստ անեմ,
Անցեալ բանն՛ էլ չեմ ասիլ, հազար կուզէ, որ դարդ անեմ,
Աստուած վկայ, շատ դժուար է, գլուխս ինչպէս դուս տանեմ,
Ես մի փոքր հովի նման, քո էշխն է ծով, աչքի լո՛յս։

Դու ինձ կրակը քցեցիր, էս ինչ զարմացք բան ա,
Էշխից ջունուն եմ դառել, ման եմ գալի եանա եանա,
Էս կրակն ոչով չի քաշիլ, մէկ սհաթ չի դիմանայ,
Ինձի դուն խորովեցիր էշխից կրակով, աչքի լո՛յս։

Հազար կուզէ որ դարդ անեմ, էս դարդերին դարդ չեմ ասիլ,
Իմ լողման հաքիմը դու ես, ուրիշ ոչ մի բան չեմ ասիլ,
Աստուած գիտայ, սըռ պահող եմ, ամենայն տեղ սըռ չեմ ասիլ,
Արի ինձի վատ մի՛ անիլ, ջանս քեզ ղուրբան եմ ասել,
Խնդրում եմ մուրազդ առնես Աստուածանից, ով աչքի լո՛յս։

*Բէչարայ Եզօրն ասեց՝ էս ի՛նչ ըղբալ է ինձ համար,*
*Բաղերը վարդ է բացուած, ալ ու զիւլգեազ է ինձ համար,*
*Էլի Աստըծուն փառք կըտամ, սաղ պահէ դօստերն ինձ համար,*
*Արի դու մէկ բանի ասա քու քաղցր լեզուովն ինձ համար,*
*Ձայն ես տալիս բիւլբիւլի պէս պատուելի ձայնով ինձ համար,*
*Խնդրում եմ՝ սիրով լինինք մէկ մէկու կամով, աչքի լո՛յս։*



# ԿԱՐԱՊԵՏ

*Ըսկի ոչ ով չի հարցնում իմ դարդերը, ա՛յ իմ մոզի,*
*Գիշեր ցերեկ միտք անելով, ման գալով մեռայ, իմ մոզի՛։*

*Քեզի բերին Էջմիածին,*
*Միտքս գնաց տափակ հացին,*
*Օրով ցերեկով բռնեցին,*
*Կանչեցի՝ հարա՛յ, իմ մոզի՛։*

*Գլիգորն ինձ ասաց՝ ես տեսայ քո մոզին,*
*Տարան երկու սարվազ՝ չալթուն դըրած պոզին,*
*Տարան, դու մի՛ ասիլ, սապոնչիքը տոպրակով խորխոզին,*
*Տարան՝ ես միամիտ ման եմ գալի, ճակատդ ղաշխա, իմ մոզի՛։*

*Իմ մոզին էր խելքի բունը,*
*Քանդուի՛ տանողի տունը,*
*Բերին տասներկու մինալթունը,*
*Որ քեզ առնեմ թայ, իմ մոզի՛։*

*Չիմացաւ սըբազանը,*
*Որ անի էս դատաստանը,*
*Մաշադի Ալու տանը*
*Էլար ղաւուրմայ, իմ մոզի՛։*

*Իմ ըղտըլ ըղըալս տեսէք, աչքս բացայ՝ հէր չի տեսայ,*
*Քաշեցի էս նեղ դարդերը, քամակումս աղպէր չիտեսայ,*
*Աներս մէկ մողի տուեց, էն էլ բերի, խէր չի տեսայ,*
*Եաի վերջը էջմիածնայ դարաղներին փայ, իմ մողի։*

*Պարոն Ուհանըսի տանը տէր Ղազարը խօսքը բացաւ,*
*Մողու դաստանէն ասեցինք, շատ մարդ ուրախացաւ,*
*Պուլուղի բէդովլաթը մէկ թունգի գինի խոստացաւ,*
*Եաի վերջը փոշման էլաւ, մեզի չէլաւ շահ, իմ մողի։*

*Քեզի տարան մորթեցին,*
*Մազէ դանակով քերթեցին,*
*Լէշդ, անդամդ ջարդեցին,*
*Չորս տեղ ղըրին փայ, իմ մողի,*

*Քաշեցին չորս լիտր եղը,*
*Երկու լիտր մնաց տեղը,*
*Էդ քո չաղչաղ կարճակողերը,*
*Էլաւ խաշլամա, իմ մողի։*

*Քեազգլխանի բաղչի տակին մէկ փոսում փորդ թափած էր,*
*Մտիկ տուի՝ քարի տակին սիպտակ պճեղներդ բաց էր,*
*Լաց ըլելով ձեռս առայ՝ հինգ, վեց, հօթ օրուան կերած էր,*
*Ընտեղ սրտիս տայաղ էլաւ՝ մի քիչ ուրախացայ, իմ մողի։*

*Գիշեր ցերեկ սոված ծարաւ,*
*Մողուս դարդը սիրտս առաւ,*
*Կարապետը թարիֆդ արաւ,*
*Կորած բէշարայ իմ մողի։*



# ՂԱՓԱՆՑԻ ԴՈՎՐԱՆ

## ՎԱՐՍԱՂ

*Սիմխոնս գնացի, աչօքս տեսայ,*
*Համբուրեցի աջն սուրբ Կարապետին,*
*Ուղիղ սրտով երկրպագութիւն տուի*
*Լոյս տաճարի մէջին սուրբ Կարապետին։*

*Հայրն Զաքարիա, մայրն Եղիսէ,*
*Առաքեալ, Մարգարէ և Աւետիս է,*
*Յովհաննէս Մկրտիչ և Մարտիրոս է,*
*Աշուղներ կաղաչեն սուրբ Կարապետին։*

*Աշուղներ հաւաքուան, գնացին մօտն,*
*Մին ձեռին բուրվառն էր, միւսին հետն,*
*Մարմառ քարի վրայ դրել էր ոտն,*
*Նշանակն մնաց սուրբ Կարապետին։*

*Ղափանցի Դովրանն եմ ես, ուղիղ արա,*
*Ջահերն ոսկեայ, կանթեղն վառ ա,*
*Մեր հայոց աթոռն լուսով պայծառ ա,*
*Պատուական ա աջն սուրբ Կարապետին։*



# ՅԱԿՈԲ

## ՄՈՒԽԱՄԲԱԶ

Ո՛վ սիրելի իմ ջանան, մի՛ հեռանալ, մօտ արի՛,
Խոնարհ եմ, ինձ գլխատիր, համարի մատաղ գառի,
Դիվանայ մաջլումի պէս արել ես ինձ սարսարի,
Չունեմ ինձ վայելչութիւն էս աշխարհիս օր բարի,
Կամ սպանա՛ ինձ պրծնիմ, կամ թէ ինձ մի՛ չարչարի,
Գեղեցիկ ես, աննմա՛ն, դու ես մի հուրի փարի։

Լաջվարթած ա երեսիդ պատկերը լուսնակի պէս,
Լեզուդ էնպէս՝ օրինակ Ինգլիզու սհաթի պէս,
Պռօշներդ քաղցրահամ շաքար ու շարբաթի պէս,
Հովարար ես դու ինձի, բօյըդ սալբի չինարի։

Նարինջ, թուրինջ, շամամա, եա՛ր, քու ծոցումդ տեսայ,
Վարդի նման կոկոմած՝ մայիսւայ նուբար տեսայ,
Ճամ—չրաղի պէս ինձի խաւար տեղը լոյս տեսայ
Եաղութ ալմաստ ջաւա՛հիր, օրինակ՝ գնոջ քարի։

Առանց քեզի օր չունիմ, ո՛վ սիրելի, հաւատա՛,
Դու որ ինձի մոռանաս, համարեա թէ շատ վատ ա,
Աննման ես, գեղեցի՛կ, դու ես մին մէլիք—զադա,
Էս բէչարայ Յակոբին քեզի ջանան համարի՛։



# ՆԱԼԲԱՆԴ ՕՂԼԻ

## Ա

*Նոր ես դուս եկել աշխարհումս, ո՜վ շահի սուլթան,*
*Դուն ես թազայ ջիւան.*
*Պահիր դրանդ գիշեր ցերեկ ինձի բանդիվան,*
*Իմ հոգիս ու իմա՛ն,*
*Կեռ կեռ ունքերդ զառ վարաղած նման է քեաման,*
*Չալ աչքերըդ ֆինջան.*
*Պայծառ երեսդ բոլորուել է լուսինի նման,*
*Ձողդ արեգական.*
*Լեզուդ խօսում է բիւլբիւլի պէս քաղցր պատասխան,*
*Վարդ կըսիրի դիւլշան.*
*Բօյըդ, բոխախդ թամամ լիքը շարած է մարջան,*
*Մի սուրահի գեարդան։*

*Տուդի ղուշի պէս քաղցր խօսաս ի՜նչ ժամանակի,*
*Գարնան եղանակի.*
*Այնպէս նման էս ղաստայ կապած փունջ մանուշակի,*
*Հոտ ունիս մխակի.*
*Թուխ թուխ մազերդ սև սաթի պէս, մէջքը թութակի,*
*Ղահմար նշանակի.*

Երկնքից պէտք է վէր գայ հուրի փէրի քո տեսակի,
Համեալ ես հասակի.
Երանի նրան, ով կը ճանկի քեզ պէս աննման,
Կըլինի զանազան։

Ամեն տեսնելով մոլորւում եմ, հոգիս ես հանում,
Ինչո՞ւ ես սպանում.
Էշխիդ կրակը ջանս է մաշում, ես եմ դիմանում,
Դու խի՞ չես իմանում.
Անդ ընկել է սրտիս մէջը, խիստ եմ վախենում,
Էլ քունս չի տանում.
Էսքան զուլումն ո՞վ է տեսել, սուլթա՞ն ու խանո՞ւմ,
Հալ չկայ ինձանում։
Էդ քո սրտումդ իսկի չկայ ռահմի նշան,
Դարդիս արա դարման։

Այս աշխարհումս դիփ ման եկայ, ողջոյն արարած,
Քեզ պէս չկայ գոված.
Հինդ ու Հապաշն... քեզ փէշքաշ է տուած,
Ամեն տեղ ես գոված.
Էշխըդ սրտումս բնակուած է, սաստիկ է բոված,
Էրուած է խորոված.
Ձամամ ծըծերդ բաց ա էլել վարդի պէս փռուած,
Ես եմ դրանից սոված.
Մէկ ֆիքրն արա՛ դու քեզն ու քեզ, ո՛վ մարդասպան,
Մուրվաթ արա՛, ամա՜ն։

Խեղճ Նալբանդ օղլին էլ չէ տեսել քեզ պէս սուրահի,
Թէպէտ չունիս մազդահի.

*Գիշեր և ցերեկ ինձ քո դրանդ կապի, պահի,*
*Բալքա սիրտս շահի.*
*Այսքան ման եկայ ոչ ոք չըկար քեզմէն սաւահի,*
*Չի տեսայ քու Թայի.*
*Թէ ռահմ չունիս, մէկ օր կտամ սպանման մահի,*
*Խելքս է սարսարի.*
*Ռահմ արա, որ հասել եմ աւուրը մահուան,*
*Ինձի տար գերեզման։*

---

## Բ

Բլբուլ եմ բաղի միջին, զուլզս գիւլլուշան եմ ուզում,
Լէյլի Մաջլումի նման սարերը սէյրան եմ ուզում.
Ո՛վ սիրելիք, ականջ արէք, տեսէք ինչ լաւ բան եմ ուզում,
Գիշեր ցերեկ Աստըծուցից նարս աննման եմ ուզում,
Տեսքից ղալամ չի համնիլ, հուրի դըման եմ ուզում,
Խալերն բարաթ բարաթ բաղալխան եմ ուզում,
Քիփրիկները նշտարի պէս, աչքերը փնջան եմ ուզում,
Թշերը կարմիր վարդի պէս, պռունգները մաստան եմ ուզում,
Երեսը պայծառ արեգակ, մահու տապան եմ ուզում։

Հարցնէք՝ ազգն ադնիւ, գիրա մինթանէն աթլազ է էլի,
Արխալուղն դառ ղալամքեար, շալիկը գիւլգեազ է էլի,
Մէջքը բարակ թաւաղի պէս, քամարն ալմազ է էլի,
Ծոցի մէջը ծաղկով լիքը, վարդ ու մանուշակ է էլի,
Սիպտակ դօշը մարմառ խոնչայ, շամամները թազայ է էլի,
Ամեն էսպէս մէջլիսում, մէկն ինձ թաւազայ է էլի,
Հետը նստեմ, զովք ու քէֆ անեմ, մէկ էլ էսպէս զովքան եմ ուզում,

Աստուածանից խրդարս՝ շատ մալ ու դովլաթ ունենայ,
Խելքով աշխարհք վայելէ, խելք, միտք, քեամալ ունենայ,
Մտքովը, Սողոմոն իմաստուն, ինքը խոնարհ հալ ունենայ,
Համէշայ նստած քարգահին, հազար թուլու կար ունենայ,
Գլխին թագաւոր ինձ պէս Ուռուստամի զալ ունենայ,
Բարով համնէ իր մուրազին, բարի բաղդ ըղբալ ունենայ,
Անուշ լեզուով խաթր առնի, ծոցին ուռուղվան եմ ուզում։

Նոր պսակուած թագուհու պէս քառսուն ղարաւաշով ման գայ,
Երանի՛, ասէ, աշխարհիս, համեշայ դումաշով ման գայ,
Բաղերը սէհր գնալիս սիրած թայ ու թուշով ման գայ,
Վարդ քաղէ, մանուշակ փնջէ, փարվազ անէ, զվզով ման գայ,
Տակերն ոսկէ նալով, բարձրակրունկ քօշով ման գայ,
Էլի մէջլիս ... [1]) թասերը փէշքաշով ման գայ.
Ինձ խաբար արէք, ով սիրեկլիք, ես էլ մէկ սէյրան եմ ուզում։

Է՜յ մալաք նազանի, հուրի ղլման վարդը գովեմ,
Մտիկ անեմ ահջամալին, սուրահի ղամաթը գովեմ,
Թէշտով աչքը դրած թուխ ծամերի սաթը գովեմ,
Մատները բարակ շուշայ, փարփուի զանաթը գովեմ,
Խօսքերքն անգլին ջաւահիր, անուշ մաշխուլաթը գովեմ,
Նստած տեղը ձեռ չի հասնիլ. ամեն մարիֆաթը գովեմ,
Իսկի չի 'լի բարեբարն‘ աննման խսան եմ ուզում։

Սրտով սիրէ ղուշավանդի [2]), էշխի ռուզվանն տեսնի,
Համէշայ քէֆ անելով՝ իր շուխքն ու գիլբարն տեսնի,
Նալբանդ օղլուս բեչարի վրի ծաղկեալ ծառն տեսնի,
Մեզ բարի յիշատակ մնայ, բախչի նուբարն տեսնի,
Հարիւր տարի դովլը քշի, ծերութեան վաճառն տեսնի,
Ինձ ճանփու արէք աշխարհից, ինքն իր ճանապարհն տեսնի,
Ես գնամ հասնեմ մաթլաբիս, ջաննաթի մաքեան եմ ուզում։



[1]) Չի կարդացւում։ [2]) Չի հասկացւում։

## Ա.

Ամենայն տեղ գարգիմանգին մէկ բաղ ա,
Մի վարդ, մի բիւլբիւլ էլ ընի, ձեռք կըտայ,
Երբ որ գտաւ իր սրտի ուզած…
Ջուխտ ականջը խուլ էլ ընի, ձեռք կըտայ։

Չի մտածիլ աշխարհի ցաւիցը,
Թէ որ սիրածի հետ ընի մի տեղ,
Երբ պաչ անի նրա պռօշներիցը,
Էլ ի՞նչ կուզի բժշկիցը ցաւի դեղ,
Քրտինքը պտուղ պտուղ թշերիցը,
Քան զմեղր ու նաբաթ շաքարիցը համեղ,
Սիրունութիւնը յայտնի կընի սէրիցը,
Ի՞նչ հարկաւոր է սէրին ասել տղեղ,
Սէրը մարդի քցիլ կըտայ քարիցը,
Թէ ազնուազն ընի, թէ մուժիկի ցեղ,
Չի կըշտանալ նրա պատկերիցը,
Թէ շորը հին ջուլ էլ ընի, ձեռք կը տայ։

Ոչ շատ խելքիցը թեթև լինի,
Ոչ շատ կարճ, բօյը միջակ, չափաւոր,
Գռունկը բարակ վարդի տերև լինի,
Կարմրագոյն թշերը իբրև խնձոր,
Աչքը ունքը շատ սև լինի,
Երեսի ճալւերը ոլոր մոլոր,

Ակուիքները մարգարտի ձև լինի,
Պուռը շիմշատ, մատները կակուղ խմոր,
Քաղցր լեզուով մէկ մէկու բարև լինի,
Երբ տեսանեն իրար ամէն սհաթ, ամէն օր,
Մ՚էկս մէկու թէ տալու պարգև լինի,
Ճատ չէ՝ մի թայգուլ էլ ընի, ձեռք կըտայ։

Լեզուն ճարտար, որ չի. խօսի կաց ու կամ,
Պռօշները կարմրաշար, իբրև կեղև Նռան,
Քիթը փոքր, միւս Նշանից համաձայն,
Մէկս մէկու համար լինին բարեկամ,
Իրար համար արիւն թափեն, հոգի տան,
Դուշմանի հետ պատահելուս շատ անգամ,
Ցանկայ ասի ես էլ էդպէս ունենամ,
Նազելի լինել ամէն աչքի յանդիման,
Այն ժամանակը, վա՜յ քեզ ասեն, Նիրա՜ն,
Սիրեկանի մէջլիսում անուշահամ
Հաց ու աղ էլ ընի, ձեռք կը տայ։

———

## Բ

Այքան աղաղակս ծանի՛ր, սիրահա՛ր,
Ինձի սիրով մի՛ սպանիր, սիրահա՛ր,
Կամի՛ս՝ ձեռովդ հոգիս հանիր, սիրահա՛ր,
Այս խօսածիս դուն հաւանի՛ր, սիրահա՛ր,
Մէկ Աստըծուդ բարեբանիր, սիրահա՛ր։

Ինձ հալումաշ արեցիր, ո՛վ հոգի ջան,
Սիրովդ չարչարեցիր, ո՛վ հոգի ջան,
Սրտիս լոյսը մարեցիր, ո՛վ հոգի ջան,
Անկրակ ինձ էրէցիր, ով հոգի ջան,
Տեսօք հրեշտակի նմանիր, սիրահար։

Երբ չես գիտում՝ ի՛նչ ա սէրի անումը,
Անտանելի ցաւ է մարդոյ ջանումը,
Գնալով մաշում է՝ ոնց ջրի դումը,
Ուրեմն Աստուծոյ դատաստանումը,
Ռաբբունուն դուն պատասխանիր, սիրահա՛ր։

Օրըստօրէ դարդերս արիր հազար,
Հրով սիրոյդ տանջւում եմ չարաչար,
Գիշեր ցերեկ արտասւում եմ անդադար,
Թէ հաքիմ ես, արա՛ դարդերիս մի ճար,
Սիրոյդ հիւանդ եմ, պահպանի՛ր, սիրահա՛ր։

*Ով որ տեսնի քեզ, կասի՝ վա՜յ, Նիրանի՜,*
*Մասխը չի գալ դարդիդ թայ, Նիրանի՜,*
*Ձատ սէրի էլ վերջն ա գա՜յ, Նիրանի՜,*
*Ե՛լօղլին չունի բաֆայ սայ, Նիրանի՜,*
*Սէրը մարդի չի անիլ բայ, Նիրանի՜,*
*Ո՛չ կտայ չոր հաց ու պանիր, սիրահա՜ր։*

## Գ.

Առանց քեզ եմ անմխիթար, դուշա ջա՛ն,
Մի ցաւս է հարիւր հազար, փաշա ջա՛ն,
Աղաչում եմ, ինձ մօտդ տար, փաշա ջա՛ն,
Մի չարչարիլ ինձ չարաչար, դուշա ջա՛ն,
Ես մի ծառայ՝ դու բարերար, դուշա ջա՛ն։

Հեռաւորը միշտ ճանապարհ կըսպասի՝
Մէկ բարեսիրտ մարդ տեսնի, խաբար լսի,
Սիրեկանի համբաւը բարի խօսի,
Լաւ սէրերը միտ բերի, լալ սկսի,
Քաղցր սիրոյ պատուի համար, դուշա ջա՛ն։

Հաստատ սէր ունեցողը ո՞նց դիմանայ,
Երբ որ սիրելուցը մէկը գիր ստանայ,
Կարելի է նրանով ուրախանայ,
Չի մտածիլ, թէ եմ օտար, փաշա ջա՛ն։

Միտս ընկնելիս բլբուլի պէս խօսալդ,
Կաքաւակերպ մանր մանր մանգալդ,
Ամէն դիմօք ինձ խրախոյս տալդ,
Երբ երազում տեսնում եմ գիւլ ջամալդ,
Ման եմ գալի՝ ոնց խելագար, դուշա ջա՛ն։

*Գրով տօնդ շնորհաւորեմ, սիրեկա՛ն,*
*Տեսութեանդ պարտաւոր եմ, սիրեկա՛ն,*
*Ներեցէք որ հեռաւոր եմ, սիրեկա՛ն,*
*Մի՛ նկատիր, թէ այսօր եմ սիրեկա՛ն,*
*Ես Նիրանն եմ քեզ սիրահար, դուշա ջա՛ն։*

## Դ.

Ասում ես՝ ցամաքիր, ո՞նց ցամաքեմ, մի՞թէ ես եմ ջուր,
Վառւում եմ առանց հուր.
Դարդդ ջիգեարս կտրատում է նշտարի պէս սուր,
մի ցաւս է հարիւր.
Աշխարհն ինձ համար լոյս չէ տալիս, մթնում է մրուր,
Երբ տրտում ես, տխուր։

Սէրդ ինձ հանապազ չարչարում է, չի տալիս խնդում,
Հոգիս է աւանդում.
Քեզնից առաւել, ո՛վ սիրահար, գանգատեմ այլ ո՞ւմ,
Աշխարհն է թնդում.
Վա՜յ իմ այսքան աշխատանացս, որ անցանի զուր,
Ինձ կսկիծ է մրմուռ։

Վասն էր կամիս պատժել աղքատիս չարաչար փշտօք,
Սարսափելի փիրօք.
Այսքան աղաչում եմ, աղերսում քեզ պաղատանօք,
Համ լալագին աչօք.
Տեսոյդ կարօտիս արժան արա՛, ուրախութիւն տո՛ւր,
Խղճալի մի՛ թողուր։

*Ձայնդ լսելու փափագում եմ, մէկ խօսիր անուշ,*
*Վասն էր բարբառիս ուշ.*
*Երբ բարկանալով և սաստկութեամբ արկանում ես փուշ,*
*Ես ըլնում եմ զգոյշ.*
*Երբ արկանէ սէրդ յոտս իմ երկաթէ անուր,*
*Ո՞հ, երկիւղ է զարհուր։*

*Այլոց տալով սէրդ տեսնելուս՝ ցաւում եմ շատ վախտ,*
*Էլի ես եմ անբախտ.*
*Վասն այս պատճառաւ սրտի խմում սէրդ է անխախտ,*
*Բայց դու ես ապերախտ.*
*Վա՜յ քեզ, Նիրանի, դարդերդ է հազարաւոր բիւր,*
*Արտասուքդ է աղբիւր։*

## Ե

Ասում ես՝ .քու սիրելին եմ, դառնում ես, լաղ ես անում,
Ուրիշին սէր ես տալիս, ինձ բէղամաղ ես անում,
Ինձանից հեռանում ես, խալխի քէֆը չաղ ես անում,
Համ խելքս գրաւում ես, համ վրէս ծիծաղ ես անում,
Ամեն տեղ խօսալուս՝ խօսքերս սարսաղ ես անում։

Այսքան քեզ սէր եմ պատմում, դու սէրիցը չես ամաչում,
Էս որքա՜ն աղաղակ ա, որ ես քեզի եմ աղաչում,
Քո սրտացաւդ ես եմ, միայն ինքդ չես ճանաչում,
Երեսիս ինձ գովում ես, մտքումդ անդէտ ես կոչում,
Փոքր ինչ սէր ցոյց տալով՝ ինձ քեզի մատաղ ես անում։

Քեզ հետ ես խօսալու եմ, միայն թէ չունիմ ժամանակ,
Չի պէտք է կռիւ անեմ, ո՛չ թուր ունիմ, ոչ դանակ,
Ինչպէս որ ես եմ, դու ինքդ էլ լինիս նոյն գունակ,
Ցետոյ ինձ ճանաչես, ասես՝ թէ խեղճ էր նա մենակ,
Իմ չափովս չես քաշել, քեզի ղօչաղ ես անում։

Մէկ սհաթ չըտեսնելս օրս տարի է անցկենում,
Սէրդ ինձ գործ եմ շինել, ուրիշ գործի չեմ մօտենում,
Թէ քեզ մենակ ունենամ, աշխարհն էլ ինչ եմ կամենում,
Ասանից բան չեմ ուզում, ես քու սէրդ եմ կամենում,
Ինձ թողում ես դու լալով, այլոց հետ մալաղ ես անում։

Արի, անխելք մի՛ լինիլ, գովելի է յուսով սէրը,
Որովհետև պատմում է ամենայն տեղ մեր Տէրը,
Սէրին չափ չի ունենալ, անպատմելի է բաները,
Եթէ մին խոր նկատես, համ ղա՛րարն ա շատ, համ խէրը,
Հէնց գիտես էդ սիրովը Նիրանուն չրա՛ղ ես անում։

## Ջ

### ՂՕՇՄԱՑ

Արտասուալից մորմոքելով լալիս եմ,
Չգիտեմ իմ եարս ուր է, սիրեկա՛ն,
Միրաբան եմ, հոգիս սիրով տալիս եմ,
Սէրն մէկ բոցբոքման հուր է, սիրեկա՛ն։

Այժմ կենդանի չեմ, սիրով մորթած եմ,
Այս ցաւը ես սէրի ձեռով գտած եմ,
Մէջ դնամիշ անիլ, անսուր քերթած եմ,
Սէրն մէկ երկսայրի սուր է, սիրեկա՛ն։

Չէնց գիտում ես, թէ քեզ մոռանում եմ ես,
Որ մի սհաթ չեմ տեսնում, մեռանում եմ ես,
Ինչ ժամ որ քեզանից հեռանում եմ ես,
Չէնց գիտեմ՝ ապրիլս զուր է սիրակա՛ն։

Նիրանին իմ, խելքս առար, սիրելի՛,
Ման եմ գալի՝ ոնց խելագար, սիրելի՛,
Արտասուքս գետ արիր վարար, սիրելի՛,
Կեանքս ցամաքած աղբիւր է, սիրեկա՛ն։

## Է

*Գնա՛, գնա՛ երկու լեզուէն, սիրեկա՛ն,*
*Որը մէկ սիրեկանի ես սիրում դու։*

*Թէ այդպէս է ամենայն սէր անելդ,*
*Ինձ խաբելո՛վ ընչի՞ ես դեգերում դու։*

*Ուրախ սիրտս լացացնում ես, բարեկա՛մ,*
*Միթէ ինձ երեխայ ես համարում դու։*

*Փոքր ի շատէ լաւ էր անցկենում օրս,*
*Ի՞նչ պատճառաւ վատ ես փոխարերում դու։*

*Ինձ ասում են՝ Յովսէփդ քեզ մոռացաւ,*
*Ո՛վ դու Յակովբ, ի՞նչպէս ես համբերում դու։*

*Նոր իմացայ քո ապերախտութիւնդ,*
*Շինուած սիրտս մէկէն ես աւերում դու։*

*Սիրեկանիդ թողում ես, ո՛վ սիրելի՛,*
*Ուրիշների սիրտն ես երերում դու։*

*Թէ Հաստատ սէր չունէիր առ Նիրանին,*
*Պ[illegible] էր էիր կրակումդ էրում դու։*

## Ը

Էն ինչպէս սիրեկան ա՝ ինձ ընկերութիւն չի անիլ,
Կը քանդի եղած սիրտս, միտք, համբերութիւն չի անիլ։

Գերութեանս չի խղճում էն անգութ անիրաւը,
Նրա արարմունքը թէպէտ ինձ նեղութիւն չի անիլ։

Սիրտս հազար կտոր ա, համ միտքս, խելքս ցիրուցան,
Չի գալ էն անիրաւը, մարդասիրութիւն չի անիլ։

Ի՞նչ՞ա էսքան ցաւերը՝ իմ սիրեկանին ասացէք,
Ընկերն ընկօր մասին էսքան չարութիւն չի անիլ։

Ես որքան մօտանում եմ, նա հեռանում ա ինձանից,
Նժէ ինձ սիրեկան ա, էսքան խեռութիւն չի անիլ։

Նիրանու սիրեկանը, տես, որքա՛ն անողորմ ա,
Ուրիշին կը հովուի, բայց ինձ տէրութիւն չի անիլ։

---



## ՂՈՋՄԱՑ—ՂԱՓԻԱ

*Էրեցիր վառեցիր, եար, ինձ սիրովդ,*
*Սիրովդ բոցբոցման հուրն ինչ արիր,*
*Հրով այրեցելոյս ընծայեա հովդ,*
*Հովացնող հրոյս ջուրն ինչ արիր։*

*Ջրատար արեցիր ինչպէս աւազն,*
*Աւազի պէս մաշւեց իմ սրտի սազն,*
*Սազով բարակեցի ինչպէս մէկ մազն,*
*Մազ արիր, մորթեցիր, սուրն ինչ արիր։*

*Սրովդ Նիրանուն մորթի, թէ եար ես,*
*Նարիս էլ դու ինքդ բժիշկ ու ճար ես,*
*Ճար արա, սիրելի, թէ դատարար ես,*
*Դադարելոյս սիրոյդ բուրն ինչ արիր։*

## Ժ

*Թէկուզ բիւր հազար սիրուն մօտ ըլի,*
*Իմ սիրածը ուրիշ եար ա, ուրի՛շ եար,*
*Թէ սիրտս էլ ցաւերով խոցոտ ըլի,*
*Նրա դեղն ինձ ուրիշ ճար ա, ուրիշ ճար։*

*Դէմքը պայծառ նման լուսին արեգակ,*
*Գռօշներն մագաղաթ, թղթիցն բարակ,*
*Փայլուն ալմաստ և մարգարիտ մին տեսակ,*
*Ակռիքները ուրիշ շար ա, ուրի՛շ շար։*

*Չասեն՝ սէրը խեղճ Նիրանուն սպանեց,*
*Խօմ չսպանեց, ամենայն գործից հանեց,*
*Դէ ինչ անես, որ չի կտրիլ ինձանից,*
*Էս սէրը մէկ ուրիշ լար ա, ուրի՛շ լար։*

*Սիրով Նիրանուն յաղթութիւնդ վաղ,*
*Ո՛չ մեռեալ եմ, ո՛չ կենդանի, ո՛չ սաղ,*
*Խաւարմանս դու լոյս անշամանդաղ,*
*Վասն իմ ծարաւիս մէկ աղբիւր ես պաղ,*
*Եւ կենդանութիւն, ո՛վ սիրաքանս։*

## ԺԲ

Ի՞նչ փատութիւնս տեսար, ինձ եաղ արիր, հոգի՛ ջան,
Ուրիշների հետ սէրդ հաստատ արիր, հոգի ջա՛ն,
Աչքերիս արտասուքը Եփրատ արիր, հոգի ջա՛ն,
Էդ սովորութիւնները դու փատ արիր, հոգի ջա՛ն։

Այրեցիր ինձ, անիրա՛ւ, հալ ու մաշ արիր ջանս,
Քեզանից ձեռք չեմ քաշիլ, դու ես իմ սիրեկանս,
Խելագար ման եմ գալի, չգիտեմ օթևանս,
Սիրտս ցաւով լցուցիր, բարբադ արիր, հոգի՛ ջան։

Ինձ էսպէս տեսնողները քեզ չեն ասիլ դարդիման,
Վերջը ամօթ կը կրես, կասեն՝ պատճառ է արեան,
Այսքան չարչարանքներս մի՞թէ չեն ինձ բաւական,
Որ փոխան սիրոյ՝ ցաւս առատ արիր, հոգի ջա՛ն։

Աղաղակս չես լսում, մի՞թէ քու սիրտը քար ա,
Իմ այսքան դեգերուելս դիփ քու սիրոյդ համար ա,
Քեզանից քեզ գանգատիմ, դատաստանս ուղիղ արա՛,
Զրկեցիր ինձ քո տեսոյն, աղքատ արիր, հոգի ջա՛ն։

*Ինձ տեսնելիս, սիրելի՛, հէնց գիտում ես՝ դուշման եմ,*
*Սիրով կեանքս փչացաւ, չի կարելի փոշմանեմ,*
*Գիշեր ցերեկ ուզում եմ պատկերիդ թամաշ անեմ,*
*Դու սիրամարգ՝ ինձ սիրով սայեադ արիր, հոգի ջա՛ն։*

*Դու լաւ գիտես, սիրեկա՛ն, ի՞նց ա սէրի կրակը,*
*Տասն և մէկ ամիս լալ ա ողորմելի սոխակը,*
*Մի՛ չարչարիլ Նիրունուն, հասել ա ժամանակը,*
*Հէնց իմացի՝ գերի ա, ազատ արիր, հոգի ջա՛ն։*

---

## ԺԲ

Ի՞նչ վատութիւնս տեսար, ինձ նադ արիր, հոգի՛ ջան,
Ուրիշների հետ սէրդ հաստատ արիր, հոգի ջա՛ն,
Աչքերիս արտասուքը Եփրատ արիր, հոգի ջա՛ն,
Էդ սովորութիւնները դու վատ արիր, հոգի ջա՛ն։

Այրեցիր ինձ, անիրաւ, հալ ու մաշ արիր ջանս,
Քեզանից ձեռք չեմ քաշիլ, դու ես իմ սիրեկանս,
Խելագար ման եմ գալի, չգիտեմ օթևանս,
Սիրտս ցաւով լցուցիր, բարբադ արիր, հոգի՛ ջան։

Ինձ էսպէս տեսնողները քեզ չեն ասիլ դարդիման,
Վերջը ամօթ կը կրես, կասեն՝ պատճառ է արեան,
Այսքան չարչարանքներս մի՛թէ չեն ինձ բաւական,
Որ փոխան սիրոյ՝ ցաւս առատ արիր, հոգի ջա՛ն։

Աղաղակս չես լսում, մի՛թէ քու սիրտը քար ա,
Իմ այսքան դեգերուելս դիփ քու սիրոյդ համար ա,
Քեզանից քեզ գանգատիմ, դատաստանս ուղիղ արա՛,
Զրկեցիր ինձ քո տեսոյն, աղքատ արիր, հոգի ջա՛ն։

Ինձ տեսնելիս, սիրելի՛, հէնց գիտում ես՝ դուշման եմ,
Սիրով կեանքս փչացաւ, չի կարելի փոշմանեմ,
Գիշեր ցերեկ ուզում եմ պատկերիդ թամաշ անեմ,
Դու սիրամարգ՝ ինձ սիրով սայեա́դ արիր, հոգի ջա՛ն։

Դու լաւ գիտես, սիրեկա՛ն, ո՞նց ա սէրի կրակը,
Ցասն և մէկ ամիս լալ ա ողորմելի սոխակը,
Մի՛ չարչարիլ Նիրունուն, հասել ա ժամանակը,
Հէնց իմացի՝ գերի ա, ազատ արիր, հոգի ջա՛ն։

---

## ԺԳ

Ներեցէք իմ անբաղտիս, խորհուրդս բանամ, սիրեկա՛ն,
Փափագս լցուցանեմ, կարօտ չի մնամ, սիրեկա՛ն,
Խղճալի կեցութեանս չի տարար խնամ, սիրեկա՛ն,
Քեզանից այսուհետև ինչ ուրախանամ, սիրեկա՛ն,
Բաց ասեմ, մնա՛ս բարև, ուզում եմ գնամ, սիրեկա՛ն,
Ո՛վ գիտէ, ո՞ղջ կը լինեմ, որ մէկէլ տեսնամ, սիրեկա՛ն։

Ամա՛ տեսնեմ, անիրա՛ւ, քո մասին ինչե՞ր չի տեսայ,
Լաւ անունս փուչ արի, վատ բամբասանքներ չի տեսայ,
Չի քաշած ինչե՞ր մնաց, ինչ տեսակ ցաւեր չի տեսայ,
Հաստատուն սրտիս բերդը քեզանով աւեր չի տեսայ,
Մինչև հոգիս մաշեցիր, քեզնից հաստատ սէր չի տեսայ,
Քանի մօտ 'ի, չի տեսայ, հիմա հեռանամ, սիրեկա՛ն։

Քու սիրովդ ստացած ցաւերի համարն ասեմ,
Քանի՞ տեսակն ես ուզում, ամենից հազարն ասեմ,
Քանի՞ փորձանքն ասեմ, կամ թէ քանի՞ դարն ասեմ,
Թէ կամիս քաջն իմանալ՝ Արարատեան սարն ասեմ,
Չի քաշած այս ցաւերը, ես բոլոր աշխարհն ասեմ,
Այս անտանելի ցաւին ես ո՞նց դիմանամ, սիրեկա՛ն։

*Անկատար խօսքերիցդ ինձանում մէկ յոյս չի մնաց,*
*Նեղութիւնս աւելացաւ, սրտիս խրախոյս չի մնաց,*
*Զօրացաւ կենաց ծառս, ամենևին բոյս չի մնաց,*
*Դիփ կեանքս զուր անցուցի՝ ոչինչ իմ խղճոյս չի մնաց,*
*Արիւն արտասունք լալով՝ աչքերումս լոյս չի մնաց,*
*Քեզանից իմ վաստակս այսքա՛ն իմանամ, սիրեկա՛ն։*

*Ճշմարիտ են ասել, թէ՛ էհտիբար չունի ինսանին,*
*Սէրը երբէք չի տուած ժամանակիս դարդիմանին,*
*Տեսանեմ քեզ, սիրելի՛, յաւուրն յետնում դատաստանին,*
*Նախէդ բռնած քաշելով՝ ասեմ, թէ ես եմ Նիրանին,*
*Յայնժամ ես գանգատաւոր՝ քու ձեռնէդ ահեղ ատենին,*
*Դու լինիս ինձ դատաւոր՝ ես արդարանամ, սիրեկա՛ն։*

## ԺԴ

Նոր ի Նորոյ սիրելուցս սէր տեսայ,
Սիրելուս յետնայ՝ հոգի—ախպէր տեսայ,
Եւ անորոշ մէկ մէկուց ընկեր տեսայ,
Ուրախացայ, երբ գրութիւններ տեսայ,
Փա՜ռք Աստուծոյ, ցնծութեան օրեր տեսայ։

Այսուհետեւ չեմ ես օտար յաշխարհի,
Ստացայ փափագս, չի մնաց թերի,
Էլ չունիմ սէր այլ իմն սիրահարի,
Ձեզ Աստուած ինձ համար շատ չի համարի,
Որովհետեւ շատ սիրահարներ տեսայ։

Քարացեալ սիրտս փափկացաւ, սիրելի՛,
Իմ նեղութիւնըս վերջացաւ, սիրելի՛,
Մեռեալ կեանքս առողջացաւ, սիրելի՛
Երբ տեսայ՝ ցաւս վերացաւ, սիրելի՛,
Այսքանն ինձի բաւական էր՝ ինչ տեսայ։

Գրութիւնդ նորալուր էր, հոգի ջա՛ն,
Ինձ զովացուցիչ աղբիւր էր, հոգի ջա՛ն,
Գիտութիւնդ երկսայրի սուր էր, հոգի ջա՛ն,
Երկնից իջեալ կենդանի հուր էր, հոգի ջա՛ն,
Ո՛չ յիմաստունս, ո՛չ վարժարանս տեսայ։

Լաւ իմացայ՝ ուր գնամ՝ ինձ հետ ես դու,
Աշակերտութեանս վարժապետ ես դու,
Մոլորելոյս այժմ կարապետ ես դու,
Չը գիտէի այդքան սրտագէտ ես դու,
Ես Նիրանն եմ, շատ սիրահարներ տեսայ։

———

## ԺԵ

### ՍԷԼԻՍ

Ով մարդ, ի՜նչ ես աշխատում, արծաթը քեզ ջան չի լինի,
Ինչպէս որ ղաթիրը շատ զարդարես, քեհլան չի՛ լինի։

Խոզին ինչքան պատիւ տաս, ուտացնես խոտ ու գարի,
Ճնորհօք և գուրեկան մարալ ու ջէյրան չի լինի։

Սևին դու հազար տարի արաղի սապնով լուանաս,
Նրա գոյնը չի բաց ըլիլ, սպիտակ քաթան չի լինի։

Գիժը խրատ չի առնիլ, թէ կուզ հարիւր մանգանա տաս,
Ինչպէս՝ անհոտ եաւշանը հոտով ռէհան չի լինի։

Այլ և այլ մարդը թէ որքան ունենայ կարողութիւն,
Մեռնելու ժամանակը դուլթի ու պատան չի լինի։

Նորաքիսա մարդիցը փող մի՛ ուզիլ,- որ կամաչես,
Նրան ոչինչ ժամանակ մարդութեան նշան չի լինի։

Բայղուշին թէ որ դնես ոսկի ղաֆազի միջումը,
Կամ ինչքան գովասանես, կաքաւ ու թառլան չի լինի։

Աշխարհին շատ կայ աշըղ, ամեն մինը սիրոյ մեռած,
Ոչ մէկը սիրոյ մոլի ոսկերիչ Նիրան չի լինի։

## ԺԶ

Որքա՜ն ցաւ է անխնամ սիրելոյ սէրին ջանալը,
Պատիժ ու չարչարանք ա նրա ետեւանց գնալը,
Տես թէ ո՜րքան դժուար ա խօսել երես տենալը,
Ինձ ասում են՝ ձեռք քաշի՛, խէր չէ էդպէսն ունենալը,
Ի՞նչ անեմ, որ չեմ ուզում սիրելուցս հեռանալը,
Քանի ինձ հետ սէր ունի, չի վայելիլ մոռանալը։

Ասում են՝ վասն էր սիրեցիր, էն ապերախտէն ձեռք քաշի՛,
Սիրոյ կրակումը կէրուես, խելք ունես՝ էն վատէն ձեռք քաշի՛,
Նրա համար մի՛ չարչարուիլ, թող, էն անրախտէն ձեռք քաշի՛,
Նրանով թագաւոր լինիս, թագէն ու թախտէն ձեռք քաշի՛,
Քեզ թողալու է վախճանը, նրա երախտէն ձեռք քաշի՛,
Միայն ինձ անսիրեկանի արժան չէ աշխարհ մնալը։

Նրան դու մենակ չես սիրում, ուզում ես բոլորն ասեմ,
Նրա սիրոյն դեգերուած՝ քանի՛ հազարաւորն ասեմ,
Մի՛ դու զուր կեանքդ մաշիլ, ափսո՜ս քու ամէն օրըն ասեմ,
Միայն դրանից ձեռք քաշի, քեզ սէրի թագաւորըն ասեմ,
Դառն աշխատող, դատարկ մնող քանի՛ գանգատաւորըն ասեմ,
Բայց ինձ չէ հարկ սէրի միջին էդպէս բաներն իմանալը։

*Չարակամ մարդէն, Նիրա՛ն, օգուտ չունիս, հեռու կացի՛ր,*
*Նրա խօսքին մի՛ նայիլ, էնպէսին շուտով մոռացի՛ր,*
*Ճանաչի բարեկամդ և սիրեկանդ իմացի՛ր,*
*Չարին մի տալ ժամանակ, առ քեզ գալն զգուշացի՛ր,*
*Մտածի՛ ամենայն ժամ, քու վերջին օրդ լացի՛ր,*
*Որ դժուար է սիրելին սիրելուց նեղանալը։*

---

## ԺԷ

Օգնեցէ՛ք ինձ, սիրելի՛ք, սիրոյ սիրաբանս գնաց,
Ուշ գտայ, շուտ կորուսի, կեանքս ու հոգի ջանս գնաց,
Ծաղիկներս սալարած թողաւ այգեպանս գնաց,
Երգելով բիւլբիւլներս, վարդ ու բուրաստանս գնաց,
Այժմ լալով մնացի, զուր իմ աշխատանս գնաց։

Ափսո՜ս, որ վիզս ծռած, ինձ քարէքար տուեցի,
Մէկ սիրեկանի համար ես հոգւով չափ ցաւեցի,
Ինձի սէրին ծախելս ամէն տեղ համբաւեցի,
Վերջը դատարկ մնացի, ես իմ անձնէս զանգատեցի,
Չը խնայեց սիրելիս այսքան նեղութիւնս, գնաց։

Ինձ մնաց նրա սիրոյն էրուելս այսքան ժամանակ,
Քեարամին Ասլուն ասեմ, թէ փարվանին տամ օրինակ,
Չգիտեմ՝ իմ բախտի՞ցն է, թէ թշնամիք կային ներհակ,
Ջոկեցին սիրեկանէս, ինձ թողեցին միայնակ,
Ո՛չ քուն ունեմ, ոչ դադար, վերջ հանգստարանս գնաց։

Առաջի սէրն ասեմ, թէ այժմեան կարօտ մնալս,
Երանի՜ թէ չըլլինէր այսքան սիրոյ մօտենալս,
Արեան արտասուք լալով՝ անգութ ցաւի տիրանալս,
Վախում եմ՛ կարօտ մեռնեմ, չը լինի կրկին տենալս,
Ինձ մութն է աշխարհը, լոյս արեգականս գնաց։

*Անձնիշխանութիւնս ծախեցի մէկ սիրեկանի,*
*Նրան գերուած ծառայ եմ մինչի օրն դատաստանի,*
*Թէ կուզի դուլթսաղ անի, թէկուզ ձեռովն սպանի,*
*Հրեշտակը Նիրանու չոր ջանէն ի՞նչ պէտք է տանի,*
*Ես մի հոգի ունէի՝ առաւ սիրեկանս գնաց։*



## Ա.

*Աղայ Ջոհրապ Վասիլովը զապիսկայով ինձ բերաւ,*
*Դեռ մէկ օղուտ չստացած՝ շուտով նափինչիս կորաւ,*
*Իս քէֆն ինձ համար չէր, այլոց լաւութիւն արաւ,*
*Տեսայ որ ինձ տանողը Քեալովի տունը տարաւ,*
*Մեզ ինչ բանի բերեցիք՝ մօտիս մարդը հարցրաւ,*
*Հարսանիք է ասելով՝ ձեռքը շարժեց գոհացրաւ։*

*Նափինչիս ու լափչիկս կառավարչին պահ տուի,*
*Հինգ մուխամբաղ էլ նրան խոստանալով շահ տուի,*
*Տեսայ որ դարդիմանդ էր, արեցի Թամահ, տուի,*
*Բերանացի մասնաւոր էն տղին Թամբահ տուի,*
*Կորչի քեզնից կստանամ, էս ասելով՝ ահ տուի,*
*Իդ մասին անհոգ մնա՝ յոյս տալով ինձ՝ վերցրաւ։*

*Թառն ու քեամանչէն ձեռիս՝ մտանք ժողովարանը,*
*Ընտեղ էր Երևանու հայոց բոլոր իշխանը,*
*Տեղ շանց տուեց, բարովեց վերոյիշեալ Վասիլեանը,*
*Կարեաց չափով քաղցրութիւն ցոյց տուինք բազմութեանը,*
*Բայց Իսակ Արտեմիչը Թամադայ էր էն տանը,*
*Քեզ համար փող մօտ կանեմ՝ երդուելով պայման դրաւ։*

*Բազմութեանը դամ արի սաղ գիշերը անդադար,*
*Մի չաշկայ չայ ստացայ, ջուրը սիպտակ անշաքար,*
*Խանանդայ բերիլ տուին՝ մեզ կարծելով անյարմար,*
*Մէկ նաւայ ասել տուի, տեսայ որ էր անկատար,*

Քիչ սիրուն էր, խաղցրին, փող ժողովեց ինձ համար,
Թամաղի մեծ յոյս տալը տասն ապասի փող դառաւ։

Պսակից երկու սհաթ յառաջ էր, որ հաց կերին,
Յետոյ տարան զուքեցին հարսն ու փեսին, տուն բերին,
Մի մին բաքալ շանպանսկով բազմութիւնը դուրս արին,
Ինձ էլ իմացնելով, լափչիքս առաջ բերին,
Ասի՝ եափնջիս ծուր ա, էն անմիտ կառավարին,
Ասաւ՝ բիւրաւորք կային, ինչ գիտեմ՝ ով թռցրաւ։

Մաղերը թուխ եափնջուս, նաև նուրբ քէչայ ունէր,
Ուլթ մանէթից աւելի արժողութիւն, սայ ունէր,
Ճիտ քցելու ղայթանի տեղը քեալայաղա ունէր,
Կանանչ նանկա աստառով Թիֆլիզու բաւթայ ունէր,
Չաչանից մէկ էր եկած՝ ծիլերը բուռմայ ունէր,
Դժրգիմանղի բաշխած էր, ինքը գառ և ոչ պառաւ։

Քիչ ման եկան, չի դտան, ասին՝ գնա քու բանին,
Տասն ապասին մուֆթայ չէր, համարի քու գլանին,
Քարտաշովն, Արզանովը ներկայ են էս պայմանին,
Ցոյս դրի ինձ իմ տեղից բերող մարդու հրամանին,
Որ բերել էր Գաբրիէլ Վարդանովի խրախճանին,
Կեանք տայ Աստուած հայկազուն պրօկուրօր Վասակեանին,
Տէր կանգնելով Ճիրինին՝ մէկին երկու փողն առաւ։

———

## Բ

Այգեպա՛ն, ի՞նչ ես անում, շամբը բուրաստան չի լինի,
Օձի որքան գեղեցիկն ըլի, սիրեկան չի լինի,
Կատուին ուտացնես օրը հազար նազ ու նամաթ,
Տիրասէր և բարեսիրտ, յայտ է, իբր շան չի լինի։

Բօշի աղջիկն զուգես մարգարտաշար շորերով,
Չի թողալ բնականը, վիճակի արժան չի լինի,
Ագռաւին շուշի միջին պահես շաքար ու նաբաթով,
Վատաբաղտ բիւլբիւլի պէս վարդի սիրաբան չի լինի։

Խաղողի վազովը շատ տեղ պարապած մարդ կայ,
Միայն կարծում եմ, թէ ոչ մէկը Բերձէն Ալէքսան չի լինի,
Գեղեցիկ շատ կայ, ասեն թուրքերը, ջաննաթի միջին.
Ինչ Վրաստանիցն ա, ջաննաթինն էլ էնքան չի լինի։

Թէև էս դարումս էլ ազգասէր իշխան շատ ունինք,
Բայց մէկը ազգի համար Գրիգոր ու Վարդան չի լինի,
Շիրինի, որը հարիւր քաղցր և ախորժ բան մտածես,
Քու հայերէն խաղերը Սայեաթի նման չի լինի։

## Գ.

Առարկայ բացարին շնորհքն ու բախդը,
Խօսիլ սկսեցին իրար հետ ներհակ,
Բախդն ասաւ՝ դու ո՞ւր էիր էն վախտը,
Որ ես ի Թորգոմեան տանն աշտանակ։

Շնորհքն ասաւ՝ ո՞վ բախդ, ի՞նչ ես, կամ ո՞ւր ես,
Եթէ յայտնի բան ես, արի երեւակ,
Եթէ խոր նըկատեմ, կարծեօք, դու կուր ես,
Ձիմըդ լինիս հայոց լուսատու փայլակ։

Բաղդն ասաւ՝ ես շատ ցաւի դեղ գիտեմ,
Ես ինձ աշխարհումը միշտ շքեղ գիտեմ,
Որքան շնորհալի մարդի տեղ գիտեմ՝
Ոչ տանն ալիւր կայ՝ ոչ գլխին գտակ։

Շնորհքն ասաւ՝ մէկ կայսրի բարեբաղդ ասեմ,
Անուամբ Աղէքսանդր և անյաղթ ասեմ,
Սրանով հարկ է քեզ ապերախտ ասեմ,
Անվայելուչ մահին չըտուար ժամանակ։

Բաղդն ասաւ, թէ փոքր ինչ նայեմ աղքատին,
Խղճալի ապրողին և յուսահատին,

Էնքան կը մեծարեմ, մինչ կայսրի մօտին
Կունենայ փառք, պատիւ և պարծանաց թագ։

Շնորհքն ասաւ՝ չեմ ստել՝ ունիս էդ բանը,
Այլ կոյր ես, չես տեսնում պատուոյ արժանը,
Կամապաշտ, մեծասիրտ ինքնահաւանը,
Քեզնով է բարձրանում, ով չար նշաւակ։

Բաղդն ասաւ՝ ես եմ փառք և ես եմ պատիւ,
Մարդկանց սեռի վրայ երախտիքս անթիւ,
Ես եմ Աստուածանից մէկ ընծայ ազնիւ,
Գրեանք, գիտուն անձինք չեն ինձ հակառակ։

Շնորհքն ասաւ՝ մին օր սուրբ Գիրքն բացայ,
«Ծննդոցէն» մինչ «Յայտնութիւնն» ընթերցայ,
Բաղդ անունով երբէք պարգև չիմացայ,
Մարդկանց սահմանած ես, խաբեբայ նամակ։

Բաղդն ասաւ, թէ Արիստոտէլ, Պղատոն
Ինձ համարեցին մէկ անշարժ գայսոն,
Թէ ինձնէն մասնաւոր ունենար Սամսոն,
Չէր ըմպիլ ամբոխէն զուր մահու բաժակ։

Շնորհքն ասաւ՝ չունիս այդքան հրաման,
Զիմըդ կարես լինիլ արգելող մահուան,
Եթէ լեալ էի ես պատկերահան,
Քեզ կընկարէի կնոջ օրինակ։

Բաղդի ու շնորհքի դաւին վերջացաւ,
Գրեթէ, շնորհքէն բաղդը վախեցաւ,

*Ես երգողս բաղդին ինչպէս ասեմ լաւ,*
*Օրս գնաց՝ բաղդն ինձ չէլաւ հպատակ։*

*Ես Ձիրինն եմ աշըղ, չեմ յուսով կորուստ,*
*Տուել ա ինձ Աստուած մամնաւոր ապրուստ,*
*Երանի՜ թէ լինիմ շնորհքով հարուստ,*
*Թող չուխէս հին լինի, սապոկներս ծակ։*

## Դ.

Ասում ես՝ աշխարհը դիփ ինձի գովական են ասում,
Չես իմանում՝ քեզանից ծածուկ՝ հարիւր բան են ասում,
Փոքր ինչ գեղեցկութեանդ համար՝ քեզի ջան են ասում,
Քու խորհուրդդ գրաւելու համար սիրական են ասում,
Մէկ ժամանակ սիրում են ու սիրոյ արժան են ասում,
Գիտուն անձերը ծանր բնութեանը իշխող իշխան են ասում,
Գռօշի քաղցրութիւնով խաբուողին անբան են ասում։

Մաշալլան քեզի համար հաց ու կերակուր մի՛ անիլ,
Պարծանքով մի՛ կշտանալ, պայծառ միտքդ կոյր մի՛ անիլ,
Մի՛ մտիկ տալ փառերին, թանգ անունդ զուր մի՛ անիլ,
Աստուածատուր երեսդ ռանգ ու ղեղով սուր մի՛ անիլ,
Քեզ Անահիտ կուռքի պէս ոսկեփետուր մի՛ անիլ,
Քեզ նման բարձրամտին նաւ ալեկոծման են ասում։

Մաշալլէն խէր չի անիլ ո՛չ առնողին, ո՛չ ծախողին,
Մի կապէկ չի աշխատիլ նա իրանով պարծենողին,
Նրանով քանի՛ ոմանք իրանց վիճակները թողին,
Չեռքդ ա՛ռ մին հայելի, մտիկ տո՛ւր մտացդ քօղին,
Քանի որ բարձրամտիս, նայի՛ր ոտիդ տակի հողին,
Ըստ որում սուրբ Գրքերը մեզ հողի աման են ասում։

*Միտքդ ամպով պատած ա, լաւ ու վատ չես իմանում,*
*Այլոց քիչն է քեզ երևում, քու շատդ չես իմանում,*
*Խորհրդակից բարեկամդ ու եադդ չես իմանում,*
*Ցաւողդ չես ճանաչում, հարազատդ չես իմանում,*
*Ինձանից քեզ առաջնորդող խրատդ չես իմանում,*
*Կարելի է՝ շատերը ինձ քեզի դուշման են ասում։*

*Արի, անմիտ մի՛ լինիլ, քեզ քու բարեկամն ա լաւ,*
*Բարեկամի ունեցած մասնաւոր խնամն ա լաւ,*
*Ուրիշի խաս շորիցը քեզ համար քու խամն ա լաւ,*
*Խալխի այգոյն մի նայիր, քու մէկ ծառի համն ա լաւ,*
*Ջիրինի քեզ կամեցած օրն ա բարի, ամն ա լաւ,*
*Ես քեզ համար ցաւում եմ, խալխը զրաջան են ասում։*

## Ե

Արի՛, հոգի՛, ինձ խելագար մի՛ անիլ,
Աղեղ սիրովդ նետահար մի՛ անիլ,
Ուրիշի հետ բէհ ու բազար մի՛ անիլ,
Ուրախութիւնս ահ ու զար մի՛ անիլ,
Վարդ երեսդ փշին յարմար մի՛ անիլ,
Ինձ վատութիւն խալխի համար մի՛ անիլ,
Ամեն խօսքով ինձ ջրատար մի՛ անիլ։

Քեզ ունելով՝ ունեցածս եաղ արի,
Աշխարհումն լաւ անունս վատ արի,
Աչքիս էլած կաթիլը Եփրատ արի,
Անբախտութիւնս, ում տեսայ՝ գանգատ արի,
Սարերումը վայ տալով՝ ինձ դատ արի,
Լայնատարած միտքս յուսահատ արի,
Ինչ արեցիր՝ բա՛ւէ, թաքրար մի՛ անիլ։

Հոգէհան ա հրեշտակաձև պատկերդ,
Թուխ մազերդ, կամարակապ ունքերդ,
Ճաղակոլոլ վարդի տերև պռօշներդ,
Զինու էկած ֆառֆօռի թաս աչքերդ,
Սոխակ ձայնդ, քաղցր և անուշ խօսքերդ,
Սէր եմ կարծում արիւնախում սուսերդ,
Եկ, սէր իմ ազնիւ, բարուն չար մի՛ անիլ։

Ինձ թողալդ, ուրիշի հետ ման գալդ,
Ինձ ատելդ, ուրիշներին յոյս տալդ,
... [1]) ինձ սգաւոր թողալդ,
Իմ չարակամ դուշմանի հետ խնդալդ,
Որովհետև էդպէս ա քու ահւալդ,
Չի հարկաւոր խաբեբայաբար լալդ,
Էլ անունդ ինձ բարեբար մի՛ անիլ։

Ցաւս մէկ էր, հարիւր էլաւ քեզ համար,
Արտասուքս աղբիւր էլաւ քեզ համար,
Օրս ու կեանքս զուր էլաւ քեզ համար,
Աշխարհը աչքիս հուր էլաւ քեզ համար,
Լուսատու միտքս կուր էլաւ քեզ համար,
Բուրաստանըս անջուր էլաւ քեզ համար,
Եկ, սոխակիս անմխիթար մի՛ անիլ։

Պատկեր ունիմ տէրունական, լաւ գիտես,
Եւ էլ հոգի եմ քեզ նման, լաւ գիտես,
Ձատ հոգւով մարդ եմ բնական, լաւ գիտես,
Ես ինքս հայ, տեղս Երևան, լաւ գիտես,
Եւ ազգով եմ Նիկողոսեան լաւ գիտես,
Ձիրին անունս էլ, սիրեկա՛ն, լաւ գիտես,
Ինձի այլոց հետ բարեբար մի՛ անիլ։

---

## Զ

Բացուի՛ր, նազելի վա՛րդ, ահա գարնան ժամանակ է,
Քու բացուելու համար բոլոր աշխարհը փափագէ,
Բիւլբիւլը տառապեալ, բա՛ւ է, այսքան եղանակէ,
Պարտիզպանն սուգ մտեալ, բուրաստանն փակ է,
Բացուի՛ր, քո հոգին սոխակի շնչին հպատակ է,
Բիւլբիւլի բոլոր կարդալը քեզ սիրոյ նամակ է։

Սարերը նորոգուեց, հալա դեռ չես բաց էլել դու,
Ծաղկով բաղը լցուեց, հալա դեռ չես բաց էլել դու,
Համասփիւռը բացուեց, հալա դեռ չես բաց էլել դու,
Շուշանը տարածուեց, հալա դեռ չես բաց էլել դու,
Գարնան դուռը բացուեց, հալա դեռ չես բաց էլել դու,
Բացուի՛ր դու շուտով, քեզանում այդ ի՛նչ նպատակ է։

Բացուի՛ր, նկատի՛ր բիւլբիւլի տասն և մէկ ամիսը,
Խաւար փոխուեցաւ խղճալու բոլոր բարի լիսը,
Էղպէս մի՛ անիլ, Վարդուհի՛, անցնում է մայիսը,
Ցոյց տո՛ւր տերևդ, որովհետև մերձ է յունիսը,
Խղճա՛ Արամիս, ո՛վ դու յիմար Արմաւիրայ Դիսը,
Հայաստան ամպի տակին առանց արեգակ է։

*Վարդ բարբառելով խղճալի կեանք սորա մաշուեց,*
*Սուսեր սիրովդ աըխնալից սիրտը թրաշուեց,*
*Այրող կարօտդ ունելով, ստամոքսը խաշուեց,*
*Մինչ աչքի էլած մասնաւոր արտասուքը քաշուեց,*
*Յոյսը վերացաւ, կարծես թէ կեննաց ծառը տաշուեց,*
*Ջալթիր ...* [1]) *քեզանում այդ ինչ նպատակ է։*

*Բացուիր դու շուտով, մէկ փոքր յոյս տուր սիրահարիս,*
*Միշտ քաջ սիրովդ մի չարչարիր զուր սիրահարիս,*
*Մերթ արտասուալից, մերթ ճարակ տուր սիրահարիս,*
*Տուր սիրովդ սառնատեսակ ջուր սիրահարիս,*
*Ընթերցաբանող, չըլինի, ասես՝ կոյր սիրահարիս,*
*Սեւ բաղդը, Հիրին, բիւլբիւլի, վարդի օրինակ է* [2])։

---

1) *Լաւ չի որոշւում։*

2) *Մի օր. Բացուիր դու շուտով, մէկ փոքր յոյս տուր սիրահարիս,*
*Անհարկես, գթա խողխողած անսուր սիրահարիս,*
*Լալով մաշելով մի չարչարիլ զուր սիրահարիս,*
*Գոնէ, ունեցածս սիրոյ չափ լոյր սիրահարիս,*
*Տուր սիրովդ սառնատեսակ ջուր սիրահարիս։*

## Է

Գեղեցիկ ես, գեղեցիկ, շատ աննման ես, գեղեցի՛կ,
Թայ չունես աշխարհումս, մէկ նոր նշան ես, գեղեցի՛կ,
Էդ քաջ մտիկ տալովդ խսկ հոգեհան ես, գեղեցի՛կ,
Դու Նարդոս համասփիւռէն ազնուական ես, գեղեցի՛կ,
Դու աղբիւր սառնատեսակ, ջուր բիւրակնեան ես, գեղեցի՛կ,
Դու Եղեմին համեմատ մէկ բուրաստան ես, գեղեցի՛կ։

Իրաւի, ես գովական, ամէն տեսակով գովելի,
Մանգաղդ, մտիկ տալդ բիւր օրինակով գովելի,
Ջառնաւուխտ մարգարտաշար յօրինուած Թագով գովելի,
Քաղաքավարութիւնով, քաղցր եղանակով գովելի,
Ամէն կերպ քաղցրութիւնով լի ես, հասակով գովելի,
Արշալուսով բաց էլած վարդ պատուական ես գովելի։

Քու Թափանցիկ սիրովդ ինձի հալ ու մաշ արեցիր,
Թողալով անմխիթար՝ ուրիշ բարեկամ ճարեցիր,
Իմ էսքան տոչորուելս արդեօք ծիծաղ համարեցիր,
Չէ որ ազնիւ սիրովդ իմ կեանքը գերի վարեցիր,
Անխնայ կրակի պէս խղճալոյս ծածուկ էրեցիր,
Իրաւ արա՛ ինձի, Թէ իրաւարան ես գեղեցիկ։

Վարդ բարբառելով՝ խղճալի կեանք սորա մաշուեց,
Սուսեր սիրովդ արիւնալից սիրտը թրաշուեց,
Այրող կարօտդ ունելով, ստամոքսը խաշուեց,
Մինչ աչքի էլած մասնաւոր արտասուքը քաշուեց,
Յոյսը վերացաւ, կարծես թէ կենաց ծառը տաշուեց,
Զարթի՛ր ... [1]) քեզանում այդ ինչ նպատակ է։

Բացուիր դու շուտով, մէկ փոքր յոյս տո՛ւր սիրահարիս,
Միշտ քաջ սիրովդ մի՛ չարչարիր զուր սիրահարիս,
Մերթ արտասուալից, մերթ ճարակ տո՛ւր սիրահարիս,
Տո՛ւր սիրովդ սառնատեսակ ջուր սիրահարիս,
Ընթերցարանո՛ղ, չըլինի՛, ասես՝ կոյր սիրահարիս,
Սեւ բաղդը, Ջիրին, բիւլբիւլի, վարդի օրինակ է [2])։

---

[1]) Լաւ չի որոշւում։

[2]) Մի օր. Բացուիր դու շուտով, մէկ փոքր յոյս տուր սիրահարիս,
Ակնարկեա, գթա խողխողած անսուր սիրահարիս,
Լալով մաշելով մի չարչարիլ զուր սիրահարիս,
Գոնէ, ունեցածս սիրոյ չափ լո՛ւր սիրահարիս,
Տուր սիրովդ սառնատեսակ ջուր սիրահարիս։

## Է

Գեղեցիկ ես, գեղեցի՛կ, շատ աննման ես, գեղեցի՛կ,
Թայ չունես աշխարհումս, մէկ նոր նշան ես, գեղեցի՛կ,
Էդ քաջ մտիկ տալովդ իսկ հոգեհան ես, գեղեցի՛կ,
Դու Նարդոս համասփիւռէն ազնուական ես, գեղեցի՛կ,
Դու աղբիւր սառնատեսակ, ջուր բիւրակնեան ես, գեղեցի՛կ,
Դու Եդեմին համեմատ մէկ բուրաստան ես, գեղեցի՛կ։

Իրաւի, ես գովական, ամէն տեսակով գովելի,
Մանգաղդ, մտիկ տալդ բիւր օրինակով գովելի,
Զառնաւուխտ մարգարտաշար յօրինուած թագով գովելի,
Քաղաքավարութիւնով, քաղցր եղանակով գովելի,
Ամէն կերպ քաղցրութիւնով լի ես, հասակով գովելի,
Արշալուսով բաց էլած վարդ պատուական ես գովելի։

Քու թափանցիկ սիրովդ ինձի հալ ու մաշ արեցիր,
Թողալով անմխիթար՝ ուրիշ բարեկամ ճարեցիր,
Իմ էսքան տռչորուելս արդեօք ծիծա՞ղ համարեցիր,
Չէ որ ազնիւ սիրովդ իմ կեանքը գերի վարեցիր,
Անխնայ կրակի պէս խղճալոյս ծածուկ էրեցիր,
Իրաւ արա՛ ինձի, թէ իրաւաբան ես գեղեցիկ։

Սրտատրեկ պէտք է մնայ՝ ով սէրի հետ բան ունենայ,
Մ՚էկ ջանը չի դիմանալ, պէտք է հարիւր ջան ունենայ,
Ոչ կատարեալ խնդութիւն, ո՛չ հանգստարան ունենայ,
Դիտաւմիւնք, համբերութիւնք չի յաղթիլ որքան ունենայ,
Քու արտասուալից գերին մինչ երբ աղերսան ունենայ,
Հանգցրո՛ւ էս կրակը, թէ դարդիման ես գեղեցիկ։

Աշխարհին լոյս է տալիս դէմքդ արեգակի նման,
Բայց վատաբախտ ծառայիս այրում է կրակի նման,
Սիրեկա՛ն, վարդի համար մաշւում եմ սոխակի նման,
Օր ըլնի, որ յանցանս պատմուի առաջի նման,
Քու Ջիրինդ եմ, սիրելի՛, քեզ անհատ փափագի նման,
Ինձ համար կտակ սիրոյ, գիրք պատմութեան ես գեղեցիկ։

## Ը

Հոգի ջա՛ն, նոր բաց էլած վարդ մանուշակ ես ինձ համար,
Ձեմ ուզիլ լոյսն արեւու, դուն արեգակ ես ինձ համար,
Անմահական ջրերով լեցուն բաժակ ես ինձ համար,
Պատուական մարգարիտով յօրինուած թագ ես ինձ համար,
Չինացւոց կողմէն եկած թանգագին ակ ես ինձ համար,
Էլ աւել բաժին չունիմ, այլ դու մենակ ես ինձ համար։

Ձեմ տեսել, չեմ իմացել գեղեցկանման քեզի պէս,
Կարծում եմ՝ դեռ չի ծնել բոլոր Վրաստան քեզի պէս,
Ոչ Հայոց միջումը կայ, ո՛չ էլ Ռուսաստան քեզի պէս,
Մինչ եղեմն էլ չի էլած հոտով բուրաստան քեզի պէս,
Վերջապէս զարմանալի մի օրինակ ես ինձ համար։

Մէկ րոպէ տեսնողդ հարիւր տարի կեանք կունենայ,
Մերձ ի մահ ըլնի ընկած՝ կենդանութեան ջանք կունենայ,
Քեզ տեսնողն իրան ժամանակէն թանգ կունենայ,
Գովացողդ քեզանից մինչ էսքան հրամանք կունենայ,
Որ ասի՝ բախտով կոյր եմ, դուն աշտանակ ես ինձ համար։

[illegible] անձնաւութիւնս մաշեցիր,
[illegible] անձկալիտ անունս մաշեցիր,
[illegible] ու սիւնս մաշեցիր,
[illegible] սիրտ ու արիւնս մաշեցիր,
[illegible] կրակ ես ինձ համար։

[illegible] եմ, ինձ քեզանից եաղ մի՛ անիլ,
[illegible] խնդութիւնը շատ մի՛ անիլ,
[illegible] ինձի յուսահատ մի՛ անիլ,
[illegible] սիրոյ գիրի, քեզանից զատ մի՛ անիլ,
[illegible] կենաց մուրհակ ես ինձ համար։

## Թ.

Հոգի ջա՜ն, քու ցանկալի գեղեցկութիւնդ է գովելի,
Քաղաքավարութիւնդ, խելք ու անունդ է գովելի,
Մանաւանդ ազնիւ ու հանդարտ բնութիւնդ է գովելի,
Դու հարազատ ազգից ես, ընտիր արիւնդ է գովելի։

Գիտում եմ, որ, սիրելի՛, ուրիշի սէր տալ չգիտես,
Զափազանց զարդարուելով՝ տեղէց տեղ ման գալ չգիտես,
Քաղցր ու պարկեշտ հոգի ես, աւել ղալմաղալ չգիտես,
Մէկ ծառ ես եղեմական, բարի արդիւնդ է գովելի։

Քաջ գիտեմ, որ լաւութեանս փոխարէն չար չես անիլ,
Աղաղակս լսելու համար սիրտդ քար չես անիլ,
Քու սէրիդ աղեղովը ինձի նետահար չես անիլ,
Ջուր մի՛ մաշուիլ, օթախս եկ, աստւթիւնդ է գովելի։

Չեմ սխալուիլ, եթէ քեզի գեղեցկութեան արքայ ասեմ,
Նեղութեանս աւետիք, կենդանութեանս ընծայ ասեմ,
Եսթերին համանման ես հիմայ քեզ ներկայ ասեմ,
Մարդաշահ, խաղաղարար խօսակցութիւնդ է գովելի։

Բեզանից քիչ վախում եմ, գէշ հարեաններ շատ ունիս,
Անունդ ստոր քցելու վատաբերաններ շատ ունիս,
Վարք ու բարքդ մի՛ փոխիլ, գուն գովասաններ շատ ունիս,
Ճիրինի մօտ քու կատարեալ կեցութիւնդ է գովելի։

---

## Ժ

[illegible] խաղաղութեամբ, ով իմ հոգի ջան սիրելի,
[illegible] տուր ձեռովդ բաժակ անջատման, սիրելի,
[illegible] եմ էլել նաւ ալեկոծման, սիրելի,
[illegible] ջոկուելը նման է մահուան, սիրելի,
[illegible] լուսաւորքն ինձ խաւար փոխեցան, սիրելի,
[illegible] կամ երեք տարի մեզ լիցի պայման, սիրելի,
[illegible] խախտուենք, միայն սիրով լինենք բաւական, սիրելի,
Մինչև կըկին տեսութեան Տէրն անի արժան, սիրելի։

Խնդրում եմ՝ այսուհետև համարձակ մանգալ չունենաս,
Ամուրին, անձնամուսին երբէք մտիկ տալ չունենաս,
Ղարամանի քաղցրաբանին խորհուրդ տալու հալ չունենաս,
Անփայել բարեկամի տները երթալ չունենաս,
Քու վիճակէն գոհանաս, փափկութեան ցանկալ չունենաս,
Աղքատութեան միջոցին տրտմիլ, նեղանալ չունենաս,
Ինձ լսե՝ չես ունենալ սուտը աստիճան, սիրելի։

Քեզանից բաժանւում եմ, հեռու տեղեր պէտք է գնամ,
սէրդ միտ բերելով՝ յաճախ ինձ քեզ մօտ իմանամ,
Լսելով լաւ անունդ՝ քեզ ինձ տըւողէն գոհանամ,
Բարեսիրտ բարեկամով սիրոյ նամակդ ստանամ,

Էլ ուրիշ սէր չճարեմ, շուտ քեզի դառնալ ջանամ,
Մահէն Աստուած խնայի, մինչ տեսութեանդ արժանանամ,
Փոքր ինչ ապրուստ տայ Տէրը, որ կարօտութիւն չունենամ,
Վայելենք այնուհետեւ վիճակ քաղցրութեան, սիրելի՛։

Անթարշամեայ սէրերով վայելենք վիճակ միասին,
Այս սէրն ունենանք անխախտ ու անքակ միասին,
Սիրով աշխարհին մնանք երկար ժամանակ միասին,
Ոչ ստոր անուն թողունք, ո՛չ թերի փափագ միասին,
Զարակամ ոսոխներին կանգնենք հակառակ միասին,
Աստուածաշունչը համարենք մեզ կենաց մուրհակ միասին,
Հոգի ենք նորոգուելու կազմենք նպատակ միասին,
Ձիրինի խնդիրը էր տիրոջմէն այսքան, սիրելի՛։

## ԺԱ.

Ով չունի մէկ լաւ սիրեկան աշխարհին,
Ասեմ՝ թէ չի մարդ բանական աշխարհին,
Սէրն է մէկ յայտնի նշան աշխարհին
Եւ ունի որքան գովասան աշխարհին,
Թէ չես սիրոյ ծանօթական աշխարհին,
Աշխարհը սէր՝ դու սիրաբան աշխարհին։

Սէրը մարդոյ երկիւղից ազատ կանէ,
Թէ երկմիտ է, մէկ մտի հաստատ կանէ,
Մէկ ժամանակ խնդութիւնը շատ կանէ,
Վստահախօս և մտօք առատ կանէ,
Երբեմն էլ էնպէս յուսահատ կանէ,
Որ չես ունենալ օթևան աշխարհին։

Սէր ունեցողը չի վախենալ սուրից,
Ոչ ոսոխից, ոչ արիւնախում ջուրից,
Ոչ դատողից, ոչ ատողից, ոչ հուրից,
Ոչ անունից, ոչ ամօթից, ոչ զուրից,
Մինչ իրան կեանքը չի խնայիլ թուրից,
Ման կգայ տարուածի նման աշխարհին։

Երբ տեսանի իր սիրոյ սիրեկանը,
Էն օրն ա իր տօնն ու բարեկենդանը,

*Կուզենայ ընտեղ չըլխնայի ջանը,*
*Թէ հրաւիրես աշխարհի մեծութեանը,*
*Նա չի թողուլ էն տեղի խըախճանը,*
*Եւ չի ուզիլ դառնալու խան աշխարհին։*

*Ով որ էլաւ էս սէրի հետ բարեկամ,*
*Նա աշխարեց աշխարհումըս յարաժամ,*
*Եւ չունեցաւ կեանք ու վիճակ քաղցրահամ,*
*Սողոմոնին միտ բերելով՝ զարմանամ,*
*Թէ փառք նորա զիմրդ չեղև անթառամ,*
*Ուրեմն անչափ սէրն է անխնամ,*
*Այլ չափաւորն է գովական աշխարհին։*

*Մէկ փոքր ինչ էլ չափաւոր սէր գովեմ,*
*Համ չափաւոր սէրի անուն համբաւեմ,*
*Համարեա թէ ես էլ եմ ուզում գրաւեմ,*
*Որովհետև ծով աշխարհիս աննաւ եմ,*
*Ես Շիրինս սէր անունին ծարաւ եմ,*
*Ման եմ գալիս աներասան աշխարհին։*

---

## ԺԲ

Սիրահա՛ր, իմ աչքերս մերթ լալագին տեսնելու ես,
Մանաւանդ մորմոքիս խիստ ահագին տեսնելու ես,
Ինձ նման սիրոյ ցաւը, գիտեմ որ մին տեսնելու ես,
Հոգի ջա՛ն, այսուհետեւ ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Մինչի հարիւր խաղ ասի հայ լեզուով սէրի վերայ,
Սէրը երբէք չի նայեց ու չտուաւ ինձի չարայ,
Եթէ մէկ ողորմութիւն անելու ես, շուտով արա՛։
Հոգի ջա՛ն, այսուհետեւ ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Իմ քաշած ցաւերը երբ միտ կբերեմ, կը զարմանամ,
Սաղ օրերիս միջումը չտեսայ սէրն ինձ բարեկամ,
Երկու օր չի ուշանայ, հեռու տեղեր պէտք է գնամ։
Հոգի ջա՛ն, այսուհետեւ ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Ճարադըրեալ նամակս, առ յիշատակ՝ մօտդ պահի՛,
Պարդալով գանգատներս, մի՛ մոռանա ինձ, խնայէ՛,
Վերոյիշեալ տեղերին, իցէ թէ ինձ մահ պատահի։
Հոգի ջա՛ն, այսուհետև ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Ես Ճիրինս քեզէն աւել թէ սիրեկան ունենամ,
Բարի վիճակ չճարեմ, ստոր աստիճան ունենամ,
Ուզում եմ, որ քեզանից մէկ նշանաբան ունենամ։
Հոգի ջա՛ն, այսուհետև ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

---

*Քաջ և անյաղթ սիրովդ կենդանությունս մաշեցիր,*
*Ճատախոս բիւլբիւլ արիր, հանդարտ անունս մաշեցիր,*
*Ցոյսներս վերացրիր, խարիսխ ու սիւնս մաշեցիր,*
*Կարոտով մօտ չի գալով՝ սիրտ ու արիւնս մաշեցիր,*
*Ուրեմն անհանգչելի անգութ կրակ ես ինձ համար։*

*Խնդրում եմ, աղերսում եմ, ինձ քեզանից եադ մի՛ անիլ,*
*Ինձ թողալով՝ ուրիշի խնդութիւնը շատ մի՛ անիլ,*
*Ամեն կերպ նեղութիւնով ինձի յուսահատ մի՛ անիլ,*
*Քու Չիրինն եմ սիրոյ գերի, քեզանից զատ մի՛ անիլ,*
*Թէ լսես աղաչանս՝ կենաց մուրհակ ես ինձ համար։*

---

## Թ.

Հոգի ջա՛ն, քու ցանկալի գեղեցկութիւնդ է գովելի,
Քաղաքավարութիւնդ, խելք ու անունդ է գովելի,
Մանաւանդ ազնիւ ու հանդարտ բնութիւնդ է գովելի,
Դու հարազատ ազգից ես, ընտիր արիւնդ է գովելի։

Գիտում եմ, որ, սիրելի՛, ուրիշի սէր տալ չգիտես,
Զափազանց զարդարուելով՝ տեղէց տեղ ման գալ չգիտես,
Քաղցր ու պարկեշտ հոգի ես, աւել զալմազալ չգիտես,
Մէկ ծառ ես եդեմական, բարի արդիւնդ է գովելի։

Քաջ գիտեմ, որ լաւութեանս փոխարէն չար չես անիլ,
Աղաղակս լսելու համար սիրտդ քար չես անիլ,
Քու սէրիդ աղեղովը ինձի նետահար չես անիլ,
Ջուր մի՛ մաշուիլ, օթախս եկ, ասութիւնդ է գովելի։

Չեմ սխալուիլ, եթէ քեզի գեղեցկութեան արքայ ասեմ,
Նեզութեանս աւետիք, կենդանութեանս ընծայ ասեմ,
Եսթերին համանման ես հիմայ քեզ ներկայ ասեմ,
Մարդաշահ, խաղաղարար խօսակցութիւնդ է գովելի։

Քեզանից քիչ վախում եմ, գէշ հարևաններ շատ ունիս,
Անունդ ստոր քցելու վատաբերաններ շատ ունիս,
Վարք ու բարքդ մի՛ փոխիլ, գուն գովասաններ շատ ունիս,
Ճիրինի մօտ քու կատարեալ կեցութիւնդ է գովելի։

---

## Ժ

Մնացի՛ր խաղաղութեամբ, ո՛վ իմ հոգի ջան սիրելի,
Այսօր ինձ տուր ձեռովդ բաժակ անջատման, սիրելի՛,
Սէրի ծովում եմ էլել նաւ ալեկոծման, սիրելի՛,
Յատկապէս ջոկնուելը նման է մահուան, սիրելի՛,
Երկու լուսաւորքն ինձ խաւար փոխեցան, սիրելի՛,
Երկու կամ երեք տարի մեզ լիցի պայման, սիրելի՛,
Չի խախտուենք, միայն սիրով լինինք բաւական, սիրելի՛,
Մինչի կրկին տեսութեան Տէրն անի արժան, սիրելի՛։

Խնդրում եմ՝ այսուհետև համարձակ մանգալ չո՛ւնենաս,
Անմտին, աննամուսին երբէք մտիկ տալ չո՛ւնենաս,
Խորամանկ քաղցրաբանին խորհուրդ տալու հալ չո՛ւնենաս,
Անվայել բարեկամի տները երթալ չո՛ւնենաս,
Քու վիճակէն գոհանաս, փափկութեան ցանկալ չո՛ւնենաս,
Աղքատութեան միջոցին տրտմիլ, նեղանալ չո՛ւնենաս,
Ինձ լսես՝ չես ունենալ ստոր աստիճան, սիրելի՛։

Քեզանից բաժանւում եմ, հեռու տեղեր պէտք է գնամ,
սէրդ միտ բերելով՝ յատուկ ինձ քեզ մօտ իմանամ,
Լսելով լաւ անունդ՝ քեզ ինձ տրուողէն գոհանամ,
Բարեխիրտ բարեկամով սիրոյ նամակդ ստանամ,

Էլ ուրիշ սէր չճարեմ, շուտ քեզի դառնալ ջանամ,
Մահէն Աստուած խնայի, մինչ տեսութեանդ արժանանամ,
Փոքր ինչ ապրուստ տայ Տէրը, որ կարօտութիւն չունենամ,
Վայելենք այնուհետև վիճակ քաղցրութեան, սիրելի։

Անթարշամեայ սէրերով վայելենք վիճակ միասին,
Այս սէրն ունենանք անխախտ ու անքակ միասին,
Սիրով աշխարհին մնանք երկար ժամանակ միասին,
Ոչ ստոր անուն թողունք, ո՛չ թերի փափագ միասին,
Զարակամ ոսոխներին կանգնենք հակառակ միասին,
Աստուածաշունչը համարենք մեզ կենաց մուրհակ միասին,
Հոգի ենք նորոգուելու կազմենք նպատակ միասին,
Ճիրինի խնդիրը իր տիրոջմէն այսքան, սիրելի։

---

## ԺԱ.

Ով չունի մէկ լաւ սիրեկան աշխարհին,
Ասեմ՝ թէ չի մարդ բանական աշխարհին,
Սէրն է մէկ յայտնի նշան աշխարհին
Եւ ունի որքան գովասան աշխարհին,
Թէ չես սիրոյ ծանօթական աշխարհին,
Աշխարհը սէր՝ դու սիրաբան աշխարհին։

Սէրը մարդոյ երկիւղից ազատ կանէ,
Թէ երկմիտ է, մէկ մտի հաստատ կանէ,
Մէկ ժամանակ խնդութիւնը շատ կանէ,
Վստահախօս և մտօք առատ կանէ,
Երբեմն էլ էնպէս յուսահատ կանէ,
Որ չես ուննենալ օթևան աշխարհին։

Սէր ուննողը չի վախենալ սուրից,
Ոչ ոսոխից, ոչ արիւնախուռն ջուրից,
Ոչ դատողից, ոչ ատողից, ոչ հուրից,
Ոչ անունից, ոչ ամօթից, ոչ գուրից,
Մինչ իրան կեանքը չի խնայիլ թուրից,
Ման կգայ տարուածի նման աշխարհին։

Երբ տեսանի իր սիրոյ սիրեկանը,
Էն օրն ա իր տօնն ու բարեկենդանը,

*Կուզենայ ընտեղ չըլխնայի ջանը,*
*Թէ հրաւիրես աշխարհի մեծութեանը,*
*Նա չի թողուլ էն տեղի խըախճանը,*
*Եւ չի ուզիլ դառնալու խան աշխարհին։*

*Ով որ էլաւ էս սէրի հետ բարեկամ,*
*Նա աշխարեց աշխարհումըս յարաժամ,*
*Եւ չունեցաւ կեանք ու վիճակ քաղցրահամ,*
*Սողոմոնին միտ բերելով՝ զարմանամ,*
*Թէ փառք նորա գիմըրդ չեղև անթառամ,*
*Ուրեմն անչափ սէրն է անխնամ,*
*Այլ չափաւորն է գովական աշխարհին։*

*Մէկ փոքը ինչ էլ չափաւոր սէր գովեմ,*
*Համ չափաւոր սէրի անուն համբաւեմ,*
*Համարեա թէ ես էլ եմ ուզում գրաւեմ,*
*Որովհետև ծով աշխարհիս անմաւ եմ,*
*Ես Ձիրինս սէր անունին ծարաւ եմ,*
*Ման եմ գալիս աներասան աշխարհին։*

---

## ԺԲ

Սիրահա՛ր, իմ աչքերս մերթ լալագին տեսնելու ես,
Մանաւանդ մորմոքիս խիստ ահագին տեսնելու ես,
Ինձ նման սիրոյ ցաւը, գիտեմ որ մին տեսնելու ես,
Հոգի ջա՛ն, այսուհետեւ ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Մինչի հարիւր խաղ ասի հայ լեզուով սէրի վերայ,
Սէրը երբէք չի նայեց ու չտուաւ ինձի չարայ,
Եթէ մէկ ողորմութիւն անելու ես, շուտով արա՛։
Հոգի ջա՛ն, այսուհետեւ ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Իմ քաշած ցաւերը երբ միտ կբերեմ, կը զարմանամ,
Սաղ օրերիս միջումը չտեսայ սէրն ինձ բարեկամ,
Երկու օր չի ուշանալ, հեռու տեղեր պէտք է գնամ։
Հոգի ջա՛ն, այսուհետեւ ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ ահեղ ատենին տեսնելու ես։

Ճարադրեալ նամակս, առ յիշատակ՝ մօտդ պահէ,
Կարդալով գանգատներս, մի՛ մոռանա ինձ, խնայէ՛,
Վերոյիշեալ տողերին, իցէ թէ ինձ մահ պատահի։
Հոգի ջա՛ն, այսուհետև ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ անեղ ատենին տեսնելու ես։

Ես Զիրինս քեզէն աւել թէ սիրեկան ունենամ,
Բարի վիճակ չճարեմ, ստոր աստիճան ունենամ,
Ուզում եմ, որ քեզանից մէկ նշանաբան ունենամ։
Հոգի ջա՛ն, այսուհետև ինձ դժուարին տեսնելու ես,
Բայց մէկ ըստեղ, մէկ էլ անեղ ատենին տեսնելու ես։

———

## ԺԳ

*Սիրելի՛ք, անկաշ արէք, մէկ փոքր ինչ բան եմ ասում,*
*Ում երեսն տեսնում եմ, նրան սիրեկան եմ ասում,*
*Վա՜յ իմ անմիտ խելացս, ամեն հոգւոյ ջան եմ ասում,*
*Սրածի, դեղ քսածի գեղին բնական եմ ասում,*
*Իսկ բնական գեղեցիկներին անպիտան եմ ասում,*
*Առում եմ վարդանոցը, փշին գիւլուստան եմ ասում,*
*Սխալս չի տեսնելով՝ ես ինձ գովական եմ ասում,*
*Ուրիշի աչքի ծեղին մինչ ահա գերան եմ ասում,*
*Երբեմն սրանց համար ես ինձի անբան եմ ասում։*

*Կերուխում, քէֆ անիլը, փառք անունը շատ եմ ուզում,*
*Չարակամիս սիրում եմ, լաւ ուզողիս վատ եմ ուզում,*
*Հոգևոր և ճշմարիտ սէրն ինձէն զատ եմ ուզում,*
*Սնոտի սէրի վերայ կանգնիլը հաստատ եմ ուզում,*
*Հարստանեաց, խրախճանաց սիրտս համեմատ եմ ուզում,*
*Ինձնից աւել խօսողն մուրացկան աղքատ եմ ուզում,*
*Այպանել, խայտառակել ես անել զանգատ եմ ուզում,*
*Փափկութիւն, յաջողութիւն, ամենն ինձ մօտ եմ ուզում,*
*Բաղդի գեղեցկութիւնքը միշտ դիբա ինձ զան եմ ասում։*

Ասում եմ՝ հէչ մի բանով սրտումս փափագ չի թողամ,
Բոլորն ինձ մօտ ժողովեմ, էլ թանգագին ակ չի թողամ,
Քանի որ ամառն ա, բաղչիս դուռը փակ չի՛ թողամ,
Աշխարհի սիրահարի սէրը բովանդակ չի թողամ,
Չարին չար հատուցանեմ, նորոյս նպատակ չի թողամ,
Բարբառեմ, հրամայեմ, ոչ մի գործ անքակ չի թողամ,
Աստ ճառագայթ ունենամ, ընտեղ աշտանակ չի թողամ,
Ոչ դժոխք, ոչ երկրորդ մահ և ոչ դատաստան եմ ասում։

Ես կամօքս եմ կուրանում, ի՛նչ ասեմ արդեօք սատանին,
Մի՛թէ չեմ ես նմանող այն Տեառն ասած արձանին,
Ասա՛ ինձ, հուրն ու ջուրը պէտք է ի՛նչպէս միաբանին,
Սոքա վասն էր մահացան, գիրն ասէ անմահական են,
Ուրեմն պարտ է ասել, չեն հնազանդ պատուիրանին,
Միայն Աստուած խնայի վասն իրան մարդացեալ Բանին,
Մեք նախահօր մահումն եղաք նմանող Քանանին,
Էլի Տէրը այց արաւ իւրոյ պատկեր տիրականին,
Պարտագերծ չեմ, ուրեմն ես ինձ պարտապան եմ ասում։

Դու գիտես, ո՛վ Արարիչ, որովհետև ճարս դու ես,
Քանի մեղօք մահանամ, էլի կենարարս դու ես,
Դանդաղ իմ, կամ անկանիմ, կանգնելոյ հնարս դու ես,
Մի՛ դատիլ արդարութեամբ, խնամող բարերարս դու ես,
Սուրբ ձեռօքդ եմ արարած, նաև փրկարարս դու ես,
Իմ ծածուկ սենեակումս իմ Սինայի սարս դու ես,
Լսելով չարչարանդ՝ ասեմ՝ սիրահարս դու ես,
Ես չունիմ զէն ոսոխին յաղթել, ասպարս դու ես,
Ես տառապեալ Ճիրինն եմ, էս խօսքս Երևան եմ ասում։

---

## ԺԴ

Փոքր ինչ ինձի նիրէ, զանգատս սկսեմ, սիրելի՛,
Չես ողորմում, դո՛ւ գիտես, գոնէ թող ասեմ, սիրելի՛,
Մինչև երբ միմեանց վերայ ցաւերս դասեմ, սիրելի՛,
Յայտնաբանեմ՝ իցէ թէ, մէկէն ճար լսեմ, սիրելի՛,
Ասա՛ ինձ, ի՛նչ կամ ընչո՞վ քեզ մօտ պակաս եմ, սիրելի՛,
Քու առատ քաղցրութիւնէդ չէ՞ որ անմաս եմ, սիրելի՛։

Ո՞րն ասեմ, իմ աչքի լի՛ս, արդեօք քու ո՞ր լաւն ասեմ,
Մաշուելս, տոչորուելս, կամ անձիս ո՞ր ցաւն ասեմ,
Քեզանով ինձ ունեցած ո՞ր բարի համբաւն ասեմ,
Եթէ ո՛չ սուգն ու վայը, կամ սրտիս շարաւն ասեմ,
Առօրեայ բախտի ձեռքէն իմ օրերիս սեաւըն ասեմ,
Սիրոյ քարով քարահար եղած կարաս եմ, սիրելի՛։

Չես ողորմում, անիրա՛ւ, իմ դեռահաս մանկութեանս,
Սէրի ձեռքէն չէ ազատ օրս ու ժամս՝ մինչ վայրկեանս,
Յաղթուեցաւ սիրոյդ ահա քաջամարտիկ ախոյեանս,
Արի պատճառ մի՛ լինիլ և մի՛ կամակից արեանս,
Չե՛ս լսում աղաղակս, չե՛ս իմանում աղերսանս,
Դու քեզէն տո՛ւր իրաւունք, մինչև երբ սպասեմ, սիրելի՛։

*Քեզանով ինչ չի տեսայ, արևն, անհեղ սուր չի տեսայ,*
*Վատ անուններ չունեցայ, կամ վրիպակ լուր չի տեսայ,*
*Նախատինք, արգելարանք, երկաթէ անուր չի տեսայ,*
*Կամ անգութ և անխնայ այրող կեզող հուր չի տեսայ,*
*Տեսայ ես էս ամէնը, բայց խրատ էր, զուր չի տեսայ,*
*Մի թողուր այսուհետև ես ինձ մնասեմ, սիրելի։*

*Արի, փոքր ինչ գթա ինձ, ինչ էլ արեցիր՝ մի անիլ,*
*Տեսցրու ինձ երեսդ, կարօտահար մի սպանիլ,*
*Բարկութեամբ մտիկ տալով՝ հոգիս ինձմէն դուրս մի հանիլ,*
*Քաջ գիտեմ՝ սէր քաշողը դիւրաւ սլրէն չի գերծանիլ,*
*Բայց կյուսամ այսուհետև առատ սիրով խնամ տանիլ,*
*Ո՛վ ունիս անուշահամ, Ջիրինդ ես եմ, սիրելի։*



*(Ի վերայ դշի եւ մորեխի)*

Դաստով կըգան սուրբ Յակոբայ դշերը,
Էս հետին՝ ողորմացել ա մեր Տէրը,
Ողորմած ա մեր Տէրն ամեն ժամանակ,
Էս պատիժը մեզ տուել ա նշանակ,
Աստուածային ողորմութիւնն անքանակ,
Կանանչ խոտի հասրաթ էին չօլերը։

Դաստով կըգան, խիստ սիրուն մանգալ ունին,
Նշան ասեմ՝ մէջքներին չալ ունին,
Գեղեցիկ են, ամեն տեղ էլ խալ ունին,
Խօմ մենակ չեն, սուլթան ու սարդար ունին,
Սուրբ Յակոբ Հայրապետն ա նրանց տէրը։

Մորեխի վրայ ցրուեց իրան դշին,
Նիզամով են կռւում, ունին ուզբաշին,
Էկէք, մտիկ տուէք մորեխի լէշին,
Ինչպէս Ռուսն յաղթեց Ղզլբաշին,
Օսմանլուի Խոնթքեարին, քըրդի բաշին,
Թագաւորաց յաղթող ա սրանց Տէրը։

Մորեխները մեզ հետ դսաս են արել,
Աշխարհս ցրուելը հաւաս են արել,
Վեասխալները [1]) ցորենը պաս են արել,
Գարին, կորեկն՝ էն էլ պակաս են արել,
Էս տեսնելով՝ մեզ ողորմաց մեր Տէրը։

Փուշ խաննն տեսէք, ինչպէս չար արին,
Կայքատէրերն իրանց գլխին ճար արին,
Հարուստներն ցորենն ամբար արին,
Աստուած տուեց, մէկին մէկ զարար արին,
Ողջ գոհացան աշխարհիս անճարները։

Աստուած պահի դշի ձագերն ու մէրը,
Որ ջնջեց մեր Թշնամու քօքն ու ծէրը,
Մեզ ողորմաց անմահ արարիչ Տէրը,
Ձատ էր կացել՝ կուրանար որդին հէրը,
Դէպ առ Աստուած քցեցէք ձեր սէրը։

Կուսելիս տեսայ, մայիլ էլայ սասին,
Առ Աստուած աղաչում եմ բարի լուսին,
Ուհանէսը մատաղ սրանց հաւէսին,
Դու ողորմաս, ով սուրբ անարատ կուսին,
Աշխարհիս տաս յոյս ու հաւատ ու սէրդ։



[1]) Լաւ չէ որոշւում, գուցէ լինի վաչխառուները։

# Ա.

*(Ի վերայ իւրաքանչիւր հայկազեան տառի)*

*Այբ՝ արի, բեն՝ բարեկամ, գիմ՝ գնանք մեր բաղն, գեօզա՛լ,*
*Դա՝ դաստա անենք, եչ՝ եասաման, էգ ա մեր նովբաղն, գեօզա՛լ,*
*Զա՝ զականի նա տանը, [1]) չի բաշարի քաղն, գեօզա՛լ,*
*Է՝ էնդուր համար վարդի վրայ կուգայ շաղն, գեօզա՛լ,*
*Ըթ՝ ընդէ կուրախանայ, կու պայծառի թաղն, գեօզա՛լ,*
*Թօ՝ թազա բիւլբիւլները կասեն ձայնով տաղն, գեօզա՛լ։*

*Ժէ՝ ժամանակդ հասաւ, պէտք ա քեզ մի եար ունենաս,*
*Ինի՝ ինձ եաղ չես անիլ, թէ որ լաւ իրղար ունենաս,*
*Լիւն՝ լաւ կուլի, նազանի՛, հագիդ զարբար զառ ունենաս,*
*Խէ՝ խօսքերդ ջաւահիր, հետը անգին քար ունենաս,*
*Ծա՝ ծոցումդ, եա՛ր, դուն մի ջուխտ թազա նուբար ունենաս,*
*Մուշտարի եմ, որ առնեմ, չի դրկես էն թաղն, գեօզա՛լ։*

*Կեն՝ կուզեմ, հօ՝ հաւատար, ո՛ր ըլես ինձ, խա՛ն սիրելի,*
*Ձա՝ ձեռովդ մէկ ջուր տո՛ւր, շատ ծարաւ եմ, ջա՛ն սիրելի,*
*Ղատ՝ ղաստ մի՛ անի ջանիս, թող դօստերս գան, սիրելի՛,*
*Ճէ՝ ճամփէն սպասում եմ՝ գան մի խաբար տան, սիրելի՛,*
*Մեն՝ մահս քեզանից է, էյ հուրի ղլման, սիրելի՛,*
*Ճար ու իլլաճս դու ես, էս է խօսքիս սաղն, գեօզա՛լ։*

---

[1]) Չի հասկացւում։

*Ցի՝ յեախչքդ զարնշան, Նու՝ Նրա հետ ալ ա սազում,*
*Ճա՝ շուրջ գաս, ո՝ ոտներիդ խիստ լաւ սորոր տալ ա սազում,*
*Չա՝ չաղրաթդ Հնդու ա, հետը Քիրման շալ ա սազում,*
*Պէ՝ պռօշներդ զուլալ, եա՛ր, երեսիդ խալ ա սազում,*
*Ջէ՝ ջահէլ եմ, ինձ էլ ձեր տունը ղոնաղ գալ ա սազում,*
*Ռա՝ ռահմ արա՛, նազանի՛, գնանք ձեր օթաղն, գեօզա՛լ։*

*Սէ՝ սիրոյդ վև՝ վառեալ եմ, տիւն՝ տարակուսեալ մնացի,*
*Րէ՝ րադ չի լում ցաւս, ւիւն՝ ւիւծեալ արտասուօք լացի,*
*Փիւր՝ փափագ իմ տեսլեանդ, շանց տո՛ւ լոյս երեսդ, բացե՛,*
*Քէ՝ քիչ նեղութիւն տո՛ւ ինձ, աւանդե՛ հոգիս, ստացե՛,*
*Կու փոշմանես վերջը, աղաչանս լաւ հասկացե՛,*
*Քեանհանի խաղն, գեօզա՛լ, չի մոռանաս վաղն, գեօզա՛լ։*

---

## Բ [1]

*Այս մարախի կսկիծն դառն էր քան զամէն բանը,*
*Մոռացանք խօլեր ցաւը, երբ եմուտ Հայաստանը,*
*Էանց ի Պարսըստանէն Նախիջևան սահմանը,*
*Եկեր աշխարհս ամենայն մինչև ի Ձիրակուանը։*

*Այրեաց դաշտըն Արարատեան այսինքն այրեալ կրակով,*
*Մարախն եղև անհամար իբր անդնդային ծով,*
*Եկեր 'ի բոյսն ամենայն, մինչի աշխարհս էարկ սով,*
*Վերջ ամենն եթող այրի, դրախտագոյն այգեստանը։*

*Ու՞ր է գոյնդ, Հայաստա՛ն, հոտ ունէիր անթառան,*
*Եկեր բոյսդ ջորեակն, չեթող 'ի քեզ նշմարան,*
*Սիրելի որդիքն քո փախեան և ի քէն դառան,*
*Անցին ի հողն Օսմանեան՝ արևմտեան կողմանը։*

*Չէր եղեալ այսպէս սասում, որ եղև մեր մեղացը,*
*Ո՛չ պատարագ է օգտում, ո՛չ արտասունք, ո՛չ լացը,*
*Պէտք է յոյսներս ձգենք աստուածային կամացը,*
*Բալքի մէկ ողորմութիւն անի Թորգոմեան տանը։*

---

1) *Ինչպէս երևում է սկսուածքը չէ։*

Ո՛վ բարեպաշտ քրիստոնեայք, աղերսանօք ողբացէք,
Անյաղթ ջերմեռանդ սրտիւ արտասուեցէք և լացէք,
Աղաչեցէք առ Աստուած, համաձայն բերան բացէք,
Միջնորդ՝ սուրբ Աստուածածինն և դաս հրեշտակականը։

Հազար ութն հարիւր քառասուն և եօթն ամեան տարը [1]),
Եբեր տարաբախտութիւն, շարժեաց աշխարհիս չարը,
Մարախն եկեր բոյսն ամենայն, մերկ եթող հող ու քարը,
Եւ համբաւս այս մինչև ի արքունեան ապարանը։

Նախկին պիտանի աշխարհ, այժմ անպիտանացար,
Բարեբոյս մի աշխարհ 'իր, զիա՞րդ զանազանացար,
Դրախտ էիր, մեր մեղացը դժոխք դառար, խոպանացար,
Մեղաւոր ենք մէջ դժոխոց, պէտք է կրենք մեր տանջանը։

Այժմ եղեր ողբալի, ո՛ւր է ուրախութիւնդ,
Ողբամք աշխարհ, մեք ընդ քեզ, անչափ է դառնութիւնդ,
Կու լինես մայր ցանկալի, երբ գայ այցելութիւնդ,
Ապաւինեմ սուրբ սրտիւ բազմահաչակ սուրբ Նշանը։

Զտեսայ ուրախութիւն, մանուկ էի, զարմացայ,
Աստուածային սուրբ շնորհէն փոքր ի շատէ ստացայ,
Պարտ էր մեծազոյն երգել քան զայս՝ չկարողացայ,
Սահմանեաց փոքր ինչ բանս այս մեղապարտ Քեանհանը։

---

[1]) Ուզում է ասել տարին։

## Գ.

*(Ի վերայ Աշտարակ գիւղի [1])*

Անունդ մհալ-բաշի, գովելի ես, խան Աշտարակ,
Ունես դրախտի նման պայծառ գիւլլիշան, Աշտարակ,
Արեւելից արեւմուտ ուզում են, որ գան Աշտարակ,
Հաստատ ըլեն միջումդ՝ դադումի ման Աշտարակ,
Ուտել, խմել, քէֆ անել, էլ չունես փատ բան, Աշտարակ,
Անունդ շատ տեղ կ՚յիշուի, դու ես մի նշան, Աշտարակ,

Մեռելներից ողորմի, դարձեալ միջի սաղդ գովեմ,
Բացուել ա սուսան սմբուլ, քո բաղչայ ու բաղդ գովեմ,
Ունես լաւ սէհրի տեղեր, Ալագեազ եայլաղդ գովեմ,
Ամառ վախտը կու դնես առաւօտեան շաղդ գովեմ,
Ամէն երկրներում սեւմ սաղով խաղդ գովեմ,
Գովքդ քաղաքն [2]) անցկացաւ, հասաւ Դաղստան, Աշտարակ։

Աշտարակ, Թարիֆաթդ Խօյ ու Սալմաստ, Վան ա հասել,
Հէրաթ ու Թարվէզ, Թէհրան, համ Արաղստան ա հասել,
Չինմաչին շհարը, Հինդինան Եաման ա հասել,
Ձիրազ ու Բիթլիզ, Քիրման, մինչի Սպահան ա հասել,
Հարաշի տէրութիւնը, համ Արաբստան ա հասել,
Քո հասրաթդ քաշում ա ամենայն խան, Աշտարակ։

---

[1]) Բեանհանը ընիկ Մողնեցի է՝ Աշտարակի մօտից. ծնել է Թիֆլիսում 20-ական թուականներին անցեալ դարում։ Այնտեղից վերադարձել է Աշտարակ գիւղը, ուր և թաղուած է։
[2]) Ուզում է ասել Թիֆլիս։

*Թարիֆդ Հալաբ, Մսըր, համ սաղ Ալօսմանն ա գիտում,*
*Ֆրանգսզն ու Ինգլիզը, համ Հռոմստան ա գիտում,*
*Գետրէպօլ, Մոզդոկ, Ղզլար, մինչի Հաշտարխան ա գիտում,*
*Օխտը Նալբուզ Դաղստան, համ Ճաքի Ճիրվան ա գիտում,*
*Գեանջա, Ճամախի, Նուխի, համ Հաղրբէջան ա գիտում,*
*Ճարուր, Բայազիտ, Մաքի, կաժես Համադան, Աշտարա՛կ։*

*Վերևդ Մողնի կըյիշլի, ներքին կողմդ Ուշական ա,*
*Միջիդ կենող մարդիկը որը սուլթան, որը խան ա,*
*Գեղեցիկ գեօզալներդ, ասում են՝ հուրի ղլման ա,*
*Անունդ ջոկ ա յիշւում, ամա հողդ Երևան ա,*
*Չեմ գիտում՞ ինչպէս անեմ, մնացել եմ եանա-եանա,*
*Բարսեղ օղլի Քեանհանին չի զըկես, ամա՛ն Աշտարա՛կ։*

## Դ

Աշխարհումս սազութիւն գովքի մուղարար եմ ուզում,
Ճէյրա բիւլբիւլի նման բաղի ուռուզգեար եմ ուզում,
Ուռուզգեարը վարդի համար, վարդը հովահար եմ ուզում,
Վարդի տեղը հովահար, մուղարար բհար եմ ուզում,
Բհար գիւլշանի միջին մէկ շահի դուխտար եմ ուզում,
Սըռ տայ, սուլաշմիշ ըլի, ունենայ իրղար եմ ուզում։

Սըռ տայ սիրեկանի հետ, սիրտը դուզ իրղարով ման գայ,
Դաստա կապած՝ մուղարար Թայութուշ հազարով ման գայ,
Գօտիկը ալ մուղաղամ, հաքին զարբաբ զառով ման գայ,
Չորեքկողմն ղարաւաշ, առաջին նօքարով ման գայ,
Ունենայ իշխանութիւն միշտ շարխաթ շարով ման գայ,
Թագաւորի աշխարհիս, մհուբը խոնթքեար եմ ուզում։

Ահ քաշի Ստեղծողիցը, Աստուածանից ահ ունենայ,
Սրտովն զութ ողորմած, ամալն սալահ ունենայ,
Խալերն աստեղ, երեսն պայծառ ղըլագեահ ունենայ,
Չեռ բռնի եարի հետը մանգայ, թամալլահ ունենայ,
Խօսացնելուս՝ քաղցր լեզուն մարդաշահ ունենայ,
Խօսքերն լալ, ջաւահիր, հետը անգին քար եմ ուզում։

Ունքերը ղալամ քաշած՝ աչքերը հոքմաթ է, տեսէք,
Հողածին խան չիլի ,էս հուրի բաբաթ է, տեսէք,

*Մինա բօյը սուրէյի սալվի ի ղամաթ է, տեսէք,*
*Նազլի նազանու նման էս ինչ նազաքեաթ է, տեսէք,*
*Անուշահոտ, քաղցրահամ բերանը նաբաթ է, տեսէք,*
*Քաղցրութիւնը մեղրի նման, պռօշները շաքար եմ ուզում։*

*Երեսն լուսաշաւիղ շամշի ղամար անուանի,*
*Խալերն զօհրա գհալ, ունքերն կամար անուանի,*
*Ակռքները մարգարիտ, բերանը տաճար անուանի,*
*Եղանակը բիւլբիւլի, լեզուն քաղցրաբար անուանի,*
*Գեղեցկութիւնն Յովսեփայ պէս աշխարհէ աշխարհ անուանի,*
*Սէր անի Քեանհանի հետ, սրտով սիրահար եմ ուզում։*

— —

## Ե

Անէք տեսնեմ՝ իմ բաղդիցը գանգատ ո՛ւմ մօտ գնամ,
Գանգատաւոր եմ իղբալիցս, դատ ո՛ւմ մօտ գնամ,
Արաւ օրս ի մանկութենէ վատ, ո՛ւմ մօտ գնամ,
Անթիւ է ցաւս, էյ խանի բարբաթ, ո՛ւմ մօտ գնամ,
Չեմ գիտում՝ ինձ ո՛վ կազատէ, իմդատ ո՛ւմ մօտ գնամ։

Հնար չկայ շինութիւնի, աւերս շատացաւ,
Մինչև հիմա հէնց գիտէի, թէ խէրս շատացաւ,
Վերջ ուրախութիւն, տրտմութեան հետ սէրս շատացաւ,
Լէյլայի Մաջլունի նման դարտերս շատացաւ,
Շիրինի խաթեր դառել եմ Փահրատ, ո՛ւմ մօտ գնամ։

Էսքան նեղութիւն ով քաշի, կու դառնայ սարսարի,
Դիփ ինձ պէս ըլնեն՝ աշխարհս չի կաղնիլ քար քարի,
Խղճմ խղճմլոյս, ողորմեմ ինձ նման անճարի,
Տարակուսած եմ միշտ և մուղարար, ամէն տարի,
Չի տեսայ մէկ օր՝ սիրտս ըլի շատ, ո՛ւմ մօտ գնամ։

Ում ջան եմ ասում, փոխանակ ջանիս՝ վատ են ասում,
Լաւութիւններս շուռ են տալի, գանգատ են ասում,
Ո՛չ թէ մէկ անգամ, միշտ մուղարար անհատ են ասում,
Բարեկամներս հեռացել են, ինձ եաղ են ասում,
Առանց բարեկամ մնացել եմ եա՛ղ, ո՛ւմ մօտ գնամ։

Ափսո՜ս, ամենայն մարդոյ համար կեանքս մաշեցի,
Ով հոգիս ուզում էր, ընծայումի, չի խնայեցի,
Պարկեշտութիւնով ամենեցուն խաթրը շահեցի,
Քեանհանին եմ, բէքախտութեանս եա վատ պատահեցի,
Վատ ժամանակ ինձ թողիր, բէմուրվա՛թ, ո՛ւմ մօտ գնամ։

## Ջ

### ՂԱՓԻՍ ՂԱՐԱՀԷՃԱ

Արարիչ Աստուածդ կը սիրես, դիլբա՛ր,
Ինձ խայան մի՛ տնտղի քէ այբ ու մեն,
Քեամ մի՛ մտիկ անի, կը քանդես սիրտս,
Կշտիս ստհբաթ արա՛, դա այբ ու մեն [1]։

Դամ արա՛, եա՛ր, կշտիս խօսքերդ խալիս,
Էշխիցդ հիւանդ եմ, չես համնում հալիս,
Ամէն առաւօտ սէհրը գնալիս,
Ուզում եմ, որ հետդ գիմ այբ ու մեն։

Գամ հետդ ձեր բաղը, ման գանք միասին,
Բիւլբիւլը խօսում ա, ականջ դի՛ր սասին,
Միշտ ղաղումի կու գայ վարդի հաւասին,
Կուզենայ, որ բերի կեն այբ ու մեն։

Կամ կու բերի վարդըն, կառնի մուրազը,
Փարվազլանմիշ կուլի, շատ կու գայ հազը,
Քեանհանին ասում ա՝ մի՛ անի նազը,
Ուզում ես՝ հոգիս քեզ տիւն այբ ու մեն։

---

[1]) Տնավերջերը գիր կապելով՝ լինում են քամ (քեամ), դամ, տամ, կամ, տամ։

## Է

Բովանդակ աշխարհումս քեզ նման մէկ եար չի կայ,
Արևելից արևմուտ բոյիդ բարեբար չի կայ,
Եա՛ր, արիւնս քաշել ես, էլ լիքը դամար չի կայ,
Սիրտս կրակ ես քցել, հէնց գիտում ես վառ չի կայ,
Էս ինչպէս ժամանակ ա, դրուստ էհտիբար չի կայ,
Էնքան դարդեր եմ քաշել, հեսաբ ու համար չի կայ։

Էշխիդ տօլուն խմեցի, քէֆ տրւուց արաղի պէս,
Ընդուր համար դժուել եմ, խօսում եմ սարսաղի պէս,
Երեսդ լոյս է տալիս, աջար շամ չրաղի պէս,
Սիպտակ դօշդ նմանի սաւալան եայլաղի պէս,
Ծոցդ անմահական ա, եա՛ր, դրախտի բաղի պէս,
Բերանդ լուսեղէն ա, ըտէնց մի տաճար չի կայ։

Քեզ նման մի գեղեցիկ չկայ Գիւրջուստանումը,
Աշխարհիս չորեք կողմը պատել ա քու անումը.
Եա՛ր, պատկերդ քաշել են Ղզլար, Հաշտարխանումը,
Անունդ ազբար արած՝ կասեն Դաղստանումը,
Լեզուս հետդ չի խօսաց, դարդ մնաց եմ ջանումը,
Ինձ էնպէս դարդ ես տուել, էլ յաւիտեան ճար չի կայ։

Ինձնից ձեռն ա վե կալել, մտիկ տուէք էս ջանանին,
Պատասխանատու լինի մեծ ահեղ դատաստանին,
Սըռ չի տաք, չի հաւատաք, էս բէբաֆա խանին,
Խաբելով ման են գալի, տեսէք աշխարհիս բանին,
Մուրվաթ արա՛, բէխսա՛ֆ, Բարսեղ օղլի Քեանհանին,
Արի, եա՛ր, մուրվաթ արա՛, ինձ նման անճար չկայ։

## Ը

Էդքան վաստութիւն չի՛ լի, անում ես, փարազայ, ինձ,
Թարգ արա վաստութիւնդ, մի՛ տալ ջուր ու դազա ինձ,
Մէկանց բարեկամանանք, տո՛ւր իրդարդ թազա ինձ,
Դուշմաններուն չի լսես, կու մատնեն դարազայ ինձ,
Անբախտ մարդկանց խօսքով չանես գիւլ գեաւազա ինձ։

Բոլորած լուսնի նման պատկերդ շամշ ու ղամար,
Չորս կողմն աշխարհիս վրայ կապել ա լուսեղէն կամար,
Քաշում եմ ինթիզարդ, ամէն ձմեռ ու ամառ,
Ի՞նչ կանեմ զօվղ ու սաֆէն, դուն սաղ ըլես ինձ համար,
Բիւլբիւլի եղանակդ սանթուր ու թառ, սազ ա ինձ։

Դու ես ումրրիս ճրագը, առանց քեզ խաւար եմ ես,
Քեզ նման մէկ բաֆադար մէկ էլ ո՞րտեղ ճարեմ ես,
Դարդերս հազար էլաւ, ո՞ր մէկին համբերեմ ես,
Միշտ ղադումի ամէն օր առաջիդ նօքար եմ ես,
Բարկութիւնով խօսալդ հէնց գիտում եմ՝ նազ ա ինձ։

Աղալաթ թագաւոր ես, սուլթան ու խանս դու ես,
Դրուստ կտրի՛ շարիաթս, հախ դատաստանս դու ես,
Էլ ուրիշ խիալ չանես, դի՛ն ու իմանս դու ես,
Հոտ ունես դրախտական, գիւլ գիւլուստանս դու ես,
Դաստայ թայիգիւլ ձեռիդ՝ մէկնի՛, տո՛ւր թաւազա ինձ։

*Ուշ ու միտքս ամէն օր դու ես,էլ խօ՛ բան չունեմ,*
*Աշխարհումս քեզ աւել էլ մի սիրեկան չունեմ,*
*Սիրոյդ հիւանդացել եմ, դարդիս մէկ դարման չունեմ,*
*Աղաչում եմ մուննաթով, վրէդ հրաման չունեմ,*
*Եադ մի՛ անի Քեանհանին, սիրի՛ քո աւագա ինձ։*

---

## Թ.

*(Գովասանութիւն առ սուրբ Էջմիածին)*

Էջմիածին է Սիօն Տաճարն մեր,
Միաբանեալ անդ է ուղղափառն մեր,
Արմատ պինդ հայրապետական ծառն մեր,
Հաւատ լուսաւորչական է փառն մեր։

Վաղարշապատ էր Տրդատի օրօքն,
Միշտ պահպանէր հսկայազօր զօրօքն,
Անդ Էջմիածին լուսափայլ շնորհօքն,
Տեսլեամբ տեսեալ սուրբն Գրիգոր հայրն մեր։

Պինդ պահէր քրիստոնէական դաւանը,
Զեռնադրուեց, ձեռն առաւ գաւազանը,
Լուսաւորեաց աշխարհ մեծ Հայաստանը,
Նա յայնմանէ հայածեց խաւարն մեր։

Յայնժամ հիմն արկին սուրբ Աթոռը,
Պատճառ եղաւ սուրբ Գրիգոր լուսաւորը,
Անպատմելի է, բայց ձեզ պատմեմ որը,
Շնորհօք սուրբ Հոգւոյն գեղեցկաշարն մեր։

Անուանեցին Աթոռ լուսաւորչական,
Անդ ժողովեաց սուրբն բազում միաբան,
Զարդարեցին եկեղեցիս դանազան,
Պայծառացաւ Հայաստան աշխարհն մեր։

Փութանակի հրաման եւ Վեհիցը,
Քննեցին այր առաջ՝ վերջ քէիցը,
Թարգմանեցին գիրք սուրբ մարգարէիցը,
Ոչ ոք կարէ լինել հակաճառն մեր։

Անդ է սուրբ կուսանաց վկայարանը,
Հռիփսիմէն, Շողակաթ, Գայարանը,
Նոցա ընկալան պսակ անթառամը,
Եղեն լուսաւորութեան պատճառն մեր։

Տամներկու անուանի վիմաքար են,
Հսկայն Տրդատ երեր Մասիսայ սարէն,
Աղաւնակերպ լոյս կու փայլի Տաճարէն,
Առ Քրիստոս է ուղիղ ճանապարհն մեր։

Երկնից իջեալ սրբազնաց սաղաւարդը,
Անօթ ընչից անպատմելի է զարդը,
Պարգեւատու արեան-թաթախ Գեղարդը,
Միշտ կու պահէ անշարժ հիմնաքարն մեր։

Շինուածք Աթոռոյն ամէն ոսկէզօծ են,
Նետիւ թերահաւատներուն կու խոցեն,
Եօթն ամաց մէկ անգամ մեռոն կու օծեն,
Նովաւ կու մաքրի մեղաց նշխարն մեր։

Սուրբ հաւատս սրբութեամբ հաստատեցէք,
Հա՛րք իմաստունք, յիմարաց խրատեցէք,
Համաձայնեալ՝ առ Քրիստոս պաղատեցէք,
Անխախտ մնա՛յ Հայկազեան տոմարն մեր։

*Մեք հօտ կոչեալք հովուապետ սրբազանը,*
*Որդիքն Հայկայ և ազգն Ցաբէթեանը,*
*Նախնական սահման սեղանատանը*
*Կու ընթեռնուն Սարգիս Չնորհալու ճառն մեր։*

*Խնդրեմ, Քեանհան, խնդիրդ հզօրէն,*
*Պարգևատու Տէր Ցիսուս Թագաւորէն,*
*Բարեխօս լերուք, սիրելիք համօրէն,*
*Անցցէ հանգիստ հեշտութեամբ դժուարն մեր։*

---

# Ժ

Թալխա տալով՝ մէկ կուշտս մօտ արի՛, եա՛ր,
Քաղցր լեզուաւ սիրտս մխիթարի՛, եա՛ր,
Անտես չառնես, խնդիրս կատարի՛, եա՛ր,
Նման տուի Լէյլի գիւլլիզարի, եա՛ր,
Թուխ ունքերդ երկնային կամարի, եա՛ր,
Ակռըքներդ սադաֆ անգին քարի, եա՛ր,
Դու ակունք ես, ես եմ քեզ մուշտարի, եա՛ր։

Խաղդ ու խալդ, մահջամալդ, սիրելի՛,
Թաքրար քցեց ինձ էշխիդ մէջը էլի,
Գեղեցկութիւնդ է Յովսէփայ աւելի,
Ճանց տո՛ւր պատկերդ ական թօթափելի,
Դարդ չունի՝ ով աշխարհումն քեզ վէլի, (վայելէ)
Ոչ ոք կայ, որ քեզանից բէզարի, եա՛ր։

Ի՛նչ կըլլի, դարդդ ջանիցս վեր ունես,
Ինձ դարդոտացնելուցն ի՛նչ խէր ունես,
Եարաբ հետս սրտէ ի սիրտ սէր ունե՞ս,
Մաքրաբերան, խաթրաշահ խօսքեր ունե՞ս,
Գեղեցկութիւնդ չի գայ դաւթարի, եա՛ր։

Վերջապէս հուրի փարի ես գաթովդ,
Խաւար մտքիս լուսատու լոյս սֆաթովդ,

*Խարար սիրտս շահի ըխտըլաթովդ,*
*Հազար երեք արիր ինձ դարդ ու մուննաթովդ,*
*Մուխտասարի՝ նազ ու նազաքեաթովդ,*
*Ճատ մարդիկ կանես ջունուն սարսարի, եար։*

*Մտիկ տու, ճանաչի եարդ, սիրելի,*
*Սրտով սիրի բաֆադարդ, սիրելի,*
*Եաղ մի անի* խուըղամխարդ [1]), *սիրելի,*
*Ինձ համարի ղուլլուղդարդ, սիրելի,*
*Ըստուց յետը՝ ինթիզարդ, սիրելի,*
*Պէտք ա քաշեմ մինչի հազար տարի, եար։*

*Է՛յ բէխսաֆ, ես քու ուջայ սայիլ եմ,*
*Լոյս երեսիդ մտիկ տալու՛ հայիլ եմ,*
*Գիշեր ցերեկ մահջամալիդ մայիլ եմ,*
*Բիւլբիւլի պէս բացուելուդ մութայիլ եմ,*
*Զեմ նեղանայ, ինչ որ ասես, դայիլ եմ,*
*Թէկուզ հոգիս ամեն օր չարչարի, եար։*

*Գուօշներիցդ մէկ մազայ Քեանհանին,*
*Անտես, չառնես, տուր թաւազայ Քեանհանին,*
*Քու արածը էդ ինչ նազ ա Քեանհանին,*
*Դոստութիւն ա՛, թէ ղարազ ա Քեանհանին,*
*Աստուած սիրես, մի տալ ղազա Քեանհանին,*
*Ռահմ արա ինձ նման անճարի, եար։*

---

1) Պարզ չէ։

## ԺԱ

*Իմ սիրելի՛, ինձ քեզնից եադ մի՛ անի,*
*Քեարամի նման նամուբադ մի՛ անի,*
*Դուշմաններու սիրտը աւադ մի՛ անի,*
*Փէշակս դարդերի ուստատ մի՛ անի,*
*Թասխը չունեմ, նահախ շառատ մի՛ անի,*
*Խալխի խօսքով դու ինձ նախատ մի՛ անի։*

*Ջիւան ումբրս, եա՛ր, ուղուրիդ մաշելով՝*
*Ման ես ածում ինձ, էշխումդ խաշելով,*
*Միսս հալուեց՝ ոսկորներս տաշելով,*
*Վերացրել ես ումբրս դարդաշելով,*
*Հալից էլայ, ջաւր ու ջաֆէդ քաշելով,*
*Շիրինի պէս դու ինձ Ֆահրատ մի՛ անի։*

*Տեսէք՝ ինչ օրը քցեց էս եարն ինձ,*
*Դարբադխար քցեց քարէքարն ինձ,*
*Վարդի նման համդամ արաւ խարն ինձ,*
*Թէ պրծնիմ՝ չի սպանի էս դարն ինձ,*
*Մաջլունի պէս ման մի՛ ածի սարն ինձ,*
*Լէյլայի պէս տեղդ սահրատ մի՛ անի։*

Քօյիդ տեսնելուն կարօտ ենք ամէնս,
Դարձ բերիր աշխարհէն, փոխեցիր զէնս,
Բարբադ արիր սիրտս, քանդեցիր շէնս,
Աղաչում եմ, եարաբ լսում ես ձէնս,
Քեանհանին եմ, եա՛ր, դուն ես ապաւէնս,
Խրատիչ ե՛ղ ինձ, չարադատ մի՛ անի։

---

## ԺԲ

*(Ի վերայ ստեղծման աշխարհի)*

*Իսկզբանէ ջուր էր աշխարհն ամենայն,*
*Արարիչը միայն էր, որ ոչ ոք կային,*
*Հրամայեաց, որ եղեն երկինք ու երկիր,*
*Լիացուց աշխարհիս ամենայն բարին։*

*Ադամայ որ ստեղծեց նիւթն ի հողէն,*
*Ապա որ Եւային քաշեց ի կողէն,*
*Լոյս ետուր լուսաւոր երկնային ցօղէն,*
*Արաւ ջան երկու, մի միս, մի արին։*

*Եկաւ կուշտն Ադամայ չարն սատանէն,*
*Խաբեց ուտացրուց պտուղ արմաղանէն,*
*Ասաւ՝ լոյս կու բերեմ, հաւատաց բանէն,*
*Էառ գիր ձեռաց ի մարմառ քարին։*

*Ազգն ետուր գերութիւն վասն պատճառով,*
*Գալուստն խնդրում են ձայնիւ բարբառով,*
*Եկաւ տէրն Քրիստոս ահագին փառով,*
*Մինչի որ Թամամեց վեց հազար տարին։*

Աւերեաց դժոխն, հոգիքն փրկեց,
Արդար ու սրբերուն դրախտն ղրկեց,
Մէկն յաւիտենական դրախտէն զրկեց,
Այն իսկ որ Յուդա էր, ետուր ի չարին։

Միջնորդ և բարեխօս, Աստուածածին կո՛յս,
Բովանդակ արարած աշխարհին ես յոյս,
Արարիչն ամենի տէրն մեր Յիսուս
Յարոյց չորեքօրեան մեռեալ Ղազարին։

Մեր մեղքը պէտք ա դարձ գալ քահանային,
Զղջալ և աւտաասուել, լալ քահանային,
Խոստովանել, մեղայ տալ քահանային,
Միջնորդել Քրիստոսի սրբոյ տաճարին։

Բարի սերմանեցէք, որ բարի կասէք,
Արարչի դատաստան գալն սպասէք,
Բէչարայ Քեանհանին ողորմի ասէք,
Մի՛ք հաւատա փուչ անցաւոր աշխարհին։

## ԺԳ

Հոգի ջա՛ն, լոյս երեսդ, կարծեօք, արեգակ է, սիրելի՛,
Լոյսն արեգական նման, ուրեմն փայլատակ է, սիրելի՛,
Արեւելից ամեն առաւօտ կու ծագէ, սիրելի՛,
Բոլոր ադամեան տոհմին լոյս կու նշանակէ, սիրելի՛,
Լուսափայլ շառաւիղդ ծագայ մինչի ծագ է, սիրելի՛,
Զարմանամ մեզաւորս, թէ ընդէր արտակ է [1]), սիրելի՛։

Ծաղիկ ես եղեմական, հոտդ անմահական են ասում,
Գոյնդ բազմատես, այլ տեսակ զանազան են ասում,
Համաձայն որդւոց լուսոյ հրեշտակ և լուսազան են ասում,
Հայրենի բնութիւնդ իսկ և արարատեան են ասում,
Թէ չես ինձ մերձաւոր, ընդէր քեզ Յաբէթեան են ասում,
Ուրեմն հայկատոհմ ես, բնութիւնդ հպատակ է, սիրելի՛։

Ազնուական ցեղից ես, դշխուհի՛, կարծեօ՛ք, էլի կարծեօք,
Ծնեալ արդար անմեղից ես, դշխուհի՛, կարծեօ՛ք, էլի կարծեօք,
Երկնային աստեղից ես, դշխուհի՛, կարծեօ՛ք, էլի կարծեօք,
Երանաւոր տեղից ես, դշխուհի՛, կարծեօ՛ք, էլի կարծեօք,
Արքունական ցեղից ես, դշխուհի՛, կարծեօ՛ք, էլի կարծեօք,
Քանի ազնուական տոհմ ընդ քեզ համաբնակ է, սիրելի՛։

---

[1]) Չի հասկացւում։

*Ջիւրդ կարեմ ասել քեզ՝ հողածնոյ նման ես, հոգի ջա՜ն,*
*Չունես ինչ նման հողածնոյ, ուրեմն աննման ես, հոգի ջա՜ն,*
*Գաբրիէլեան դասէն ես, դուն անմահական ես, հոգի ջա՜ն,*
*Լոյս երեսդ համբուրելի, սուրբ խաչանշան ես, հոգի ջա՜ն,*
*Ո՞ կարէ առնուլ սէրդ, դուն սիրով անտան ես [1]), հոգի ջա՜ն,*
*Բոլոր աշխարհս ամենայն քո սիրոյդ փափագ է, սիրելի՜։*

*Երեսդ վարդ բաց էլած մայիսի ամսուն, գովելի ես,*
*Վարդի նման բիւլբիւլին չես տալ փոքր ինչ քուն, գովելի ես,*
*Գիշեր ցերեկ բիւլբիւլին կու պահես արթուն, գովելի ես,*
*Ամենայն ծաղկանց միջի իբր շուշան, դուն գովելի ես,*
*Սերեալ տոհմէն Յաբեթայ, այժմ Հայկազուն, գովելի ես,*
*Քեանհանին գովասանդ միշտ կու եղանակես, սիրելի՜։*

---

1) *Չի հասկացւում։*

## ԺԳ

*(Քէշիշ օղլու եղանակի)*

***Մազայ է պռօշներդ, շաքար ղանդահամ, մեղրան հալ կու նմանի,***
***Ով տեսնի, Սանա՛մ,***
***Մեղր պռօշներդ ուտողն էլ հացն ի՞նչ կանի՝ թէկուզ հազար տարի,***
***Ով տեսնի, Սանա՛մ։***

***Գիւլաբնամ տուր, թուխ մազերդ թաց արա՛, երբ որ հոտն անուշի,***
***Ինձ իմաց արա՛,***
***Մի քրտնացրու, վախտ վախտ բաց արա՛, քամին գայ՝***
***Ծծերդ հով տեսնի, Սանա՛մ։***

***Քեանհանին քաշում է միշտ արզ ու նամդ,***
***Սալբի չինարի է մէջք ու բազանդ,***
***Ես էնպէս կարօտ եմ քո տեսութեանդ, ո՛նց ձուկն ցամաքում***
***Ծով տեսնի, Սանա՛մ։***

## ԺԵ

Մէկ ողորմութիւն արա՛ խղճալոյս, ո՛վ իմ սիրեկան,
Ինձ էս ցաւերէն հա՛ն.
Չեմ ողջանայ ես էս ցաւերէն, թէկուզ գայ Լողման,
Դու լե՛ր բժիշկ, մի՛ սպան.
Հնար ցաւերոյս դու գիտես, էլ ո՞ւմ ասեմ մէկ բան,
Դարդիս արա՛ դարման.
Թէ իմանաս՝ էս ցաւերս է քո սիրու կողման,
Չունեմ ուրիշ անցան։

Ով ինձ տեսնում է՝ ասում է՝ թէ եարի դութսաղ ես,
Կամ էշխի նասաղ ես.
Պէտք է կարօտդ քաշեմ, քանի որ ջանս սաղ է,
Երբ մեռանեմ, թաղէ.
Դրախտ անմահական տեսիլքդ մէկ բաղչայ ու բաղ է,
Համ լուսաշաղախ է.
Գեղեցկութիւնդ անպատմելի տեսակ զանազան,
Դու ես հուրի զլման։

Քաղցրաձայն ողբով սոխակ գայս եղանակի,
Ով որ քեզ փափագի.
Պայծառ երեսդ միշտ և հանապազ լոյս կու ծագի,
Նման արեգակի.
Ո՛վ արեգակ իմ, ծագի՛ր ի լոյս, սիրտս բնակի,
Լոյս քեզ նշանակի.
Բերանդ մաքուր, անմահական, աղբիւր ա նշան,
Մեք արբեմք համաձայն։

Աղբիւր անմահական, ո՛ աբբի, կու մնայ կենդանի,
Մինչ աշխարհն կայ քանի.
Իմաստնագոյն ես աշխարհումս քան Սողոմոնի,
Դու մի՛ յանդիմանի.
Ո՛վ իմ սիրահար, աղաչում եմ, սիրովդ մի՛ սպանի,
Ինձ էս ցաւէն հանի՛.
Այլ ինձ օգնական չունեմ ուրիշ, լե՛ր ինձ պահապան,
Մինչև ի վախճան։

Ժամանակ է, որ սիրոյդ՝ անձս հուր անկեալ վառի,
Ճշմարիտ համարի.
Այլ բացի ի քէն ցաւերոյս հնար ո՛վ կարայ ճարի,
Չը կայ անհնարի.
Այսպէս պէտք է մնամ ի մէջ աշխարհի,
Ամս քառասուն տարի.
Չեմ լուեալ ի ընէ արարեալ իցէ այսպէս դատաստան,
Իւր ծառային արքայն։

Սէր, քեզի սիրեցի դժբաղդութեամբ բաղում տանջանօք,
Դառն աշխատանօք.
Գերի եմք քեզ բոլորովիմբ, բարեկամ ընտանեօք,
Ազգ ու ազգականօք.
Ընկա՛լ պաղատանս, ո՛վ սիրելի, ձայն աղաչանօք,
Ճշմարիտ սահմանօք.
Ողորմած լե՛ր, աւել նեղութիւն մի՛ տայ էսքան,
Հերիք է բաւական։

Ի՞նչպէս անեմ, օր ըստ օրէ կաւելնայ ազարս,
Ոչ ոք չի գիտէ ճարս.

Անտես մի՛ առնի, կատարէ՛ խնդիրս, սիրահա՛րըս,
Դու գիտես հնարըս.
Ուրախութիւն է ինձ համար, երբ տեսանեմ եարըս,
Կու հեռանայ չարըս.
Կու ստանամ բարի, էլ չեմ լինիլ ես չարահաւան,
Որ չի կրեմ տանջան։

Մի՛ յանդիմանի, բարկանա ինձ, ողորմասիրտ լե՛ր
Խղճալոյս, ո՛վ իմ տէ՛ր,
Նշանդ գալնան ծաղկազարդեալ եղանակաւ ջեր,
Մեծ կարողութեան տէր.
Երեսըդ արեգակ, խալերըդ է աստեղ լուսաբեր,
Անց կու կացնի գիշեր.
Արա՛ Քեանհանինին լուսաշաւիղ տեսլեանդ արժան,
Սէր իմ ազնուական։

---

## ԺՁ

### ՆՈՒՆ, ՍԻՍԼ ՍԽՐ [1]

*Նազանի՛, տեսնողդ նոր կանի դաստան,*
*Նախշքեար խալերդ, եա՛ր, նշան նշան,*
*Նախ՝ հրեշտակաթահր ես, անունդ է խսան,*
*Նոր լուսին ունքերդ զառ նշան նշան։*

*Նինջ չի գալ աչքերիս, գիշեր ցերեկ քուն,*
*Նշանակ սոխակի կու կենամ արթուն,*
*Նորոգ ծաղիկ գոյնդ ինձ նշանց տո՛ւր դուն,*
*Նօղդա խալերիդ կար նշան նշան։*

*Նիղակ է. ունքերդ, եաղի Քեանհանին,*
*Նար կրակով կու դաղի Քեանհանին,*
*Նհանջել է կեանքն, թաղի՛ Քեանհանին,*
*Նշանգեահ քաշել տուր քար նշան նշան։*

---

[1] *Նշանակում է՝ սկիզբն ու վերջը նու տառն է։*

## ԺԷ

*(Ի վերայ Ակոռի անուանեալ գիւղի, ի կործանումն նորին, ի 1840 ամի, 20 յունիսի)*

Ո՞վ էր տեսել աշխարհումս էս բանը,
Ձարժը էլաւ, քանդուեց Նոյայ տապանը,
Քանդուեց Արարատեան սարի մի եանը,
Տակովն արաւ Ակոռու գիւղականը,
Որ չի պրծաւ մէկ մեծատուն իշխանը,
Չէինք տեսած էս Թաւուր մեծ զարմանը։

Նոյ տապանաւն էն սարումը կացաւ,
Մասիսը քանդուեց, Ակոռին վերջացաւ,
Ձատ մէր ու մանուկ նրանց համար լացաւ,
Ո՛վ որ տեսաւ էն բաները, զարմացաւ,
Հայրմ՛թ, մի սուրբ Աստծուն բերան բացաւ,
Ասաւ՝ բա՛ւ է իրանց մեղքի նշանը։

Փուչ անցկացաւ ակռւեցոնց կեանը տես,
Բարկացել ա մեր երկնային խանը տես,
Փչացրուց քառսուն հարիւր ջանը տես,
Ձանց է տալի մեր մեղքի նշանը տես,
Աստուածային զարմանալի բանը տես,
Ինքն արդար, ուղիղ է դատաստանը։

Շուտ վերջացաւ ակռուեցոնց անունը,
Էլ յոյս ու հաւատ չի կայ խսանումը,
Մեղաւոր ենք մանուկ աւազանումը,
Ի՞նչ տանք պատասխան վերջ դատաստանումը,
Չենք ճանաչում Աստուած ամէն բանումը,
Ընտուր համար՝ նա արաւ մեր դիւանը։

Սարը քանդուեց, էն մի բանը վատ էլաւ,
Ակռու պէս նշանը բարբաթ էլաւ,
Քորք և աղբէրք մէկ մէկուցը եաղ էլաւ,
Ո՛վ արդար էր, նա պրծաւ ազատ էլաւ,
Լուլացին մէկը դա՛ղ—հա դա՛ղ էլաւ,
Քանդուեց Յակովը Հայրապետի մասկեանը։

Մեր մեղացը նհանջեցաւ բարին տես,
Վասն այն, որ դուլլուղ ենք անում չարին տես,
Հազար ուխթն հարիւր քառասուն տարին տես,
Շարժը քանդեց Մասիսի պէս սարին տես,
Ջուդա քցեց ամենայն մէկ քարին տես,
Քանդեց դրախտի նման գիւղ գիւլշանը։

Շարժը քանդեց գիւղն Ակոռի այնոսին,
Որ աշխարհն էր Տրդատ Թէոդորոսին,
Էլ չի բաշխեց մեր սուրբ Գրիգորիոսին,
Որ չարչարուել էր Խորվիրապայ փոսին,
Կեանք խնդրեցէք Բարսեղ օղլի Պետրոսին [1]
Պահեցէք ձեր Աստուծոյ պատուիրանը։

---

[1] Քեանհանի անունը Պետրոս էր։

## ԺԸ

Չեմ հաւատա, թէ ըլես հողածին խաս, սիրելի՛,
Տեսիլդ հրեշտակ՝ դուն մէկ հուրի ղըլման, սիրելի՛,
Մտիկ տալդ մարդ կ՚ սպանի, էլ չի տայ աման, սիրելի՛,
Աչքերդ փարփորի է, ունքերդ քեաման, սիրելի՛,
Երեսդ բացուած ծաղիկ, ծոցդ ուրուզվան, սիրելի,
Հոտ ունիս անմահական, տեսակ զանազան, սիրելի՛։

Սուրէյի սաջար բոյիդ հագուստդ զառ ալ կու սազի,
Հագուստդ ալ մուղադամ, միջքիդ Քիրման շալ կու սազի,
Սազրի բաշմաղ քօշերիդ ոսկեջրած նալ կու սազի,
Դալղա տաս ծովի նման, խիստ լաւ սորոր տալ կու սազի,
Լուսաշաւիղ երեսիդ զոհրա-գհալ խալ կու սազի,
Աչք ու ունքդ նաղշքեար, բոլոր զառ նշան, սիրելի՛։

Երանի՜ աշխարհումս ով որ քեզ պէս եար ունենայ,
Ախ չի քաշի սրտումը, թէկուզ ահ ու զար ունենայ,
Կու սաղանայ տեսնողդ՝ հարիւր ցաւ ազար ունենայ,
Ո՛չ թէ մէկ, ո՛չ թէ երկու, թէկուզ դարդ հազար ունենայ,
Չեմ հաւատա բիւլբիւլին քեզ պէս քաղցր բառ ունենայ,
Վարդի համար բիւլբիւլ ես, բիւլբիւլին գիւլշան սիրելի։

*Երեսդ բոլոր լուսին, աչքերդ ֆինջան եմ ուզում,*
*Ակռքներդ մարգարիտ, պռօշդ մէրջան եմ ուզում,*
*Գիշեր ցերեկ Աստուածանից ես մի սիրեկան եմ ուզում,*
*Սիրեկանս սրտագէտ, հասկացող խսան եմ ուզում,*
*Սիրոյդ հիւանդացել եմ, դարդիս մէկ դարման եմ ուզում,*
*Չեմ պրծնիլ էս ցաւէն, թէկուզ գայ Լողման, սիրելի։*

*Ով ոք որ ինձ տեսնում է, ասումեն՝ սարսաղ է էլի,*
*Չեն ասում՝ էշխի ուջայ ընկնուած ղուլթսաղ է էլի,*
*Ինձ նեղութիւն ես տալի, էս ինչպէս նովրաղ է էլի,*
*Ծրծերդ թազա նարաթ, ծոցդ բաղչա բաղ է էլի,*
*Լեզուս բիւլբիւլ է դառել, մէկ վարդի նասաղ է էլի,*
*Մնացել եմ ախ քաշելով, չունիմ մի գիւլշան, սիրելի։*

*Բիւլբիւլ եմ, ման եմ գալի մէկ բաղի գիւլշանի համար,*
*Տեսիլքն լուսաշաւիղ հուրի ղըլմանի համար,*
*Աշխարհումս գովելի, հոգին դրախտականի համար,*
*Դրախտային հոտ ունենայ, մազերն արմաղանի համար,*
*Գերել եմ անձս բիթում ըսէնց մի ջանանի համար,*
*Չիլի, պէտք ա կարօտդ քաշեմ յաւիտեան, սիրելի։*

*Էս ինչ քրիստոնէութիւն է, ինձ քեզանից եաղ ես արել,*
*Չարակամներու խօսքով լաւ անունս վատ ես արել,*
*Խօցոտած խարաբ սիրտս դուբարայ բարբաղ ես արել,*
*Դօստերուն տխրացրել, դուշմաններուն շատ ես արել,*
*Ճիրին ես դառել, ինձ էլ բէյհուդա Փահրադ ես արել,*
*Տեսար՝ Նրանք մուրազին վերջը չի հասան, սիրելի։*

*Մէկ ողորմութիւն արա՛, եա՛ր, մօտիդ պահի Քեանհանին,*
*Մանգալս եարի խաթեր բա՛լքի՛ մէկ շահի Քեանհանին,*
*Տարակուսացրել է սէրդ իլլահի Քեանհանին,*
*Էնքան ցաւոտացրիր, հասցրիր մահի Քեանհանին,*
*Բահմ արա, մէկ հնարքով խաթրն ա՛ռ, շահի՛ Քեանհանին,*
*Աղաչում եմ, խղճալոյս ողորմեա՛, ջանան սիրելի՛։*

## ԺԹ

*(Գովասանութիւն առ Վանս Սրբոյն Կարապետի)*.

*Սուրբ Կարապետի վանքը եօթն անուն էր,*
*Սրբակրօն արդար միաբան ունէր,*
*Ժամասացութիւնը հայոց գանուն էր,*
*Սահմանքները հայրապետաց կանոն էր,*
*Սուրբ Լուսաւորչու վախտէն նշան ունէր,*
*Ոսկէ վարագ՝ վրէն գառնշան ունէր։*

*Օրն հինգ անգամ ժամասացութիւնները,*
*Կայ միջներին աստուածային սէրը,*
*Մ՚իշտ կը տօնեն երկնային անմահ Տէրը,*
*Լուսաշաւիղ շնորհատու սրբերը,*
*Աթանիաս սուրբ Հայրապետ ծերը*
*Վարդապետաց վերայ հրաման ունէր։*

*Խաչկալները գիփ ոսկէ գառնշան էր,*
*Չի իմացայ, մէկ զարմանալի բան էր,*
*Վախտ էր՝ գրախտահոտն խնկըս տանէր,*
*Տասն ատենի, յիսուն հէնց շարական էր,*
*Ջարբար շուրջառները երեք խորան էր,*
*Ոսկէ ղալամ եօթը հէնց սեղան ունէր։*

*Նրանց ժամասացութեան քաղցր բառը*
*Կու քանդի մեղաւորաց մեղաց դարը,*
*Կու սարսափի, կու դողայ նախանձ չարը,*
*Մէկ ոսկի չխար ունի ամէն քարը,*
*Սուրբ Յովհաննէս Մկրտչի տաճարը*
*Համբուրեցի՝ մարմառ գերեզման ունէր։*

*Հարիւր բուրվառ, հարիւր կանթեղ ջամ արի,*
*Լուսաշնորհ կախած էր սուրբ կամարի,*
*Ութը սարկաւագ կու սպասի ժամարարի,*
*Նոյն աղաւնակերպ կիջնի ամէն տարի,*
*Արծաթէ խաչերն անհէսաբ համարի,*
*Հարիւր յիսուն սուրբ աւետարան ունէր։*

*Ալւան խալիչէքը փիանդազ տեսայ,*
*Դիփ աբրշում, մէկ մէկն էլ կազ տեսայ,*
*Ճգնաւորաց հանդերձները մազ տեսայ,*
*Տասն ու վեց սիւն մէկս մէկու սազ տեսայ,*
*Ամէն սան բոյը թամամ հինգ գազ տեսայ,*
*Մարմառ քարից նաշխած աւազան ունէր։*

*Ութ զանգակ է, երեք սուրբ կաթուղիկայ*
*Երկուսը մեծ, մէկը մի քիչ պզտիկ ա,*
*Աշխարհումն էն թաւուր տաճար չը կայ,*
*Նրանց սեղանը միշտ ղաղումի լի կայ,*
*Հազար ոչխար, երկու հարիւր հինգ ձի կայ,*
*Չորեք կողմն հանդ ու հանդաստան ունէր։*

*Չորեք կողմն պարիսպ, մէջը օթաղներ,*
*Մէկ կողմն սար՝ Լուսաւորչու եայլաղն էր,*

*Մարմառ քարից կամար դռների թաղն էր,*
*Ոսկէ ջրով գերծալների վարաղն էր,*
*Ամէն դասումն ութ վարդապետ կու կաղնէր,*
*Առաջնորդը ձեռին գաւազան ունէր։*

*Դաւթար արի՝ չորս հարիւր միաբան էր,*
*Չին ջոկնուում, մէկս մէկուն նման էր,*
*Մեծ ու փոքր չորս հարիւր յիսուն ջան էր,*
*Նրանց հոգիքը դիփ դրախտական էր,*
*Մէկ ջաղաց, երկու աղբիւր միշտ կու բանէր,*
*Կարգը կարգին էս թաւուր սահման ունէր։*

*Քեանհանին եմ ծառայ սուրբ Կարապետին,*
*Բարեկամն Աթանեայ հայրապետին,*
*Աշակերտ էր տէր Յիսուս Վարդապետին,*
*Բարեխօս լեր առ մեղաւորն յետին,*
*Նա մկրտեաց Յիսուս Յորդանան գետին,*
*Քրիստոսի նման ազգական ունէր։*

---

# Ի

## ՎԵՒ ԱՎԱԼ ԱԽՐ [1]

*Վախում եմ՝ մեռանիմ, էս ցաւն ինձ կալավ,*
*Վարամոտեց որոտ սիրտս՝ ասելով,*
*Վարամ դարդ էր, թէ հարցնես՝ ինձ կալավ,*
*Վարամոտած բացի ինձէն ասելով։*

*Վառուեց սիրտս հուր բոցեղէն հալելով,*
*Վատբախտ էլայ, քանի կացայ հալալով,*
*Վէր ա գալիս աչքերիցս հալալով,*
*Վարարել ա արտասուքս ասելով.*

*Վատ օրերդ դրէ Քեանհանին ամբարով,*
*Վորքան կենաս աշխարհումն ամբարով,*
*Վաղին չի գայ, դարդ ու ցաւ է ամբարով,*
*Վեր չի ունուի շատուԹենէն ասելով։*

---

[1] *Նշանակում է՝ սկսւում և վերջանում է վ տառով։*

## ԻԱ

*Վա՛յ թէ մեռանիմ սիրոյդ, սիրեկա՛ն,*
*Կարօտ մնամ տեսոյդ, հուրի ղըլմա՛ն,*
*Անողորմաբար մի՛ տալ ինձ տանջան,*
*Դարձեալ մի՛ անիլ հալս փարիշան,*
*Աւելնում է ցաւերս զանազան,*
*Չեմ ճարում հնար, էս է ինձ պարման։*

*Ինչ անեմ սիրոյդ՝ սէրս է շատանում,*
*Ծանրացնում է, բեռս է շատանում,*
*Ես հէնց գիտեմ, թէ խէրս է շատանում,*
*Հետևելով՝ աւերս է շատանում,*
*Օր ըստ օրէ դարդերս է շատանում,*
*Դժուար է, ինչպէս դիմանամ էսքան։*

*Ինձ մի՛ նախատի՛, ո՛վ սիրեկանս,*
*Ես ի՛նչ անեմ, անբախտ էլաւ բանս,*
*Ե՛կ, մխիթարի՛ հուրի ղլմանս,*
*Կրկի՛ն մի՛ աւելցնի տանջանս,*
*Բժշկի՛ ցաւս, դու լե՛ր Լողմանս,*
*Ինձ էս ցաւերէն ազատի, մի՛ սպան։*

*Կեանքս մաշեցիր, ինչպէս անեմ, եա՛ր,*
*Հերիք է, ինձ մի՛ քցի դարբադար,*

Յօրայ նման՝ դարդերս արիր հազար,
Խղճմ խղճալւոյս, մի թողնիլ անճար,
Մէկ մուրվաթ արա, ով իմ սիրահար,
Քանի քաշեմ էսքան տարակուսան։

Յաղթող է սէրդ ծագաց մինչ ի ծագ,
Հրեշտակաձև ես, համ լուսապսակ,
Քաղցրն է ձայնդ, կու նմանի սոխակ,
Փայլատակումդ իբր արեգակ,
Ոչ թէ տեսոյդ միայն ես եմ փափագ,
Փափագ է տեսոյդ սաղ Արարատեան։

Կարօտդ եմ քաշում էս քանի տարի,
Ընդուր խաթեր դառել եմ սարսարի,
Էշխիդ հիւանդն եմ, մէկ մօտս արի,
Տրտում է սիրտս, եկ, մխիթարի,
Ինձ էլ դռանդ մէկ ղուլ համարի,
Դուն թագաւոր՝ ես արքունասահման [1]։

Մարդ դարդը կասի իր սիրեկանին,
Լեզւով կը հասկացնի ճարն ամենին,
Ինչպէս Մաջլունն Լէյլանշանին,
Նրանք մուղարար սէր միարանին,
Թէ որ դուն անտես առնես Քեանհանին,
Պարտաւոր լինիս աւուրն մահուան։



[1] Չի հասկացւում։

# Ա.

*Աչքերդ չալ-չալ եա՛րս, մօտս արի՛, բաֆադա՛րս,*
*Սէրդ ամեն ժամանակ կորցրել է ղարարս։*

*Բիւլբիւլները կը խօսին ծոցիդ բաղչա բաղի պէս,*
*Քրտնել ես պտուղ-պտուղ, կարմիր շաղի պէս,*
*Ինձ պահել ես դռանդ, անողորմ դուլթսաղի պէս,*
*Աղաչում եմ մուղարա՛ր, ազատ արա՛, սարդա՛րս։*

*Գարունքն բարով բացուի՛, շատ կըլինի բարիները,*
*Վարդի շաղով շաղախուած՝ ման կը գան փարիները,*
*Սիրոյ գերին չի զգալ, անցկենան տարիները,*
*Խօսողներաց կանարդի, կասի՝ ի՞նչ է ղարարս։*

*Դալար, փարթամ սիրահա՛ր, համեստ է բնութիւնդ,*
*Քան զՅովսէփ գեղեցիկ քաղցրն է դրութիւնդ,*
*Այսուհետև նուաստիս, տեսանեմ օգնութիւնդ,*
*Խրատիր ողորմելոյս, ուսիմ* (ուսանիմ՛) *քեզնէն համարս։*

*Եարա՛ր ես էլ կիմանամ՝ սէրդ առիս բացուած է,*
*Աչքերս արտասունքով ամէն սըհաթ լցուած է,*
*Ա՜խ քաշելով ման կը գամ, դարդով սիրտս խոցուած է,*
*Կամենաս՝ կը բժշկես, ո՛վ դու իմ սիրահարս։*

Զարդարեալ միշտ ման կը գաս, երկնից հրեշտակի պէս,
Սիրակա՛ն, ռահմ արա՛, յատուկ կեանքս արիր կէս,
Սիրոյ հետ տապակուիլը աջաբ ով է արել ծէս,
Ե՛կ, նազելի՛, սէր անենք, քանի անցել չի դարս։

Էրուեց սիրտ ու ջիգեարս, ով սիրական, դեղ արա՛,
Ինձմի՛ թողուլ մթնումը, աչքերդ կանթեղ արա,
Փակուեց շնչառութիւնս, ինձ ծոցումդ տեղ արա՛,
Թող ամէնն էլ իմանան՝ դու ես իմ կամարարս։

Ռահմ արա՛, սիրակա՛ն, մէկ սրհաթ քեզ մօտ հիւր եմ,
Կորցրի խելք ու միտքս, չը գիտեմ, թէ ես ուր եմ,
Աստուա՛ծ սիրես, մօտ արի՛, երեսից համբուրեմ,
Ամէն ջահէլի մօտին մի՛ կըտրիլ էհտիբարըս։

Թագաւոր ես անման, որ չը կայ աշխարհումը,
Անցկացաւ մաթխարի պէս սէրդ իմ ջիգեարումը,
Թէկուզ էրես, փոթոթես քու էշխի բազարումը,
Հաւատա՛, ձեռք չեմ քաշիլ քեզանից հաւատա՛րըս։

Բարութիւնդ տեսանի, երանի՛ Քիմիային,
Գարունքուայ բւլբւլի պէս սէր անի Քիմիային,
Զօրացի՛ր, ազիզ եա՛րս, տիրանի Քիմիային,
Դարգիմանդ ես, իմացի՛ր, չի բաց արած դաւթարս։

———

## Բ

Գեղեցիկ ես, դուշա ջա՛ն, հանճարեղութիւնդ գովեմ,
Գերազանց ես 'ի մէջ մարդկան, համեստութիւնդ գովեմ,
Սիրոյ գերելոց հոգեհան, ամբողջ գրութիւնդ գովեմ,
Ընթերցողաց վայելչական շարադրութիւնդ գովեմ,
Խրատ ունես բարոյական, արտաքերութիւնդ գովեմ,
Թշնամեաց կործանական արիր զօրութիւնդ գովեմ։

Ընկա՛լ 'ի սէր սիրոյդ, սէրս, այսքան դեգերմունս նայիր,
Բաւական է տոչորես զիս, քեզ սիրոյս սահմանս նայիր,
Եթէ ինձ ողորմել կամիս, խղճալոյս չորս կողմս նայիր,
Ամենայն կերպ պատուոյ արժան, քաղցր դրութիւնդ գովեմ։

Բարունի կարեմ ասել քեզ, սիրելի ես ամէն ժամ,
Կարօտութիւնդ սպասել քեզ, սիրելի ես ամէն ժամ,
Նոր 'ի նորոյ սէր սկսեալ քեզ, սիրելի ես ամէն ժամ,
Ունես անհատ սիրոյ սահման քեզ կարօտութիւնդ գովեմ։

Իւրաքանչիւր սիրեկանը որ սէր ունենայ՝ լաւ կըլի,
Յովսէփայ գեղեցկութիւնը պատկեր ունենայ՝ լաւ կըլի,
Աչալուրջ ազնուականը եղբայր ունենայ՝ լաւ կըլի,
Ճատ է ջահէլի սահմանը, լաւ տէր ունենայ՝ լաւ՞կըլի,
Ունեցածն է պատուական, բոլոր բարութիւնդ գովեմ։

Գերիդ եմ, ինձ ազատ արա՛, խղճալի մի՛ թողուր կենամ,
Հոգւոյս տունը առատ արա՛, ամայի մինչ երբ դիմանամ,
Սէրդ առիս առատ արա՛, պատուոյ շնորհաց արժանանամ,
Ջուրդ թշնամեաց անհետ, որոյ փարթամութենէդ զովանամ,
՚Ի սրտէ սրտիս սիրաբան հաշտ կամարարութիւնդ զովեմ։

Ուրախանամ, ուրախանամ, սերտ սիրելուցը սէր տեսայ,
Ուրախանամ, փարթամանամ, բարեկամիցը սէր տեսայ,
Փարթամանամ, զուարճանամ, բուրաստանիցը բար տեսայ,
Նոր երևաց սիրոյ նշան, մեծ բարերարութիւնդ զովեմ։

Բամբ սոխակներ ունենայ Քիմիային բուրաստանիցը,
Մէկ հաստատուն սէր ունենայ Քիմիային սիրականիցը,
Լաւ սիրահարներ ունենայ Քիմիային Հայաստանիցը,
Վերջ ամենայն՝ խէր ունենայ Քիմիային լաւ մարդկանցիցը,
Յայնժամ կը լինիմ պարտական՝ համբերութիւնդ զովեմ [1]։

---

[1]) Տների գլխատառերից դուրս է գալիս Գրիգոր․ իւր անունն է։

## Գ.

Դուք, սիրելի՛ք, ի միտ առէք անցաւոր աշխարհս, իմացէ՛ք,
Ինչպէս տուել էր Ադամայ այն բարին ու չարն իմացէ՛ք,
Եդեն պատուիրանազանց նորա, այն լոյսն ու խաւարն իմացէ՛ք,
Ընկան դրախտէն Եդեմայ, նոյն սրհաթ ու դարն իմացէ՛ք,
Որոգայթն սատանայի, փորձանքն ու հնարքն իմացէ՛ք,
Առ տէրն պատասխանելու հոգալ հոգւոյ ճարն իմացէ՛ք։

Շատ անձինք կան, գործ կը դնեն շատ վախտ հայհոյութիւնները,
Շատ աշխատանք ցոյց կը տան իւրեանց կարողութիւնները,
Գովասանելով միմեանց քաղաքավարութիւնները;
Մարդկանց համար անվայել է դատարկաբանութիւնները,
Որը որ մեղք չեն համարել, մէկիցը հազարն իմացէ՛ք։

Սա մեղքիցը ազատ կացէ՛ք, սուրբ սրտիւ Աստուած կանչեցէ՛ք,
Համբերութեամբ նման Յոբայ, միտ առէ՛ք, լաւ ճանաչեցէ՛ք,
Նըման մոլորեալ գառին՝ գլխպա երկնքին բառաչեցէ՛ք,
Աստուածային անբաւ սէրը միտք ածելով ամաչեցէ՛ք,
Հընազանդ լերո՛ւք միմեանց, պաշտօնակատարն իմացէ՛ք։

*Դիրքն, օրէնքն աստուածային մարդուս պէտք է լաւ իմանալ,*
*Ինչպէս վարէ յաջող կեանքն, այնպէս էլ ցաւին դիմանալ,*
*Չարեացն պախարակել, իւր ճանապարհն ուղիղ գնալ,*
*Ոչ բամբասանաց մօտանալ և ոչ ևս հպարտանալ,*
*Միշտ ողորմութիւն արարէք աղքատներին, ճարն իմացէք։*

*Քիմիա՛, արի՛ դու Թարգ արա՛ քո վայր իվերոյ մանգալը,*
*Չունքի ունայն ա աշխարհիս փողն ու դովլաթն ու մալը,*
*Ո՛վ սիրելիք, լաւ իմացէք, շատ դժուար ա հոգի տալը,*
*Այսուհետև հարկաւոր է արեան արտասունքով լալը,*
*Տասն և հինգ տարով չի խնդայ այն աղքատ Ղազարն իմացէք։*

---

Դ.

Ինձ էլ ձեզ հետ դնգերում էք, սիրելի՛ք,
Ի մէջ սիրոյ ինձ էրում էք, սիրելի՛ք,
Մաշուած սիրտս միշտ քերում էք, սիրելի՛ք,
Ի՞նչ ժամ ինձ մտաբերում Լք, սիրելի՛ք,
Սէրը սիրոյ հետ մէրում Լք, սիրելի՛ք։

Սէր քաշողներին կասեն դիւանայ,
Ճատ մարդ կասի՝ սափսո՜ս, ինչպէս ջիւան ա,
Լաւ սիրտ պէտք է՝ էն սհաթին դիմանայ,
Սէր ասածդ ով քաշել է՝ կ՚իմանայ,
Լա՛ւ է, այդքան համբերում էք, սիրելի՛ք։

Էլ շատ ու քիչ ձեզ հետ ես եմ դիմանում,
Սէրի սահմանիցը բան եմ իմանում,
Ձեր երկիւղը միտ բերելով՝ սասանում,
Լաւ իմանաք՝ մարդոյ հոգին էք հանում,
Մէկ նկատէք՝ ինչ սէր ունէք, սիրելի՛ք։

*Ձեզ չի վայել՝ յատուկ կեանքս կէս անեմ,*
*Դօստի, եաղի մօտին սեերես անեմ,*
*Մոլորուած եմ, չը գիտեմ՝ ի՞նչպէս անեմ,*
*Ձեր տեսնողը կասի՝ մէկ էլ տեսանեմ,*
*Գեղեցկատես պատկեր ունէք, սիրելի՛ք։*

*Խեղճ Քիմիային քաշէ՛ք, ձեր մօտը տարէ՛ք,*
*Բաւական է՝ ինձի այսքան չարչարէք,*
*Կարեմ ասել՝ աշխարհքի բարերար էք,*
*Ես խնդրում եմ՝ այս սէրիցը դադարէ՛ք,*
*Յատուկ կեանքս աւերում էք, սիրելի՛ք։*

## Ե

Մօտս արի՛, ղադդ ու ղամաթիդ մատա՛ղ,
Արեգակից պայծառ սուրաթիդ մատա՛ղ,
Նոր փունջ էլած թուխ ծամի սաթիդ մատա՛ղ,
Կնիազ ես, քու ազնիւ զաթիդ մատա՛ղ,
Ճարտար իմաստուն սանթանաթիդ մատա՛ղ,
Զարմացել եմ քո մարիֆաթիդ մատա՛ղ։

Թագաւորական ցեղից ես, խանում ես,
Էս ջահիլ ջիւաններուն սպանում ես,
Ղէզաճ մտիկ տալիս՝ հոգիս հանում ես,
Որ մազազաթ պռունկներդ բանում ես,
Ամէն մէկ խօսելիս՝ խելքս տանում ես,
Բիւլբիւլի պէս քաղցր լուղաթիդ մատա՛ղ։

Հագել ես դիբէգ, պառ ղումաշում ես,
Փահրատի պէս ումրիս քարը տաշում ես,
Էդ էշխիցդ լերդ ու թոքս խաշում ես,
Բէմուրվաթ ես, ջիւան ջանս մաշում ես,
Էլ շատ ու քիչ իմ թասիբս քաշում ես,
Ես Նամուսիդ, առ ու ղայրաթիդ մատա՛ղ։

Անունդ է մուխամբազում գրընած,
Բիրեան պլտիր քեզ պառներն նոր ծնած,

*Ի՞նչպէս ասեմ, ինձնում թաղած չմնաց,*
*Որ ես տեսայ, խելք ու քեամալս գնաց,*
*Ոչ մեռած եմ, ո՛չ կենդանի, ո՛չ քնած,*
*Քեզնից դիպաւ ինձ, հարարաթիդ մատա՛ղ,*

*Ցոլ ես անցնում, ինչպէս թէ ամպի տամար,*
*Ակռիքներդ ոսկի, ունքերդ ղամար,*
*Ունքերդ է յատուկ երկնային կամար,*
*Հագնուել ես, կապել ես ակնով քամար,*
*Թագաւոր ես դուն Քիմիայու համար,*
*Ատայաթ ես, շար ու շարիաթիդ մատա՛ղ։*

## Զ

*Ո՛վ սիրելիք, ականջ արէք, հասկացէք սէրի կրակը,*
*Միշտ կայրի, երբէք չի հանգչիլ, իբրև մաքուր աշտանակը,*
*Սիրեկանը կը գիտենայ սիրեկանի ժամանակը,*
*Նորանց սէրը չի կտրուիլ մինչև ցմագից բաըակը,*
*Վարդի համար ինչ է քաշում խեղճ ողորմելի սոխակը,*
*Մինչ բացուիլը չի տեսնում, գուր է անցնում ամակը։*

*Սէր քաշողը մաշուած կըլլի, ջանումը արիւն չ՛ունենալ,*
*Վա՜յ գայ էն սիրականին, բարեկի անուն չ՛ունենալ,*
*Միշտ խեղագարեալ ման կըգայ, այնպիսին մէկ տուն չ՛ունենալ,*
*Կը գեգերուի գիշեր ցորեկ, համարեա թէ, քուն չ՛ունենալ,*
*Ցնդած կըլլի ու մոլորուած, չի ճանաչիլ իւր սննեակը։*

*Սէրի բանը հասկացողի համար յատուկ շատ դժուար է,*
*Իւր անձը կորցրած կըլլի, կասեն՝ խստակ այսահար է,*
*Չեն հասկանալ սիրոյ ճմլեալ՝ ՚ի սէր սրտիւ սիրահար է,*
*Իսանիս այսքան մոլութիւն՝ իմանանք, թէ ինչ հնար է,*
*Սիրածը ձեռաց չի թողուլ ո՛չ յատուկ, ո՛չ հասարակը։*

*Այսմ աշխարհիս ներսին սիրածն ուրիշ բան կըլի,*
*Վարքը բարքը խիստ քաղցր, դէմքը շատ աննման կըլի,*
*Գեղեցկութեանն Յովսէփայ, տեսնողն հոգեհան կըլի,*
*Ման կուգայ վարդի շաղերով, հոտաւէտ բուրաստան կըլի,*
*Ընծայելով իւր սիրելւոյն նոր բաց էլած մանիշակը։*

*Սա սէրիցը ճաշակելու համար Քիմիային կուզի.*
*Ռանգն ունիքերն, երկնային կարմիր՝ Քիմիային կուզի,*
*Զուքունելիս մէջքին կունենայ քամար, Քիմիային կուզի,*
*Ունայնութիւն ունայնութեանց յիմար Քիմիային կուզի,*
*Վերջ ամենայն՝ գովելի է ճարտար խելաց ընդունակը։*

---

## Է

Սպասի՛ր ինձ անմեղիս, փոքր ինչ գանգատեմ, սիրեկա՛ն,
Ամենայն նեղութիւնս իմ ջանիս հանեմ, սիրեկա՛ն,
Փափագեմ սիրեցելոյդ, սիրոյդ տատանեմ, սիրեկա՛ն,
Կարեմ ասել՝ սէրիցդ կեանքս հատանեմ, սիրեկա՛ն,
Խնայի՛ր ողորմելոյս, սիրոյդ ականեմ, սիրեկա՛ն,
Կեցութիւնս աշխարհի առ քեզ անուանեմ, սիրեկա՛ն։

Անուանեալ սիրեկանիդ մէկ սիրոյ սահման չը տեսայ,
Սէր վայելող իրերաց մինչև ցօր մահուան չը տեսայ,
Սիրեկանը սիրելոյն մէկ մէկու պաշտպան չը տեսայ,
Դարդիմանդը աշխարհի հէչ նեղութեան մէջ չը տեսայ,
Դարդիմանդ դարդիմանդին դարդիմանդ եմ, սիրեկա՛ն։

Դարդիմանդի կեցութեանը վկայ աշխարհս կասեմ,
Խօսակցութիւնը թամամ, թող լեզուի հանճարն ասեմ,
Հոգի ջա՛ն, մի՛ պապանձեցնիլ ինձ ինչպէս Զաքարն ասեմ,
Կը խղճան ողորմելոյս մինչ հողն ու ջուր, քարն ասեմ,
Սիրաբան կա՛ց, սիրաբանիդ սիրաբան եմ, սիրեկա՛ն։

Սիրաբան ընկերուցըս իմ ջանումս ջան չի մնաց,
Հալ ու մաշ արիր հոգիս, քեզ սիրոյ նշան չի մնաց,
Միշտ կարօտդ քաշելու բոլոր Հայաստան չի մնաց,
Պայծառ դէմքդ տեսնելու մինչ արեգական չի մնաց,
Պատուական ես, պատուականից պատուական եմ, սիրեկա՛ն։

Պատուականութիւնդ ինձի համար բաւականին է յոյս,
Սիրեկանը սիրեկանին հէչ չի լինի կամակորոյս,
Է՛ջ շքեղ ապաւանակերպ 'ի վերայ տառապեալ հոգոյս,
Աղաչում է Քիմիայն, մի թողուր խղճալի խղճոյս,
Կամ արի՛ դու ա՛ռ հոգիս, կամ ես աւանդեմ, սիրեկա՛ն [1]։



1) Իւրաքանչիւր տնամերջի բառով սկսւում է նոր տունը։

# ԳԱՆՁԱԿԻ ՅԱՐՅԱԹ

## Ա.

Ախչի՛, արի մի պաչ տո՛ւր, ջանիդ մատա՛ղ,
Ես մեռնում եմ, քեզ ու քու նանիդ մատա՛ղ,
Մատներումդ ոսկէ մատանիդ մատա՛ղ,
Նախշ ես անում քարգահով բանիդ մատա՛ղ,
Կարմիր սուրաթ՝ սպիտակ գիւլ ջանիդ մատա՛ղ։

Լաւութիւնը լաւ կըլի աշխարհումս,
Քեզնից աւել՝ էլ ճար չունիմ ճարումս,
Թէ մարալ ես, եկ ման արի սարումս,
Ես կանգնած եմ իմ տուած իրղարումս,
Հարսանիքդ կու նստի էս տարումս,
Ծըծիդ վըրայ կախած նշանիդ մատա՛ղ։

Աշխարհումս չի ճարուիլ քու դօլիցը,
Թէկուզ բերեն Հինդ ու Ստամբօլիցը,
Խելքս գընաց՝ դուրս եկար էն դօլիցը,
Կաքաւի պէս ձայն ես տալիս քօլիցը
Ջէյրանի պէս, տեսայ՝ եկար չօլիցը,
Անուշ խօսա՛, ճարտար բերանիդ մատա՛ղ։

*Ես քեզ համար թաղուած եմ մեռածի պէս,*
*Գիշեր ցերեկ հալւում եմ շաղուածի պէս,*
*Խելքս տարուել ա ջրի մաղուածի պէս,*
*Ջիգեարս էլաւ Նարինի աղուածի պէս,*
*Նարգիզ, սուսան, սմբուլի քաղուածի պէս,*
*Բեր հոտ առնեմ վարդ ու ռեհանիդ մատաղ։*

*Էշխի բանը խօմ գիտես, ինչպէս կուլի,*
*Մինչ մուրազին հասնիլը, ջանը մէջէն կէս կուլի,*
*Թէ պաչ չի տաս, Թէհրան ինձմէն դէս կուլի,*
*Երկնքի մալաքները քեզի պէս կուլի,*
*Ապա տեսնենք, ում հազածն էդպէս կուլի* [1]),
*Կարմիր շապկիդ, կանաչ* մինթանիդ *մատաղ։*

*Թէ բիւլբիւլ ես, բաս ինչի՞ չես բաղումը,*
*Կարմիր վարդ ես, փռուել ես հարփաղումը,*
*Լուսնիակ ես, չարխի մաղալլաղումը,*
*Ճահգաղի պէս կանգնել ես օթաղումը,*
*Միսկին Բուրջուն պահիլ մի՛ դուլթաղումը,*
*Թամբահ արա թո՛ղ, գիւանիդ մատաղ։*

---

[1]) *Միսկին Բուրջին ինքը բնիկ գանձակեցի էր, բայց ինչպէս այս տաղերից երեւում է, իւր լեզուին Թիֆլիզի բարբառ եա խառնել է։ Այս պակասութիւնը ընդհանուր էր մեր համարեա բոլոր աշուղների համար։*

## Բ

Ամեն միտս ընկնելով էն եարս իմ,
Կորցնում եմ դօղրու ճանապարհս իմ,
Թալլահ չունեմ, ծովըն ընկաւ քարս իմ,
Ախ քաշելով՝ կտրատուեց ջիգեարս իմ,
Աստուած սիրես, բաս ո՞նց կուլի ճարս իմ։

Էշխի ընկնող մարդը կուլի ծուխի պէս,
Թէկուզ աշխարհքըն անի կեր ու խումի պէս,
Էրուեցի, հալուեցի թափած մումի պէս,
Ջրերի հետ խառնուեցի ղումի պէս,
Էրուած սրտով դեգերւում եմ Լէյլի Մաջլումի պէս [1],
Ման եմ գալիս՝ չեմ գտնում սարդարս իմ [2]։

Թահր ա տուել, շուղ բօյիդ սմբուլ կասեն,
Փայլում է ջամալդ, ծովի հուլ կասեն,
Զանիդ տակին թուշ չեն ասիլ, գիւլ կասեն,
Որ դուանդ կանգնեմ, ինձի ղուլ կասեն,
Վարդին կարօտ մայխուլայ բիւլբիւլ կասեն,
Գիշեր ցերեկ չի գալի ղարարս իմ։

---

[1] Մի օր. Ջունուն Վարդան աշուղի Մաջնունի պէս։
[2] Մի օր. Լէյլու համար ման եմ գալիս սարս իմ։

*Հոգուց մոտիկ մէկ աղալաթ խան կուզեմ,*
*Օրինաւոր վճիռ դատաստան կուզեմ,*
*Էս հաղաղիս եարս ինձի տան՝ կուզեմ,*
*Եարիս հետը քէֆ անիլ, սաղ ջան կուզեմ,*
*Աշխարհումս մէկ լաւ սիրեկան կուզեմ,*
*Անսիրեկան ինչ կանեմ աշխարհս իմ։*

*Օղորմի՛ մեռնողին, ապրե՜ն սաղերը,*
*Գարունքն ելնենք, դաստով էրթա՛նք բաղերը,*
*Կանանչ տեղը մորթենք գառան չաղերը,*
*Արնոտ ընի մանիշակի թաղերը,*
*Միսկին Բուրջին ասում ա էս հաղերը,*
*Չէք հաւատում՝ կարդացէ՛ք դաւթարս իմ։*

## Գ.

*(Գիր կապելով)*

Աստուած կու սիրես, մէկ արի ինձ մօտ, եչ այբ րէ (*եար*),
Հազար դարդերիս դուն արա ճէ այբ րէ (*ճար*),
Որտեղ որ գնաս, խնդրեմ ինձ էլ տիւն այբ րէ (*տար*),
Թէ դարդիմանդ ես, սիրտըդ մի պահիլ չա այբ րէ (*չար*),
Իմ էշխի շուշին յանկարծ մի խփիլ քէ այբ րէ (*քար*)։

Ստեղծողը քեզ պահի ինձ համար սէ այբ ղատ (*սաղ*),
Կանչեմ դըռանդ գիշեր ու ցերեկ հօ այբ ղատ (*հաղ*),
Քաղցր խօսք, թող դառնայ դամաղս չայ այբ ղատ (*չաղ*),
Իմ միտքը էս ա, ոչ թէ հիմիկուց՝ վեւ այբ ղատ (*վաղ*),
Բլբուլի նման ամէն դուշ կուզէր բեն այբ ղատ (*բաղ*),
Թէ որ չէր ըլիլ վարդի թփին խէյ այբ րէ (*խար*)։

Մին դարման արա, դարդս քեզ ասեմ բեն այբ ցո (*բաց*),
Ամէն սուրաթդ վարդի ջրով ա թո այբ ցո (*թաց*),
Կըշտէս մի գնալ, թէ չէ ես կուլիմ լիւն այբ ցո (*լաց*),
Իմ խաթրի համար մին սըհաթ մօտս կեն այբ ցո (*կաց*),
Սաղ սրտով ուտենք մէկս մէկի մօտ հո այբ ցո (*հաց*),
Համ էլ սաղ ածենք կեանք *նօբաթ-նօբաթ* բեն այբ րէ (*բար*) [1]։

[1] Այս տողը չի հասկացւում։

*Կըրակուեցի ես սազիցդ, շնորհի՜ թո այբ սէ (լթաս),*
*Էսօր քէփ անենք, թէ չէ՝ էքուց ա պէ այբ սէ (պաս),*
*Սիրտս գուշակես, որ ինձի մին պաչ տուն այբ սէ (տաս),*
*Փիանդազդ եմ, ինչ վախտ որ մօտս գիմ այբ սէ (գաս),*
*Ձատ լաւ սազում ա ջամալիդ ղումաշ խէ այբ սէ (խաս),*
*Ղաշանգ է տուել ուստէն հազուստիդ կեն այբ ըէ (կար)։*

*Դիփ հագնում ես Քիրմանուց եկած շա այբ լուն (շալ),*
*Ունքերդ թուխ ա, աչքերդ նաշխուն չա այբ լուն (չալ)*
*Կարմիր սուրաթ ա հաղութից ղօշայ խէ այբ լուն (խալ),*
*Արծաթէ մաշկիդ ունի ոսկէ նու այբ լուն (նալ),*
*Միսկին բուրջին եմ, առանց քեզ չի ունիմ հո այբ լուն (հալ),*
*Բօյըդ տեսնալիս դառնում ա սիրտըս սէ այբ ըէ (սար)։*

## Դ․

### ՄՈՒԽԱՄՄԱՋ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ

Էջմիածին խիստ սիրուն պայծառ տեսայ,
Երկու հարիւր կանթեղ, յիսուն ջառ տեսայ,
Դիփ ամենը ջէրգա-ջէրգա վառ տեսայ,
Վաթսուն աւէլ հէնց ոսկէ բուռվառ տեսայ,
Լուսաւորչու տաճարը մարմառ տեսայ։

Մարմառ քարից նաշխած էր աւազանը,
Բերին դրին տասներկու գաւազանը,
Որ աջով, խաչով խաչակնքեց սրբազանը՝
Ինքն իրան ափեց մեռոնի ղազանը,
Համբուրեցի, մէկ էսպէս հնար տեսայ։

Ուխտ են եկել հիւսիսայ մինչի հարաւ,
Դիփ լի էին, ոչ սոված 'ին, ոչ ծարաւ,
Տասներկու եպիսկոպոս թափուր ալաւ,
Տիրացըքոնց ձայները խելքս տարաւ,
Նրանց ժամ ասելը ուրիշ բառ տեսայ։

*Հոռոմսիմէն, Ձողակաթը, Գեայըանէն՝*
*Երեքն էլ խիստ զօրաւոր նշան են,*
*Մեծ ու փոքր հինգ հարիւր միաբան են,*
*Աջով, խաչով սիրուն պատարագ կանեն,*
*Երեք հարիւր ոսկէկապ շուրջառ տեսայ։*

*Միսկին Բուրջին ասում ա, չի ’լիլ հատը,*
*Սուրբ Լուսաւորիչն ա տուել խրատը,*
*Որ անիծեց, խոզ դառաւ Տրդատը,*
*Ոսկի, արծաթ, պատկեր ա ամեն պատը,*
*Աբրշումէ խալիչէքը զառ տեսայ։*

## Ե

### ԹԱՋԼԻՍ—ՎԵՐ ԱՒԱԼ ԱԽՐ [1])

Վախտ անցկացաւ, սիրեկանս չի եկավ,
Վո՜նց թէ ես մնացի տխուր հալով, լալով,
Վա՜յ իմ գլխին, էս ինչ եաման դարդ էլավ
Վայ թէ խառնըւեյ ա հարամ հալալով։

Վորըմի տուեցէք մեռնողին սաղով,
Վիթիլ մէջ թասերը, ղըրկեցէք սաղով,
Վառեցէք մեծ կըրակ սա չախմախ, սա ա դով [2]),
Վըէն գցէք ջանս, անի հալհալով։

Վարդի նման հոտըդ քաղցըն է համով,
Վոտիդ տակին մատաղ եմ ես իմ համով,
Վայելչութիւնս քաշի՛, հագնուի համով,
Վոսկի, արծաթ, եաղութ, զումրութ հալալով։

Վազի՛ էս դարվիշէս խըլխինով, աբով,
Վարար ջրի մէջը կը մտնի սա զով,
Վերջը Միսկին Բուրջի Քարամի աբով,
Վեր կա՛ց, ման եկ Ասլու յետնէն հալալով։

---

1) Տողերի սկիզբն ու վերջը վեւ տառով է։
2) Նշանակում է՝ անձ հրահան, անձ աբեթ, կամ զաւ։

Զ.

Քաղցր ձայն ունի իմ սիրեկանին,
Եթէ որ լսի, ղուրբան եմ ջանին,
Բոլոր աշխարհս գլխի քեզ հաւանին,
Ուզում եմ՝ մի խօսք ասեմ քու նանին,
Վախում եմ՝ յայտնի երկրի խանին,
Ո՞նց ղիմիշ կանի ինձ պէս ջիւանին։

Անուշ խօսալը խելքըս տանում ա,
Ազգը աղայ ա, ինքը խանում ա,
Էն ջամալը որ բիրդան բանում ա,
Աչք ու ունքով հոգիս հանում ա,
Էրնա՜կ իմ սրտիս, որ դիմանում ա,
Էսպէս դատաստան նա ինձ անում ա,
Աստուած էլ անի իրան խիզանին։

Իմ սիրեկլի՛, ի՞նչ ա քո կամըդ,
Բոյուրմիշ արա՛, պահիլ մի՛ դամըդ,
Ես ղուլուղումդ կու քաշեմ չամըդ,
Արի՛, փայ անենք տասներկու ծամըդ,
Ինքդ նաբաթ ես, քաղցր ա համդ,
Բե՛ր, ինձ տո՛ւ, պահեմ ջուխտակ շամամըդ,
Էհտիբար չը կայ դունիա ինսանին։

Դիփ հաքնում ես ջամալը գիւլ խաս,
Քո գէյիմդ ա թառլանի լըբաս,

Արդար ձեռնովդ տո՛ւր՝ խմեմ մի՛ն թաս,
Ինչ կուլի մի՛ն հետ դու մեր տունը գաս,
Խալիդ վրիցըն չորս դառնայ պաչ տաս,
Աստուած կու սիրես, ես էլայ անմաս,
Ձուտով ծըծերդ դի՛ր իմ բերանին։

Աչիդ օրերըն հագնում ես ալ,
Բարակ բաղանիդ կապում ես թիրմայ շալ,
Արծաթէ մաշիկդ ունի ոսկէ նալ,
Սէյր ես դուս եկել, գալիս ես ման գալ,
Ով որ տեսնում ա, չի ունենում հալ,
Կարմիր սուրաթդ ա ջաւահրից խալ,
Էլ խօսք չունի մեր գովականին։

Վրէդ սարքել ես զինեալթ ու ռախտը,
Թէ թագաւոր ես, նի՛լ դու քո թախտը,
Կուզեմ կուշտդ գալ, ինձ ասա՛ վախտը,
Արի՛, մի՛ կտրիլ դու իմ շինախտը,
Էրնա՛կ էն մարդուն՝ կու բացուի բախտը,
Ձեռնիցըս բռնի՛, քաշի դրախտը,
Էս Միսկին-Բուրջուն տո՛ւ դատաստանին։



# ԹԻՖԼԻՍԻ ԲԱՐԲԱՌ

## Ա.

### ԴՕՂԱՄԱ

Անարատ մայր կոյս, հաւատ սէր ու յոյս,
Յատուկ երկնային լոյս կաս, Աստուածածին,
Կաս, չիս կորցնի արգն, արդարի մազն,
Ինձի իմ մուրազն տաս, Աստուածածին։

Տարս էկար հասակին, Քրիստոս քիզ ընակին,
Առաւ սէր փափակն բանին դուռ փակին,
Օհանէզ գուշակին լոյս էլաւ ազգին,
Անթար [1]) պսակին հարս, Աստուածածին։

Հարս էլար երկնային, ով կայ քո թային,
Էլար Աստըծու փային, ինձ մի տա գային,
Երբ որ մահս գայ, ինձ ցոյց անուշ ձայնին
Միքէլ Գաբրիէլային սաս Աստուածածին։

---

[1]) Անթառամ։

*Սաս լաւ իմացյ անին ինձ բաքի բանին,*
*Դըժուխկէմէն հանին դըրախտն տանին,*
*Քու Ալւան-Օղլանին մի՛ տա սատանին,*
*Միջնուրդ դատաստանին գաս, Աստուածածի՛ն։*

---

## Բ

### ՋԱԻՍԱԹԼԱՄԱ

*Աստուած առաջ ինձ իմ հօրն պարգևեց,*
*Յետոյ նընդայ իմ մօր արէն դամարին,*
*Մէ ամիս՝ էն արէն դամարին կացայ,*
*Երկու ամսուան էլայ արգանդ կամարին։*

*Երիք ամսուան՝ արունս մարմին դառաւ,*
*Չուրս ամսումն՝ յօթուածքս շարժիլ արաւ,*
*Հինգ ամսումն՝ մէրս շնողստղ [1]) ճարաւ,*
*Վից ամսումն՝ ծնողքս բարցն ռատ արին։*

*Օխտն ամսումն՝ մօր արգանդիս շուր էկայ,*
*Ութ ամսումն տեսնողներուն դուր էկայ,*
*Ինն ամսումն՝ էս աշխարս նուր էկայ,*
*Գալուց էի, նըհախ պատճառ տատ արին։*

*Մէ տարեկան՝ հէնց իմ բանս լաց արի,*
*Երկուսումն՝ աչքս միտքս բաց արի,*
*Իրիքումն՝ խօսալս իմաց արի,*
*Չուրս տարեկան՝ կիրակուրս շատ արին։*

---

[1]) *Անհասկանալի։*

Հինգ տարեկան՝ դուռն դուռն գալ կամ ասի,
Վեցին՝ փէտէ ձիուս լաւ լըկամ ասի,
Օխտին՝ աշկիրտ գնացի, գրով ժամ ասի,
Ութին՝ ծնողքս իրանց որդի համարին։

Ինը տարեկան՝ ղալամն ձեռիս առայ,
Տաս տարեկան՝ ամէնի սիրեկան դառայ,
Տասն ու հինգին՝ ձի նստեցի աշկարա,
Ճարն չփութն բերին վրէս ջամ արին։

Քսան տարեկան՝ հէրս ինձի պսակից,
Վուրթիք էլան ինձի, էլան համակից,
Քսանուհինգին՝ ձայնում էին քամակից,
Եարսունում նրանք էլ հիտս բան արին։

Քառսընում՝ հանդայ ամենայն բանով,
Ճամփէս ուղղեցի դըրուստ ղաղաստանով,
Մինչեւ յիսունն գնացի էս ջանով,
Վայելեցի՝ ինչ որ պէտք էր աշխարին։

Վացունում՝ քիչ մէչկումս կռացայ,
Կամաց-կամաց միղքերէմէս հռացայ,
Օխտանասնին՝ ցոփ կինքս մոռացայ,
Օրերուն իմ խըրատում, հոգիս զարդարին։

Ութսունում՝ գնացի նընդայ տիղումն,
Բարեկամնիր կանչեցի քաղաք գիղումն,
Ասի՝ Թանգ հախ տըւէք ինձ իմ գիղումն,
Ասին՝ լաւ է, գնացին անգճի տակ աբին։

*Ինըսունին տուն ու տիղս գուչքեցի,*
*Աչքս պատին՝ օձօւքնիրուն թեքեցի,*
*Հարուրումն՝ ղուրթ վուտնիրս ձըգեցի,*
*Գան ապաշխարողնիր, պատանքս կարին։*

*Չարն ու բարին հոգուս համար արին դատ,*
*Չարըն սաբուլթնիրով դուս եկաւ իմաստ,*
*Խաչն օգնից, աջ ճանապարհ էրի ռաստ,*
*Կորան սատանէքն, դաղբիղաղ արին։*

*Ալւան-օղլան, քու խորհուրդն քանի՛ է,*
*Գնացիր տեհար՝ Քրիստուս դադաստանի է,*
*Էրիտ հրաման դրախտն քիզի բանի է,*
*Գնա՛ վայելէ՛ անհատնիլի ամբարին։*

---

## Դ.

## Ե Դ Ա Ք Լ Ա Մ Ա

*Արի, գօզա՛լ, էլ դուն մենակ մի՛ ման գա,*
*Իմ գլուխն առանց քեզի չի բան գայ,*
*Դարբէդար իմ, աշխար բէ աշխար նընգայ,*
*Էնդու համա սէրդ սըրտումս տընկա՛,*
*Հուտդ համեղ ինչպէս անուշ է խնկայ։*
*Անուշ խնկայ հուտ ունիս,*
*Մըգամ իսկի փուլթ ունի՛ս,*
*Էրեսիդ սիայ շարած՝*
*Խալերդ պուտ-պուտ ունիս,*
*Դաստա մազիդ արալուղին խափանգ ա։*

*Ինչ քիզ տեսայ՝ էնդուց դէսը ջանիս չիմ,*
*Դարձկար էլայ, էլ իսկի իմ բանիս չիմ,*
*Սիրտս պառաւ, մըգամ նովջըվան ես չի՛մ.*
*Նովջըվանին եար պիտի,*
*Եարին էհտիբար պիտի.*
*Ամենևիդ խըրատ տամ,*
*Սաղ բաղիփն չար պիտի,*
*Վատ ջուղաբն քու սիրողիդ թըւանք ա։*

Թաք, սիրեկա՛ն, քու ծառայ դուլ իլիմ,
Եաղ եար չուզիմ, ես քեզի դարուլ իլիմ,
Դուն կարմիր վարդ՝ ես դարիբ բլբուլ իլիմ,
Բուլբուլ եմ, դար քաշում իմ,
Ջանս ուզուրիդ մաշում իմ,
Միշտ քո դուռդ կըտրիլ իմ,
Ահ ու դոզով եաշում իմ.
Վախեննում իմ՝ ես չը նընգնիմ խափանգայ։

Նազլու գիլրա՛ր, ես քիզ աւել տէր չունիմ,
Իմն դուն իս, եաղ եարի հիդ սէր չունիմ,
Էս աշխարէն առանց քիզի խէր չունիմ,
Խէրն Թամահութինն ա,
Մեր միզաց բարկութինն ա,
Քիզ հիդ մէ խիտիլաթը,
Ումրը ու վայելչութին ա.
Լիզուդ բլբուլ, պռօշնիրդ բաղանդ ա։

Ալւա՛ն-օղլա՛ն, եարդ աշխարհս Թային ա,
Ձուտ ճար կօնէ, Թէ սրտիդ կայ դային ա յ,
Վաղ փըչանա՛յ, ով քիզ ըլի խային ա յ,
Խային սիրտը խար կուլի,
Օրը դարրէդար կուլի,
Ալւա՛ն-օղլա՛ն, մի՛ հոգա՛,
Մէ օր քիզ էլ ճար կուլի.
Կարեղի է եարդ նընգնի քու ճանգայ։

---

## Ե

### Ղ Ա Փ Ի Ա

Բովանդակ ման էկայ ես, բեզարեցայ,
Չէլաւ, չը րաստ էկաւ իմ սրտի համդաշ,
Դարդերս սրտիս վրէն դառել է խուդուկ,
Ի՞նչ անիմ, ո՞ւմ ասիմ, չունիմ մէ սրդաշ։

Ում վուր սրտիս բանն ասի ծածկաբար,
Մէկն տասն շինից նա, գըցից աշխար,
Էլ օմքնու չեմ կարում անի էհտիբար,
Դարդս մօտ է էլի, խըլքէս էլայ շաշ։

Երկու եարի մէջն թէ նընգել է սէր,
Ով որ Աստըծասէր է, պէտք է խօսի խէր,
Մէկ մէկումէն չըլին, չը մնան անտէր,
Լաւ օրն անց կու կենայ, դիփ ախ ու վաշ վաշ։

Նազլու եարի սիրտն ինձմէն էր րազի,
Անբաղդ լիզուն չորնայ, ինձ էրիտ ջազի,
Սէր ատիլ շուր տըւողն ոչ գայ մուրազի,
Հէստի ցաւով մեռնի՝ չը հախ անին նաշ։

*Իմ սրտի խորհուրդին չէլաւ կատարում,*
*Ասում էք՝ դընջացի՛, չունիմ դաթարում,*
*Հայի՛փ, Ալւան-օղլա՛ն, դետ ու ջըրատարում,*
*Մէ հաբազ եարէմէն էլար հալ ու մաշ։*

## Զ

### ՇԱԽԱԹԱՑԻ ՈՒԽՏՋԷԴ [1]

*Ուրացիլ իմ քիզ, Արարիչ, էնդուր չարիս չար էլաւ,*
*Խափանուիլ ա ճանապարս, կեանքս դարբէդար էլաւ,*
*Տարեկուսեցաւ անառակն, դէպ ի հայրն գընաց,*
*Նընգաւ ոտին, մեղայ կանչից, Նըրան էլ էնդով ճար էլաւ։*

*Ուրիշն էսպէս դար չը քաշէ, ինչպէս ես նիղացիլ իմ,*
*Խնամող իս, ամենայնկարող, մըտքիս դուռն բացիլ իմ,*
*Տանջուիմ մաքսաւորի պէս, բերանքս ի վէր լացիլիմ,*
*Նորոգէ ողորմութիւնդ, չուն մարդս տըկար էլաւ։*

*Ունիմ յոյս, Յիսուս, քիզանից, խոստացար սուրբ առակին,*
*Խնդրեմ արձակէ, ազատէ վասն քո փուշ պսակին,*
*Տըրտմելով օգնական էլար աջակողմն աւազակին,*
*Նայեցիր քաղցրագոյն աչօք՝ մէ խօսքով արդար էլաւ։*

---

[1] Չի որոշւում։

*Ո՛ւր է գըրիչ, Ալւան-օղլա՛ն, անցքդ մէ մէկ գրէ՛,*
*Խոնարհուէ՛, չոքէ՛ քահանին, գործքդ առաջին փռէ՛,*
*Տէրն գըլթած է, ողորմած՝ բալքա քու միղքն ներէ,*
*Նըման ըլիս յիշածներուդ, խընդիրքդ համար էլաւ։*

---

ԲՈՒԴԱՂ ՕՂԼԱՆ

---

Դ Ա Ր Բ Ե Դ Ի Ա Ր

---

ԹԻՖԼԻՋ-ՆԱՐԳԻՋ

---

Լ Ի Օ

---

Ն Ա Ջ Ա Ր

---

Մ Ե Լ Ք Ո Ի Մ

---

Ն Ա Ր Ի Ն Ջ-Օ Ղ Լ Ա Ն

# ԲՈՒԴԱՂ ՕՂԼԱՆ

## ՄՈՒԽԱՄՄԱՋ

Ո՛վ զինաւոր սուրբ Գէւորգ, իս քիզի լալով աղաչիմ,
Իմ ցաւուն փրկութին տաս, քու դուռն գալով աղաչիմ,
Քեզ երկիրպագութին տամ, ուղիղ վուղրալով աղաչիմ,
Չարչարանքիդ կտակն, թուղթն կարդալով աղաչիմ,
Իմ աչաց ցաւն կտրիս, քիզ մտիկ տալով աղաչիմ։

Չորեք զիմացէն գալիս ին, միշտ քու ուխտաւուրն շատ է,
Քանի վուր ցաւալից գայ, զօրութիւնդ կու ազատէ,
Ճկեղեցիդ պայծառ է, շատ գովելի անապատ է,
Քիզ ամա դիփուն մէկ է, քէթխուդայ գայ, թէ աղքատ է,
Ով գուքայ՝ կու փրկուի կերթայ, ցնծալով աղաչիմ։

Քու դուռն համբուրելու, տիս, ինչքան հիւանդ է գալի,
Քու շնուրհաւուր անուանին վուղջն հնազանդ է գալի,
Ով հաւատով խնդրում է, ողորմութիւնդ անդ է գալի,
Վուղջ աՀ ու դուղ քաշելով, դիփուն քիզի բանդ է գալի,
Մոմով ու խնկով գուքան, խէչհամբուր տալով աղաչիմ։

Քեզի վուր բանտը դըրին, Ծըրըրդութիւնն չը ուրացար,
Վասն սէրն Քրիստոսի համբերեցիր չարչարուեցար,
Արքային տիսալիք [1]) ասիր, ողորմութեան դուռն բացար,
Սուրբ մասունքդ բազմնցրիր, չորէք դիմաց բաժանեցար,
Միշտ հիւանդին կու փրկիս, քիզ համբուրելով աղաչիմ։

Քանի ջանէն տկար գայ, դիփուննին կու բերիս ջանին,
Պէտք է ամենիքեանն խնդրանօք աղանչաք անին,
Աստուած փառաւոր պահէ տէր Գէորգ աւագ քահանին,
Իրան փառք բերնով օրհնից Թիֆլիզցի Բուղաղ-օղլանին [2]),
Իրան «Պահպանիչն» ասաւ, ժամէն դուս գալով աղաչիմ։



---

[1]) Չէ հասկացւում։

[2]) Թիֆլիսեցի էր Բուղաղ-օղլանը. Քիչիկ-Նովայի ուսուցիչն էր. աշակերտը վարպետից, համարեա, գերազանցուեց և անիծուեց նրանից։ Բուղաղ-օղլին մեռաւ ծերութեան մէջ 1842 թուին։

# ԴԱՐԲԵԴԻԱՐ

## *Թ Է Ջ Լ Ի Ս*

*Մէ տարի գնացինք Չիթախինց բաղը,*
*Իս էս թաւուր վերանայ բաղին ինչ անիմ,*
*Օրն իրիք անգամ կուիւ ին գալի,*
*Կուզօյին ջուղար տամ, կաղին ինչ անիմ։*

*Բուխկը գլուխ չէրիտ, չէկաւ զազարը,*
*Կանանչի էլ չունիմ, ղրկիմ բազարը,*
*Էս բաղը ինձ գցից էսպէս ազարը,*
*Իս իմ տարեկուսած օղլուշաղին ինչ անիմ։*

*Տօտը չորցիլ է՝ չէ բանում չարխը,*
*Ձատ չալիշ էկանք, չը դուս էկաւ արխը,*
*Թամաշա ին գալի վուղջ քաղկի խալխը,*
*Իս էլ նստիմ էս ջրի ափը, ինչ անիմ։*

*Ձարին բարգաշտ էլաւ, չէրիտ սահարին,*
*Խաւիրը չորցիլ է, չէկաւ գուլարին,*
*Մրտիկ տըւէք իմ հինգ ու վից ծառ ունարին,*
*Իս իմ տարեկուսած աղին ինչ անիմ։*

*Էս խաղն ասաւ Դարբէզիարը,*
*Թէգուզ գնաս մանգաս Հինդ ու Դիարը,*
*Հիդնուհիդը կուտլօյացաւ խիարը,*
*Մըտիկ տըւէք չուր չուր Թաղին ինչ անիմ։*



# ԹԻՖԼԻԶ—ՆԱՐԳԻԶ

## Ա.

### *Թ Է Ջ Լ Ի Ս*

*Ծունդը ու աղօթք անինք ճշմարտութենով,*
*Առ Աստուած աղաղակինք միշտ ամենայն ժամ,*
*Հաւատով հաւատանք մենք սուրբ Գեղարդին,*
*Տանք երկրպագութին միշտ ամենայն ժամ։*

*Յիսուսի սուրբ Գեղարդ, Քրիստոսի սուրբ խաչ,*
*Մրծրնայ հայրապետի Յակոբայ սուրբ աջ,*
*Գրիգոր Լուսաւորիչ կանգնի առաջ,*
*Միզ հաւատարիմ լինի միշտ ամենայն ժամ։*

*Երբ որ վէր կու բերին սուրբ Յակոբի ջուր,*
*Տարը ժաժ կու նրնգնի, գուքայ մեր կուռ,*
*Մորեխին կու կոտրէ, կու քաշէ սուր,*
*Միզ կուրախացնէ միշտ ամենայն ժամ։*

*Միզմէն վերացել է խրղճմրտանք սէրը,*
*Որդումէն պատիւ չունէ իր հէրն ու մէրը,*
*Ընդուր է բարկացի մեր ստեղծող Տէրը,*
*Պատիժն աւելցել է միշտ ամենայն ժամ։*

*Ծկէք միջնուրդ գցինք Ցիսուս միածին,*
*Անարատ մաքուր կուս Աստուածածին,*
*Իջման տիղ զօրաւոր սուրբ Էջմիածին*
*Մեզ ըլին օգնական միշտ ամենայն ժամ։*

*Ինչ մուղամ գուքայ սուրբ Գեղարդն քաղաք,*
*Հնարքներ կու նընգնի բովանդակ աշխարք,*
*Գարտք ունինք հաւասար, Աստծուն տանք փառք,*
*Կուտայ ողորմութին միշտ ամենայն ժամ։*

*Ես Թիֆլիզ-Նարգիզ՝ ծառայ սուրբ Գեղարդի,*
*Գարտական ինք, աղօթք անինք բոլոր իր վախտի,*
*Նա կու թափէ ամեն չարէն բէքաղտի,*
*Թէ ճշմարիտ կուլինք միշտ ամենայն ժամ։*

Հ

Բ

## ՄՈՒԽԱՄՄԱԶ

Նազլու եարս ինչ էլաւ, անգին քարս ինչ էլաւ,
Սար ու ձոր ման եմ գալի, ծաղկած ծառս ինչ էլաւ,
Նողդասս աւալ ախր, քարդիգարս ինչ էլաւ, [1])
Օսկէ վարաղով գրած գառ դաւթարս ինչ էլաւ,
Հընդըստանեմէն էկած նուրդիգարս ինչ էլաւ,
Էս աշխարքիս իմ կեանքս բուզիգարս ինչ էլաւ։

Մէ եար ունիմ զովելու, ինչ որ ասիմ, սազ գուքայ,
Թաղցը խոտիլաթ գիտէ, հետն սազ ու բազ գուքայ,
Ում տանը ղօնաղ կերթայ, տակն փխանդազ գուքայ,
Ինքը մէ դրօշի նըման, ջէյրանի պէս ման գուքայ։

Էշխից ջունուն եմ դառի, ման իմ գալի աւարա,
Ինքդ քիզն ու քիզը սրտիդ մէջը փիքը արա,
Ձատ ախ ու վախ քաշելէն սիրտս դառել է եարա,
Լերդ ու թոքս խորվիլ է, ջիգարս է փարա փարա,
Գօզալ, Աստուած կու սիրիս, իմ դարդէրուն բահմ արա,
Բլբուլի սիրեկանն վարդի խարս ինչ էլաւ։

---

1) Երեք երգերի սկսուածքներ են։

Ծոցէմէդ հուտ է գալի, հիլ, միխակ, դարիչին է,
Աջայիբ սէյրանգահ է, մէջն Չինումաչին է,
Ծոցումըդ է մէ ջուխտ շամամ, ջաւահիր է, անգին է,
Էդ քու էրէսիդ խալն թամամ աշխարքի գին է,
Ծովի միջէմէն հանած լալ գոհարս ինչ էլաւ։

Ով սիրելի բարեկամք, իմացիլ էք, տեհիլ էք,
Իմ եարս շատ սիրուն էր, ով տեսիլ էք, մայիլ էք,
Գըտըրտէլու գընացէք, չորեք դիմաց փայ էլէք,
Էս իմ կեանքս խաւրիլ է, աշխարումս զայ էլէք,
Թիֆլիզ-Նարգիզի եարը Թաղ Թումարս [1]) ինչ էլաւ։



1) Չի որոշւում։

# ԼԻՕ

Տէր Թագաւո՛ր քրիստոնէին, դու լե՛ր օտկակար քաղաքին,
Ինհայ ու հարգիդ չգայ էսպէս բուզիգար քաղաքին,
Վասն քու Քրիստոսի խաթրի, մի՛ տա դարդ ու սար քաղաքին,
Մէ կանէն սուր, մէ կանէն սով ննգիլ է մի չար քաղաքին,
Ինհայ ու հարգիդ չգայ էսպէս բուզիգար քաղաքին։

Մահը չուրս կողմը կապլիլ է, էլ չէ մնացի խատակ տիղ,
Քաղաքը վերանայ էլաւ, խալխը քաշուեցաւ գիղէ գիղ,
Միդաւորը պրծնում է, կոտորւում ին դառնիրն անմիղ,
Եարաբ էս ի՛նչ դժար ցաւ է, ո՛նց չարա է իլում, ո՛նց դիղ,
Գնայ ու էլ չը հիտ դայ էսպէս բուզիգար քաղաքին։

Եարաբ էս ի՛նչ ժամանակ է, մոռացիլ է որդուն հէրը,
Մօր ջիգարը չէ կսկծում,—ցամաքիլ է սրտի սէրը,
Հիւանդն ախ ու վախ է քաշում, չէ տէհնում քուր ու ախպէրը,
Երլուն որ էսպէս դարդումն է, ո՛վ է ղարիբնիրու տէրը,
Ղարիբ ղուրբաթ ո՛վ կու յիշէ էսպէս համպւար քաղաքին։

Ամէն սովն ու սուրը տէհանք, հիմի հանդիպեցանք մահի,
Մէ կոնէն հիւանդանումին, խօսող չունին սիրտը շահի,
Կռապաշտի բան ինք բռնի, անունմիրս ունինք հայի,
Արա Աստուած վո՛ւնց աջողայ, վո՛ւնց մտիկ տայ եար քաղաքին.
Տէր Թագաւոր քրիստոնէին, դու լեր օտկակար քաղաքին։

# ՂԱԶԱՐ

Էջմիածին խիստ գեղեցիկ զանէզան,
Տառայեմ քու սուրբ աթոռիդ, սուրփազամն։
Մէ հէնց պայծառ կու փայլի՝ նման է արեգական,
Չորս կողմն լաջլի վարդած կու երևայ զարմանազան,
Աջից ունիս լալ ու հաղուլթ, ալմաս-թրաշ սուրբ գաւազան։

Գիշերանց քաղցր ձայն կու տայ, կու բացուի դրախտի դուռն,
Միջին բազմացըրած է Լուսաւորչու աջու կուռն,
Օսկէ ղալամով քաշած է գիւլստանու վարդն ու սմբուլն,
Վրէն շուռ գուքայ ճխճխալով քաղցրաձայնիկ բլբուլն,
Օսկէ մարմառ սուրբ սեղանն խիստ գեղեցիկ է, սուրփազամն։

Կոյսն մայրն միր Աստուածածին չի կայ նման իրան հատն,
Բարձր զանգակատանը կախ տուած ունի սհաթն,
Չախակողմն Գեայրանէն ա, աջակողմն Ճողակաթն,
Սուրբ հայրն մեր Լուսաւորչուն չարչարել ա Տրդատն,
Կոյսն մայրն մեր Հռիփսիմէն խիստ գեղեցիկ զանազան։

Ջուխտ սարկաւագով շուրջ գուքան սուրբ սեղանին գլուխ տալով,
Միաբանքն զարդարուած խաչ ու խաչվառով, շուրջառով,
Ես անարժան Ղազարս մայիլ էլայ մտիկ տալով,
Ով ոք որ ինձ կու յիշէ, արժանանայ դրախտին․ բարով,
Եփրեմ սուրբ կաթուղիկոսն խիստ գեղեցիկ զանազան։



*Քահանէն մօտ չէ գնում, թէ հիւանդն իր դարդն ասի,*
*Ճատն անխոստովանանք է մեռնում, արժանչէ՚ լում էն սուրբ մասի,*
*Լիօն իմ, աղաչում իմ՝ Աստուածածինն բարեխօսի,*
*Էհա ու էլ չը հիդ գայ էսպէս ըուղիգար քաղաքին,*
*Տէր Թագաւոր քրիստոնէին, դու լե՛ր օտկակար քաղաքին։*



# ՂԱԶԱՐ

Էջմիածին խիստ գեղեցիկ գանձգան,
Ծառայիմ քու սուրբ աթոռիդ, սուրփազան։
Մէ հէնց պայծառ կու փայլի՝ նման է արեգական,
Չորս կողմն լաջի վարդած կու երեայ գարմանագան,
Աջիդ ունիս լալ ու հաղուլթ, ալմաս-թրաշ սուրբ գաւազան։

Գիշերանց քաղցր ձայն կու տայ, կու բացուի դրախտի դուռն,
Միջին բազմացրած է Լուսաւորչու աջու կուռն,
Օսկէ ղալամով քաշած է գիւլստանու վարդն ու սմբուլն,
Վրէն շուռ գուքայ ճխճխալով քաղցրաձայնիկ բլբուլն,
Օսկէ մարմառ սուրբ սեղանն խիստ գեղեցիկ է, սուրփազան։

Կոյսն մայրն միր Աստուածածին չի կայ նման իրան հատն,
Բարձր գանդակատանը կախ տուած ունի սհաթն,
Ձախակողմն Գեայրանէն ա, աջակողմն Ծողակաթն,
Սուրբ հայրն մեր Լուսաւորչուն չարչարել ա Տրդատն,
Կոյսն մայրն մեր Հռիփսիմէն խիստ գեղեցիկ գանագան։

Ջուխտ սարկաւագով շուրջ գուքան սուրբ սեղանին գլուխ տալով,
Միաբանքն զարդարուած խաչ ու խաչվառով, շուրջառով,
Ես անարժան Ղազարս մայիլ էլայ մտիկ տալով,
Ով ոք որ ինձ կու յիշէ, արժանանայ դրախտին. բարով,
Եփրեմ սուրբ կաթուղիկոսն խիստ գեղեցիկ գանագան։



# ՄԵԼՔՈՒՄ

Նինօ ջա՛ն, մեռնիմ քեզ համար,
Ունքերիդ գրել ես կամար,
Եարաք էս ի՛նչպէս դատաստան է,
Կամ հոգիս հանէ,
Թէ որ հեքիմ ես՝ ցաւս հանէ։

Հագել ես ատլաս ու խաս,
Անգլին է քու երեսի խազ,
Թէ դուն իմանաս իմ հալ,
. . . . . . . . .

Քու անունն է Թէլլու Թամար,
Մէջքիդ ունիս ոսկէ քամար,
Եարար վո՛ւնց իս դու ինձ համար,
Որ իմանամ դամար դամար։

*Դու նստել ես բարձր հովին,*
*Փափսում է դօշիդ մովին,*
*Էրնէկ քու ծուցի քնողին,*
*. . . . . . . . . . .*

*Եարաբ Նաւթլուխ ինչպէս տեղ է,*
*Ոնց քաղաք է, ոնց թէ գեղ է,*
*Գընալդ Մէլքումի մեղ է [1]։*



[1] Երկրորդ, չորրորդ և հինգերորդ տների վերջին տողերը պակասում են։

# ՆԱՐԻՆՋ ՕՂԼԱՆ

Դ Ի Ւ Ա Ն Ի

*Քու էշխէմէն ջունուն դառայ, է՛ ըէմուրվաթ եար ինձի,*
*Հիւանդ եմ՝ էշխից կռնէմէն տուիլ իս ազար ինձի,*
*Չիմ գիդի ո՛ւմը գնամ, դարդ ու հալս արզ անիմ,*
*Ռահմն արա՛, մօտս արի՛, տուիլ իս իզըար ինձի։*

*Նազանի՛, էշխէդ էրուած իմ, տես սիրտս ինչպէս վառ ա,*
*Օրէ ցօր, սահաթ թէ ըէսահաթ, մաշուիցայ, ջունուն դառայ,*
*Թէ կամենաս, զուլուզ անիմ, ես քեզի դառնամ ծառայ,*
*Գիշեր ցերեկ մօտդ մնամ, թաք պահես նօքար ինձի։*

*Ո՛վ սիրեկան, զուլս ես էկի, մանիս գալի աղի պէս,*
*Խիլքս գլխէմէս հանեցիր, խօսում իմ ջունունի պէս,*
*Չիմ գիդի՝ ինչ հանդիպից, էլ չիս գալի վաղի պէս,*
*Աչքս ճանապարհիդ մնաց, ղրկէ մէ խաբար ինձի։*

*Էս օր իմ եարին տեսայ, ման գուքէր բաղի մէջն,*
*Կօնա թայգուլ էր կապում Նարգիզի բաղի մէջն,*
*Նարինջ-օղլա՛ն, զօնաղ ըընդգի եարին՝ օթախի մէջն,*
*Թէ Աստուածդ կուսիրիս, կռնէս բռնի՛, տա՛ր ինձի։*



## Ս.

Անզած ալմ, գովքդ ասիմ, Տալաւրէցի շուն Առաքել,
Բնութիւնդ աղուէսի է, ինքդ մէ մէյմուն, Առաքել,
Զուստ է չուստ բարձրանում իս, վունց որ մէ թռչուն, Առաքել,
Արի ինձ մի սպանիլ, կտրէ սրտիդ խուն, Առաքել,
Պէտկ է որ մէրին գնաս, շալկով բերիս հուն, Առաքել։

Մինձ ու մինձ պատռտում իս, հէնց գիտենաս՝ շահզադայ իս,
Ազգով իսկի վունչիչ չիս, ինքդ մէ անմիդ գաղայ իս,
Դրսէմէն հոգիս էրիս, տակ է տակ հարամզադայ իս,
Փուրըդ օձերով լիքն է, քիդ կօսին թէ սաղա իս,
Թէ միր քուչէմէն անց կացար, գլխիդ կոծիմ ձուն, Առաքել։

Ինչկուէլ հիմի բարեկամ էինք, հիմի էլ չունինք էն սէրն,
Դուն վուր կէհաս Մարնէուլ, քիդ կու սպանէ տանուտէրն,
Վրէս եասավուլ գրգեցիր քու էդ քինթ-կտրած ախպէրն,
Ճատ վուր վրէս բարկանաս, բալքայ....,
Լաւութիւնը չիմացար, անիս թողութիւն, Առաքել։

Տիս՝ թէ քու գովասանքն ինչպէս շնուրքով շարիլ իմ,
Քիդ պէս մարթկերանց պարտքը լալով աչկով վճարիլ իմ,
Մարնէուլի ջաղացնիրն քու դովլաթէմէն ճարիլ իմ,
Քիդ էլ շուրերով թաղիլ իմ, վրէդ գումթան վարիլ իմ,
Էկար, կուռով ուղէցիր էրկու մանէթ, շուն Առաքել։

Համ կարճ իս, համ անշնուրք, աշխարքումս չունիս սոյին,
Ջատ ուզում իս բարձրանալ, ոչ ով չի հասնում քու բոյին,
Արի ինձմէն զգոյշ կացիր, իս քիզ կուգամ մէկ օյին,
Անմիղ բէդամաղ արիր էս խիղճ Ջամչի Մէլքոյին,
Պէտք է վուր ճաշը շինիս, ղրկիս դիբա միր տուն, Առաքիլ։

## Բ

Բարակ մէչկիդ օսկէ քամար բանդ պիտի,
Քու սիրողը քիզ պէս դարդիմանդ պիտի,
Քաղցր խօսիս, լիզուդ շաքար ղանդ պիտի,
Միր մէչում մէ օրթում ու անդ պիտի,
Սիրեկանը գանա անփրսա́նդ պիտի։
Անփրսանդ իս աջայիբ,
Ձկայ քու մէջ այիբ,
Թէ դուն ինձ մոռացար,
Ճատ կոսես հայի́փ հայի́փ,
Քու սիրողը քիզ պէս անփրսանդ պիտի։

Քիզ փիանդազ օթախը զարթարիլ իմ,
Նարինջ թուրինջ թախչերում շարիլ իմ,
Անուշ հոտով մուշկուլու ամբարիլ իմ,
Քիզ թազադան ճարիլ իմ,
Սիրտս հաւասարիլ իմ,
Իմ դուշմնի աչկիրը
Երկու ասղով կարիլ իմ
Քիզ փիանդազ խալով թաքնաբանդ պիտի։

Փրսանդ գթնիմ՝ մէկ օր կուլի՝ քիզ ճարիմ,
Դուն զարափ իս, ես քի համա մահանդ իմ,
Ճախսու խանի պէս քեզնից փրանդ իմ,
Ինչի́ փրանդացրիր,
Էրկու աչկով լացացրիր,
Եարաբ քեզ ինչ գէթ արի,
Ինձ քիզանից հեռացրիր.
Քու գթնողի հալբաթ մէ փրսանդ պիտի։

Քանդուի՛ բաղիփնիրու տունը, լեզուն մնջանայ,
Բալքամ էնդով էս իմ սիրտս դնջանայ,
Ձեռին բռնած չայի պէտկ է փնջանայ,
Փունջ խմէ, մեր տուն արի,
Արա մենակ դուն արի՛,
Ճամփին դուշման շատ է,
Մի՛ քնի, զարթուն արի,
Բաղիփնիրու լիզուն բարուբանդ պիտի։

Քանդուի բաղիփնիրու տուն ու տեղիր,
Էրթան կորչին, գնան գիրա գեղիր,
Հիւընդանան, էլ չի ճարին գիղիր,
Դեղով սիրտս դաղ չինից,
Նա ինձի տուցաղ չինից,
Ճամչի-Մէլքօն փիքր արաւ,
Մէ աջայիբ խաղ չինից,
Ճամչի-Մէլքօ, քիզ էլ ինչ նոխսանդ պիտի։

## Գ.

Խարագ-Ջալլ՛, իմ տաս շահին ինչ արիր,
Ճրաքուս կերար, իմ թանգիրէն ինչ արիր։

Փողոցումն ման իս գալիս դիփ թաքուն,
Ի՞նչ սրհամթ ինձ ռաստ էկար. . . . . . .
Մում հալեցիր, կուլ տուիր իմ ճրագուն,
Մուգդըրդ կերար, բաս քու մայէն ինչ արիր։

Մում ուզելիս՝ թալ տուեցիր, խափեցիր,
Էսօր էքուց դըցելով՝ քիզ թափեցիր,
Գիլի նման իմ ճրաքուն լափեցիր,
Աշկիրտի ու քարգարի փայն ինչ արիր։

Հարցրեցի աշկրտին ու քարգարին,
Մումս ինչ արիր, ախր թամամից տարին,
Ճրաքուն փուխ ըլի ձիր վուրդկէրանց չարին,
Միջինն տարար, ջուալիս թայն ինչ արիր։

Առաւօտը գնացի դուքանի դուռը,
Պարտկանտէրիրը բռնիլ էին չուրս կուռը,
Էրկու շահի հանից դըրից իմ բուռը,
Ինձ խափեցիր, էն մէկ հայուն ինչ արիր։

Գանգատելով պօլիցին իմաց արի,
Դէսէտնիկ բերի, դուքանը բաց արի,
Բան վուր չըկէր՝ գլխին տուի, լաց արի,
Ճամչի Մէլքօ́, էն ղալմաղալն ինչ արիր։ [1]

[1] Շամչի Մէլքօն ճրանգուէ մոմ ածող է եղել։

Դ.

# ԴՕՇԱՄԱ

Հաւատովս հաւատամ,
Իմ փուտովս դամ
Օրը իրեք անգամ,
Ժամ, Աստուածածին։

Տանիս արքայութին,
Տուր թողութին,
Քի նրկիրպագութին
Տամ, Աստուածածին։

Աստուած է իմ ճարը,
Նա է իմ ճարը,
Թուղ իս քաշիմ դարը,
Էս դարդ ու սարը,
Չի քաշի արդարը
Ղամ, Աստուածածին։

Չոքեցաւ ջանիս,
Ասի հոգիս հանիս,
Դըրախտը տանիս,

*Թաք ինձ նահախ չանիս,*
*Ջուտով չսպանիս*
*Իմ միղքս, քահանիս*
*Լամ, Աստուածածին։*

*Ես Ջամչի-Մէլքօն իմ,*
*Ինձ նահախ չէրիս,*
*Միղաւուրներուն հաւատ կու բերիս.*
*Համ աշխարիս տէր էս,*
*Համ դատամէր իս,*
*Համ մարդասէր իս,*
*Համ Աստուածածին։*

## Ե

### Թ Ի Ֆ Լ Ի Ս

Ո՞վ սուրփազան Յօսէփ, մինձ կաթուղիկոս,
Քիզ գովիմ ամինայն ժամ, հոգևուր տէ՛ր,
Լուսաւորչայ ազգէն թաջ ու թօմարն իս,
Քիզ երկրպագութին տամ, հոգևուր տէ՛ր։

Արևելք, արևմուտ, հարաւ և հիւսիս,
Բովանդակ աշխարք թարիփ կանէ քիզ,
Ես չուրս կուղմ Հաուց դուն թագաւուր իս,
Համ մարմնաւուր տէր իս, համ հոգևուր տէր։

Տասն ու մէկն էր թէրէրվալի ամիսը,
Բովանդակ ուրախացաւ քու տիսը,
Քու մուբարաք վուտը հասաւ Թիֆլիզը,
Իրիգնուց ցօղած էկաւ նամ, հոգևոր տէ՛ր։

Ձամչի Մէլքօն ասաւ՝ աչքս թաց լինի,
Քու աղօթքը վրէս չուրս դիմաց լինի,
Օղորմութեան դուռդ վրէս բաց լինի,
Զունիս շափաղաթիդ քամ, հոգևուր տէ՛ր։

*Ես Համչի Մէլքօն իմ, դու իս իմ ճարը,*
*Եա դու ես իմ ճար, ես օտկակարը,*
*Մէլքոն Բաղդասար, Ջուշան, Մարմարը,*
*Քու դովլաթով Թափիմ, գամ, հոգևոր տէր։*

# Զ

## ԴՈՒԲԷՅԻԴ

Քաղկէն գնացի Մարնէուլ, նահախ նընգայ դաւի մէջն,
Տեսայ կարգով շարած էին, գինի չը կէր գաւի մէջն,
Ային օյինը կցեցին,
Սրտումս դանակ ցըցեցին,
Տակս խալիչէն գցեցին,
Լուով լիքն էր խաւի մէջն։

Վունց զօնաղ ու հուր գիտէին,
Վունց աղպէր ու քուր գիտէին,
Անի կիրակուր գիտէին,
Համ չը տեսայ հաւի մէջն։

Արժանի չիմ դռնաբացէն,
Բեզարիլ իմ ալնի հացէն,
Թաք պռծընիմ իս էսղայէն,
Թուղ խիխտըվիմ շաւի մէջն։

Օխտը շափաթ էնդի կացայ,
Հալն ու ափալը իմացայ,

*Անմիղ, անզէթ հիւընդացայ,*
*Նահախ նընգայ ցաւի մէջն։*

*Ճամչի-Մէլքօն տեսաւ էրազ,*
*Զուրսը տանէին վազի վազ,*
*Մահէն օրս՝ պէտք է հինգ գալ*
*Կոլոլւիմ կտաւի մէջն։*

## Ա.

Անիրա՛ւ, քիզ ո՞վ ասաւ ղալբ մանէթ ես խուրդա անում,
Քիզ համար էդ էլ քիչ էր, չուն՝ փողին ես թամահ անում,
Տարեցին ծածուկ տիզն հալա քաղցր էր դօլրօս անում,
Ախ՝ ոչինչ չիմ խաբար, ես էս իմ մահանայ անում,
Ասաւ .... քու կտրածն չես իմանում,
Քիզ պէտք է կնուտ խփիլ տամ, ինձ էսպէս էր հարբա անում։

Ինչպէս որ սարաժէն էկաւ, իմացայ, որ ջանս դողաւ,
Իվան Լուկիանիչն էկաւ, էն Նմուշին ռանգս թռաւ,
Դուքանս պեչատեցին, ինձի օթախումն բռնաւ,
Էլի իղրալ ունէի, չուն՝ կնիկն շուտով մեռաւ,
Թէ նա էլ սաղ էր էլի՝ զամշուն էին արժան անում։

Վո՛ւտս դրին կօյօդկումն, սիրտս արնով եփ էր գալի,
Գօրօդնիչն հիտս խօսէր՝ ժանգ ու ժունգն վէր էր գալի,
Ջանումս դուզ էր նրնգնում, եփ «էրմանին» ձէն էր տալի,
Էրկու որ խօսեցնում էր, դաստի չանէքումս էր տալի,
Ջգրու փարթլամիշ էլայ, չուն՝ էս բանը չիմ իմանում։

Տասնուվից օր բռնած էի, ճշմարիտ կէս ջանս տարաւ,
Էն անօրդի անհուգին, իսկի մէ գամ ռահմն չարաւ,
Դարդս ինձի առիլ էր, շատ գամ կացայ քաղցած ծարաւ,
Մէ մանէթի ջհաթէն, հարուր ռուբլի փուղս տարաւ,
Տասը խանա խաղ իմ կապի, սաքի էստով ջիգր իմ անում։

*Էն փողն տիղումն ուտէ, որ չառողջանայ ջանն,*
*Էլի էնդով մունչ կու կացնիմ նրա պէս քօփակ քաֆթար շանն,*
*Ողջիցդ հեռու ըլի ռուսի գլուանն, էսպէս բանն,*
*Էն աւել պատ տուն չէհայ գօրօղնիչու տիղ ու տանն,*
*Անհատ ու անպակաս ըլի՝ ինչ որ նրան իմ օխնանք անում։*

*Հէնց գիտիմ՝ ջլիս չիմ պրծնի, սրտումս մին դարդ ու սար է,*
*Ճնորակալ իմ խալխիցը, ողջն ինձի հաւադար է,*
*Գօրօղնիչն էնպէս գիտէր՝ Բաղդասարը զարափղար է,*
*Վուտխս փէտի կօլօդկէն, հէնց իմացայ՝ ջաղցաքար է,*
*Ոսկռտանքս ջարթում էր՝ նա ուփրօ էր թամբահ անում։*

*Գօրօղնիչն ասաւ՝ ինչ անիմ, էնպէս տղայ չէ, որ դրան տէհամ,*
*Քանի որ ինձի ձէն տար, չէր ըլի, որ մօղն չէհամ,*
*Ասաւ՝ պիսարին ասա, իս վիր կու կենամ, դուրս կէհամ,*
*Սա էլ միծ ու միծ էր բղաւում, սուտ հարբա էր գալի, տէհամ,*
*Ասի՝ ոչինչ չիմ խաբար, է ինչ շատ իս դումիտ անում։*

*Դաւիթին ասի՝ քըթամ տանք, նա ինձ ասաւ՝ չլիմ, չիմանամ,*
*Ասի՝ էսպէս տանջանքով, մկամ, քանի դիմանամ,*
*Ասաւ՝ Սրփազանից* [1]) *կէհամ, խաբար կու իմանամ,*
*Ասի՝ գնա ու շուտ արի, ճանապարիդ ման դիւանամ,*
*Ասիլ էր՝ փիքը չանէ, շփնդտուրին* [2]) *իմ խնդիրք անում։*

*Ննգիլ իմ փօրցանքի մէջն, էլ չիմ տեսնում ճուղք ու ծառս,*
*Իս էլ մի դուրսա աւելացաւ, քիչ ունէի դարդ ու սարս,*

---

[1]) *Մի օրինակի մէջ «սրբազան» բառի դիմաց լուսանցումը գրուած է ռուսերէն* Іосифъ Аргутинскій (*Յովսէփ Արղութեան*)։

[2]) *Վերոգրեալ օրինակում «Շփնխտուր» բառի դիմաց նոյնպէս լուսանցումն գրուած է ռուսերէն* (Кноррингъ *Կնօրրինգ*)։

*Տանուվից մարդ շհաղ ունիմ, օրժում կերած հաւաղարս,*
*Ձեռք գնելիս՝ դիփ հիղ փախան, կտրուխց օհտան եօնդարս,*
*Էն նմուլժին ջուռուն դաւայ, տես ժէ ինչէր փիքը իմ անում։*

*Բէպօրտօվատ անելիս՝ գրեցին իմ հօր անումն,*
*.... էս իմ գլուխ, ինչի՞ ննգար ջուքամումն,*
*Ինչ Ջահիլ օղլան*[1]*) իմ դառի, չիմ ննգի էսպէս բանումն,*
*Ակամ ժօժափելի տարան, գցեցին տուսախանումն,*
*Ճատ չարէս որ կտրուեցաւ, սալղաժին իմ ղանդատ անում։*

---

[1]) *Սոխակ Հայաստանի Գ. եր. 225, ասուած է, որ Ջահիլ օղլան Յարութիւնը (որ և Արտեօմեան) ծնուել է Հաշտարխանում 1820 թուին, մեռել է 30 տարեկան և թաղուած է Հաշտարխանի գերեզմանոցում։ Ներկայ երգիս մէջ թէև նկատւում են Հաշտարխանի բարբառի նշոյլներ, բայց շատ սակաւ։ Ամբողջ երգը Թիֆլիսի բարբառով գրուած լինելու պատճառաւ, բաւոք դատուեցաւ Ջահիլ օղլանը կցել Թիֆլիսի բարբառով գրուած երգերի մէջ, չը նայած՝ որ Ջահիլ օղլանի հետևեալ երգերը նրա հաշտարխանցիութիւնն են ապացուցանում։ Ցամենայն դէպս՝ կամ Ջահիլ օղլանը իւր կեանքն անցրել է մեծ մասամբ Թիֆլիսում և կամ երկու են, ըստ ամենայն հաւանականութեան, Ջահիլ կամ Ջահէլ օղլանները։ Վերջին ենթադրութիւնը առաւել հաւանական է թւում նրանով, որ այս մի երգի մէջ երգիչը կոչուած է Ջահիլ օղլան, միւս վերջիններում Ջահէլ օղլան։*

## Բ

Իմ բաֆալու գիլրարս տեսէք՝ ինձ ինչ արաւ գնաց,
Էշխի սիրով՝ գլխիցս խելք ու միտքս տարաւ, գնաց,
Աջաբ, ինչ էր իմ մեղս՝ բարկութեամբ բարբառաւ, գնաց,
Չի կարացամ բան խօսել, լեզուս կալ-կապ արաւ, գնաց,
Սիրտումս գիւզիւն դաղն դաթար դաթար շարաւ, գնաց,
Հոգիս մարմնէս կիլէյշի [1]) տարաւ, բեզարաւ, գնաց,
Մեզացս բարկացաւ տէրն, բազմացան իմ դուշմաններն,
Մին կողմից էլ եարի սէրն սրտիս մէջին վառաւ, գնաց։

Ինչքան որ դարդ ու բալայ կայ աշխարհիս, ողջ ինձ կըպաւ,
Ում որ քաղցր բան ասի՝ վատ երևաւ, քէֆին դըպաւ,
Թունդ վարար սէլի նման միշտ արտասունքս շփշփաւ,
Փալաքն էր եաղի դառաւ, դարտի օխն սիրտիս խփաւ,
Մինչ էսօր ինձ էս հալի բուզգեարն՝ չարչարաւ գնաց,
Զում մը էդ բախտի տէրն եմ, օրըստօր պիտի մեղքը բեռնեմ,
Քեաշկեայ, Աստուած մահ տայ՝ մեռնիմ, խիստ հալս վատ
արաւ գնաց։

Իմաստունք չեն կարացել քննելի լըրի բանն,
Դամ այժմայս էլ կը խափեն, չեն տիրըմ սուլթանն ու խանն,
Պատճառ որ չարասէր են, չար ա նրանց օգնականն,

---

[1]) Անհասկանալի։

*Ում իրան ծուռ երևեց, կը քցեն չօլ եաբանն,*
*Ետքիցն ծաղր անելով կասեն՝ թէ ցանցառաւ, գնաց,*
*Իրանք մէկմէկուց հազ կանեն, մէկս մէկու հետ բաս կանեն,*
*Հար եթանին տնազ կանեն, անխելք մարդը, խօ՛, կորաւ գնաց։*

*Սկզբից քաղցը խօսքով ջան ասելով, քցեց համի,*
*Ամեն կերպ հաւատացրեց, ինձի արեց խաթրջամի,*
*Խելքս էր, որ հաւատամ, վերջը բանին՝ ընկամ խամի,*
*Դառեցիմ Մէջլում դիւանայ, կորցրամ Լէյլիս կամի,*
*Էրվամ էս բէրաֆայէն, ջահիլ ումրս տարաւ, գնաց,*
*Ով անզգամին եար անի, չի կարող նամուս առ անի,*
*Յոյս կապէր, Աստուած ճար անի, թէ ոչ՝ խալխը բէզարաւ, գնաց։*

*Յոյս ունիմ՝ էս զարզերէն ինձ ազատի ստեղծող Տէրն,*
*Այսուհետ էլ չի քաշեմ անզգամի էշխի սէրն,*
*Զումքի շատ են փչացել եարի ուղուրին իմպէսներն,*
*Փառք Աստծու, ճանաչեցիմ ես իմ դօստ ու դուշմաններն,*
*Դիտեմ որ այսուհետև՝ չարերն հերկարաւ (հեռացաւ), գնաց,*
*Նհախ փչացաւ իմ կեանքըն, շատ քաշամ դարդ ու տանջանքն,*
*Ջահէլ օղլան, սրտից կամքն, փա՜ռք Տեառն, կատարաւ, գնաց։*

---

## Գ.

Սիրեկի՛, էշխից սիրով էրուած ջանս, քեզ արզ անեմ,
Ո՞վ ունիմ ղայրի քեզ ումուդ, կխամանս(*) քեզ արզ անեմ,
Առաջինն կու յայտնեմ ամեն բանս քեզ արզ անեմ,
Արդարադատ կու դատես, իմ դիւանս քեզ արզ անեմ,
Օրըստօր բազմանում ա իմ դուշմանս քեզ արզ անեմ,
Ում ասեմ՝ որ հաւատեն, քօլն ինձի աչքից կատեն,
Աւելի կլինի Փահրատին, իմ տանջանս քեզ արզ անեմ։

Ինչքան որ ես ախ քաշեմ՝ չահ չի կայ, էդ բախտի տէրն եմ.
Էդքան իմ արտասունքս գիտես, պատճառ՝ ես քու սէրն իմ,
Քանի մին դարդ ու դամդ հաւաքեմ, իմ վրայ բեռնեմ,
Կու խնդրեմ Ստեղծողից՝ քեաշկի Աստուած մահ տայ՝ մեռնիմ,
Էլ մինչի եփ գոռալով աղաչանս քեզ արզ անեմ,
Մին խօսիր հետս համով, ինձի եար շինիր քու կամով,
Հէրիք ա, մինչ էսօր դամով անցաւ կեանս, քեզ արզ անեմ։

Քու ձեռքովդ ինձ մորթիր, ճղիր սիրտս, տես աշկեարայ,
Թէ ասեմ՝ չես հաւատիր, պատճառը որ ծածկաբար ա,
Եփ կու մեռնիմ, կու յիշես, կասես՝ իմ հաւադար ծառայ,
Ինձնէն յետ՝ քո կամքդ ա, ինչպէս ուզես, էնպէս արա՛,
Քու ձեռով մին կտոր քար գիր նշանս, քեզ արզ անեմ,
Ախ քաշես, դարդով լցուես, մրմկրտես, կրծկծես,
Կարծեմ՝ միտդ կը քցես գերեզմանս, քեզ արզ անեմ։

*Ախ քաշես, քինթէղ մուխն դուրս կուգայ, միշտ կըյիշես անումս,*
*Մին ինկնես ու կը իմանաս, էղքան էր սէրդ ջանումս,*
*Գաս ինձ վրայ գոռալով, արտասուես գերեզմանումս,*
*Էլ ինձ պէտքը չես իլիր, գեղեցիկ նազլու խանո՛ւմս,*
*Աստուած անի քու և իմ դատաստանս, քեզ արզ անեմ,*
*Սպանար իմ պէս շատին, վա՜յ նրան, ով քեզ հաւատի,*
*Յոյս ունիմ՝ Աստուած դատի երկուքեանս, քեզ արզ անեմ։*

*Ջահէլ Օղլան Արտեօմկան եմ, մինչի երբ մնամ էդ հալով,*
*Լաւ քցար էշխիգ ծովն, քաղցր լեզուով փանտ տալով,*
*Չեմ խաբար ո՛ւր կուտանի ինձի էղքան լափեր տալով,*
*Հանի՛ր քեզնէն եմ խնդրում լաւ գոռալով մսկըտալով,*
*Միմիայն դու ես իմ դարդ ու դարմանս, քեզ արզ անեմ,*
*Աստուած տայ մեզի սէրութիւն, մինչև ի խորին ծերութիւն,*
*Հռչակուի ամեն տէրութիւն գովասանս, քեզ արզ անեմ։*

## Դ.

*Ով Ջահել օղլանին իշարաթ կանի,*
*Չըլիմ՝ թէ նա հարգիս ղասաւաթ կանի,*
*Սուդաշը սուդաշի հետ մասլահաթ կանի,*
*Ծարի ձեռնէն կուզայ ու ղայրաթ կանի,*
*Կարմիր թշին խալը սիասաթ կանի։*

*Ինչ հիւանդ կայ աշխարհքիս, առողջանայ,*
*Նամարդ մարդի շատ դովլաթ փչանայ,*
*Աղքատանայ, դռնէ դուռը խեղճանայ,*
*.... [1]) ինքը, թէ շուտով չի փչանայ,*
*Դօստ ղարդաշի մօտ շատ ոչնչանայ,*
*Նաղլու եարն չար խօսքերով ռատ կանի։*

*Չեմ ուզում, թէ Նազլու եարը չարանայ,*
*Չարանայ՝ ինձ կու քաշի ղանարայ,*
*Ով եար ասէ՝ ջուխտ ականջը քառանայ,*
*Թէջլիս, վարշաղ, եապանայ [2]),*
*Բաղդասարը խաղին չի տկարանայ,*
*Կու .... [3]) դաստի մալամաթ կանի։*

---

[1]) *Չի որոշւում։*
[2]) *Երևի՝ երգերի անուններ են։*
[3]) *Չի որոշւում։*

*Խօսքը Նրանն է՝ ով աշխարհքիս ղինջ կուլի,*
*Աշխարհքումն շատ իշխան կայ՝ վիրջ կուլի,*
*Մէ գամ կուլի, բովանդակն վիրջ կուլի,*
*Ոնց (ոչ) ամէն խազ աստղ Թուրինջ կուլի,*
*Եարաբ Ջահէլ օղլանի վիրջն ինչ կուլի* [1]։



[1] *Վերջին տունը դարձեալ Թիֆլիսի բարբառ է։*

# ՌՈՍՏՈՄ ՄԱՍԱԹՈՎ

Հայի՛ֆ Մոնոբարթի [1]) ձեռին եսիր չը նընգար, Իսայի՛,
Կատորժնից փախածի նման Հաշտարխան էկար, Իսայի՛,
Մէկ-երկու չը անցկացաւ, շուտ ինձի գթար, Իսայի՛,
Հազար ջուրա թանխա տուար, վերջը կպցրար, Իսայի՛,
Էն սահաթը քանդուիլ էր, որ ինձ բաստ էկար, Իսայի՛։

Տասն ու հինգ ձիու շուր խոստացար, ասիր՝ թազէք պիտիմ կարի,
Զարթնի էն շուրեղէնը՝ ինչ Պետերբուրգում իմ ճարի
Քարեղէն ու մարգարիտը՝ բատունք հէսար չիմ համբարի,
Չուրս հազար թուման ջամ տուար, Նուխաէն էլ դրկար, Իսայի՛։

Դիփուն էրկու մարդ էր բերում էնքան զանազան բաժինքը,
Մէկին միջկին էր դոշակ՝ մէջը ձիու մազով լիքը,
Որ ճամփին էին դէն գցի Մոսկովից փախած մարդիկը,
Էն ձեռնէմէջս խլար, հինգ բուբլով ծախար, Իսայի՛։

Չուն անամօթ սատանայ իս, հէնց գիդին մինձ կայի [2]) ունիս,
Քու մինձ կային՝ դովլաթն էն ա՝ դուշկեմէն փայի ունիս,
Թէ գողցրած, փախցրած հինգ շայի, տաս տաս շայի ունիս,
Էն էլ կուպր ու քուքուրթի տուր, հիտդ դժուխք տար, Իսայի՛։

---

[1]) Բոնապարտ-Նապոլիոնի մասին է խօսքը։
[2]) Կալք։

Վուրդի մի ծըծմէր իս տեսնում, քոփակ շան պէս ցանկանում իս,
Վուրդի պարտկան տէր իս տեսնում շուտ սուտ հիւանդանում իս,
Ինչ տիղ մէ էրէց իս տեսնում, ամէն ջուրա փանդ անում իս,
Դուն էլ դառնում իս վարդապիտ, նընգնում իս աշխար, Իսայի,
Հոգիդ սատանէքն տանին ընլիերանց դաս, Իսայի,
Լէշդ էլ խուղի արժան չըլի, կործանուիս մախլաս, Իսայի։

Օղլուշաղիցս ըրկեցիր, փըչանմյ քիզ պէս անիրը,
Մուղան-չօլումը սատակիս, շանթին դարա իլաննիրը,
Աչկիրդ ղարղէքը հանին, աղիքնիրդ գիլանիրը,
Մէկին մէ մախալ չը հասնի, հէնց անին մաս մաս, Իսայի։

Զուն ղաղաւարի պառուիլ իս, միշտ էգպէս ղաղա կու մնաս,
Զուն հէսարիցս փախչում իս, գիղիմ՝ շարըանդա կու մնաս,
Տունդ տիղդ գլխիդ քանդուի, օղլուշաղով տակը մնաս,
Տէրտէր-քահանայ չը հասնի, սատկիս անմաս, Իսայի,

Գլխիցդ անպակաս ըլի էս իմ ջերմիւանդ օխնանքը,
Էլ պատկութին չը մնաս, սատկիս մինչև բարկենթանքը,
Մլթոնու պէս կրակ տան էդ քու պարշելի ջանդաքը,
Էլ իդդ թօղդ չը մնայ, թէ ուրուքմին կաս, Իսայի։

ՌՈՍՏՈՄ ՄԱՏԱԹՈՎ,



# ՍԷՓԻԼ ԶԱՔԱՐ

### *ԹԷԶԼԻՍ*

*Դուն մէ կոկոռ վարդ իս, ես քեզի բլբուլ,*
*Քիզանից հեռանամ սիրտս լալ պիտի,*
*Լալ ու մարջան հախերուդ շարիլ իս,*
*Էնդու վրէն ամբարզաու քար պիտի։*

*Դուն սիրունութենով Լէյլիի նման իս,*
*Գուզիս անուշ խոսկով իմ հոգիս հանիս,*
*Օսկէ քամարդ միշկէմէդ հիդ անիս,*
*Փարաղաթ մանդալուդ Քիրման շալ պիտի։*

*Քու էշխըդ կրակ է, սիրտս է դաղում,*
*Քիզմէն որ սէր չունիմ, ինփ իմ ծիծաղում,*
*Իս ու դուն մէ բաղում խալված օթախում,*
*Միզ էլ էնդի էլ ի՞նչ զօում ու զալ պիտի։*

*Մէ ձեռիդ շուշայ էր, մէ ձեռիդ օսկէ թաս,*
*Ի՞նչ կուլլի լքցնիս քու ձեռով, ինձ տաս,*
*Սէփիլ-Զաքարին հոգին առնելու գաս՝*
*Ի՞նչ խօսկ ունէ. էն սահաթին տալ պիտի։*



# ՔԵՇԻՇ ՆՈՎԱ

## Ա.

### Թ Ա Խ Մ Ի Զ

Արդար ես դուն, էս աշխարհիս լուս փայլակիցն ունիս խաբար,
Աբրահամ որ մատաղ արաւ, էն մատաղից ունիս խաբար,
Մատաղներն օջախ արին, էն կրակից ունիս խաբար,
Մարմառ քարը որ կէս արաւ, էն դանակից ունիս խաբար,
Երկնքէն ղոչ մատաղ առաւ, էն հրեշտակից ունիս խաբար։

Տեհէք՝ Յուդէն էն ինչ արաւ, ինչպէս մատնեց Տէր Յիսուսին,
Վի կալան, տանջանքով տարան իր առաջի Պիղատոսին,
Ջըհուտնիրն անհաւատ ին, կամեցան խաչին Քրիստոսին,
Վրայ խաչին ջուր ծարաւեց, քացախ լեղին բերէք՝ ասին,
Բշխանդով գլխին դրին՝ փուշ պսակից ունիս խաբար։

Զանազան չարչարանք տուին Լուսաւորչու լուս Գրիգորին,
Տրդատին խուզ դարձրուց էն բանական Թագաւորին,
Խոսրովդուխտ մարդ ղրկեցին, գնացէք, տեսէք էն հորին,
Լացով ու ողբալով տեսան, խիստ առաջ էր մէկ իր քուրին,
Հայոց ազգը մեծ գովր ունէր, ժամանակէն ունիս խաբար։

*Ադամայ որդի՛, դրուստ կացի՛, հոգիդ դժոխկին մի՛ քաշի,*
*Սուտ մի՛ խօսի, մարդ մի՛ խափի՛, էն կինքը տանջանք մի՛ քաշի։*
*Արգար Թագաւոր նստեցաւ, մարդ պիտի պատկերը քաշի,*
*Արժանի չենք նրա տեսին, մարդ ղրկենք պատկերքն քաշի,*
*Քրիստոնէին սաղուած էկաւ, դաստառակից ունի՛ս խաբար։*

*Թիփլիզ-Քէշիշ-Նովա, չար մի՛ կենա, խիստ մեղաւո՛ւր,*
*Տէրը դատաստան կու նստի, կու փչին արդար դատաւուր,*
*Ում գործքն էնդի բարի է, դըրախտին կուլի Թաղաւուր,*
*Ցամաքն էթող, ծովն վարից, ... ունի՛ս խաբար։*

## Բ

### ԹԷԶԼԻՍ

*Երկնային Թագաւոր, երկիրպագանեմ,*
*Քոմակ ես աշխարհս, կուս Աստուածածին,*
*Աւալ էս աշխարհս դուն ըլիս քոմակ,*
*Ինը դաս հրեշտակաց լուս, Աստուածածին։*

*Ասաւ՝ մի՛ լալ, մի՛ լալ, իմ քաղցր մայր,*
*Օհանէզ որդիդ էր, Զաքարէն հայր,*
*Ինձ պարզուտ տանէին, դուն լալով կէյիր,*
*Քու լալը ցաւ Թուաւ, կուս Աստուածածին։*

*Օհանէզ փրկիչը նա արոււ իմաց,*
*Ծիծերը գզըլտած, մազերն էր քանդած,*
*Յիսուս խաչի տակը նընգաւ ու գոռաց,*
*Ասաւ՝ լա՛ւ է, քանի՛ լաս, Աստուածածին։*

*Ծըծիրը կամարար, ոըդին ժամարար,*
*Պատկերքը վիր էդի, միզ համբուր արար,*
*Բերանը ագի էր հաղուրդ միզ համար,*
*Արնի քու ճաշակուինք մաս, Աստուածածին։*

Ճշմարիտ հաւատանք Յիսուս մեր տէրը,
Աւազան փրկիչն էր պատարագիրը [1])
Ով որ քրիստոնեայ է, Քրիստոսի սէրը
Յիսուն օր կու պահէ պաս, Աստուածածին։

Աստուածածին նըստած էր Բէթլէհեմի մէջը,
Յիսուս խըտըտին էր, աւետարանն աջը,
Մէլքոն, Գասպար, Բաղդասար, աստղն էր առաջը,
Հնդստանէն եկան տխս, Աստուածածին։

Բանդա Քէշիշ-Նովէն կանչում էր՝ հարմ,
Որդու արէն գինը սրբերն են ծառայ,
Թէ մենք արժանի չենք, դուն արժան արա
Իրիցի բաժանքով մաս, Աստուածածին։



[1]) Չի հասկացւում։

# Ա.

## Թ Ւ Ջ Լ Ի Ս

*Անգաճ արէք մէկ բան ասիմ, սիրելիք,*
*Սատանական բանին կանգնիլ ինք հակառակ,*
*Բան չունինք իստակ։*
*Իստակ աղօթք արէք Աստծու համար,*
*Թէ չէ նա միզ ամա կու պատրաստէ կրակ,*
*Կէրուինք բովանդակ։*

*Բովանդակ աշխարհս վիրջն մօտացաւ,*
*Վասն մեր մեղայէն միղքն շատացաւ,*
*Յիսուս մտաւ աւազան, մկրտուեցաւ,*
*Նա էնչախն դառաւ միզ ամա հրիշտակ [1]),*
*Խօսկովն օրինակ։*

*Օրինակ գերեզման մտաւ Յիսուսն,*
*Տարէնը մէ դամ կու բղխայ լուսն,*
*Զուրս գլուխ գիրք պատմող Մաթուզ, Մարկուսն,*
*Սուրբ Ղուկաս, Օհանէզ նրանց նմանակ՝*
*Էլաւ նշանակ։*

---

[1]) *Մի օրինակում՝ մեզ յիշատակ։*

*Նշանակ գերեզման [2]) յարութեան օրն,*
*Ցիսուն օր պաս պահինք Աստուծու սէրն [3]),*
*Մարիամ աստուածածին Ցիսուսի մէրն [4]),*
*Պէտկ է դուն չը տաս կրակ [5]),*
*Քիչիք-Նովին քօմակ մէկ ժամանակ*
*Չը շանց տաս հուր կըրակ։*

---

[2]) Մի օրինակում՝ Քրիստոսի յարութեան օրն։
[3]) Մի օր. Մենք Նրա սէրն.
[4]) Մի օր. Մայր Աստուածածին Քրիստոսի մէրն։
[5]) Մի օր. Այս տողը չը կայ։

## Բ

*Անումդ յայտնի չիմ անում, նուբ նովջըվան իս, գովելի՛,*
*Քուլլու քաղաքի մէջն շատ սիրեկան իս, գովելի՛,*
*Վարդի նման բաց էլած ռանգ եասաման իս, գովելի՛,*
*Բլբուլի պէս ճըկճըկող, տես, ի՛նչ խսան իս, գովելի՛,*
*Երբոր քեզ մոտիկ կուտամ, խելքս կու տանիս, գովելի՛։*

*Ինքդ կոկոռ վարդի պէս, քու շոլկն շափաղ իս արի,*
*Գցել իս բանդիվան, բլբուլին տուցաղ իս արի,*
*Ինձ էլ էշխով էրիլ իս, սիրտս դուդուն դաղ իս արի,*
*Բէմուրվաթ բաղիբներուն դիփ մէտի եղնաղ իս արի,*
*Էն ջահաթէն էրւում իմ, ինձի ռահմ անես, գովելի՛։*

*Թէպէտ էշխով էրւում իմ, էլի դարդիս եմ դիմանում,*
*Դուն ինքդ ռահմն չունիս, իմ դարդիրս չիս իմանում,*
*Ինձ սարսար իս շինի, ուշկս գլխէմէս իս տանում,*
*Ջալլաթի պէս գալիս ես, դաստին հոքիս իս հանում,*
*Սպանէ... թէ ինձ էլ հիտըդ կու տանիս, գովելի՛։*

*Ինձ նահախ մի սպանի Մէջլումի դիւանի նման,*
*Համաշա պտուտ գու քամ գլխիդ փարվանի նման,*
*Զօրբայութին իս անում Ռոստոմ-Ղահրամանի նման,*
*Քու գովասանքն իմ ասում էսպէս գովասանքի նման,*
*Ջէհէլ իս, Քիշիք-Նովա՛, շատ խաղ կու հանիս գովելի։*

---

## Գ.

### Թ Է Ջ Լ Ի Ս

Արարիչ Աստծուն փառք տանք միասին,
Յոյս ունենանք աջու դասին հասարին,
Սատանական բանին վուչ բան միասին,
Թէպէտ խափով խափուաւ շուտով հասարին։

Աստուած կանչինք, աղաղակինք մէ հանգին,
Մահ կայ՝ լաւ է, մահ կայ՝ վունչիչ մէ հանգին,
Ցոյց տըւող է լաւ ու վատն մէ հանգին,
Ջուր կու խըմինք անմահական հասարին։

Աստուած աղաչելով անին հասակին,
Ցատուկ մարգարէին բանին հասակին,
Ինչ վախտ բաղշեց Աբրահամուն Սահակին,
Մուլթը տիղը ծիծաղեցաւ հասարին։

Աղանչաքս գրիլ տալ տո՛ւ Արամին,
Ինչ ունենամ բարի խնդիրք՝ արա՛ մին,
Քիչիկ-Նովա՛, մուրազիդ ա՛ռ, ամին,
Ճանաչելով Նամուս, ղայրաթ հասարին։

## Դ

### Թ Ւ Ֆ Լ Ի Ս [1])

Արտասուելով խնդիրք ունիմ, իմացիր,
Դուն իս Աստծու անմահ գառն, Արարիչ,
Անհռելի ցաւ կայ աշխարհիս վրայ,
Դու հեռացնիս էսպէս չարն, Արարիչ:

Մինչև էրկու ամիս այս ցաւն կացաւ,
Իսկի համբարք չունէր, շատն փչացաւ,
Վասն միր միղայէն, վարձքն քըչացաւ,
Դուն իմ հախ դատաստան շարն, Արարիչ:

Ինձ պէս միղաւորքն պլտի աղաչին,
Վուղրան արտասուելով, անունդ կանչին,
Երկիրպագութիւն տան քու պայծառ խաչին [2]),
. . . . . . . . . . . . . .

Համփիրէցիր, յետով դուրծքն չափեցիր,
Ձատին արձակեցիր, շատին կապեցիր,
Ինչպէս Մանասէին հուրէն թափեցիր,
Դուն իս Քիչիք-Նովին ճարն, Արարիչ:

1) Այս երգն ասել է խօլերի ժամանակ, 1830 թուին:
2) Երրորդ տան վերջին տողը պակաս է:

## Ե

Բլբուլը վարդին կարօտ. եարին ինչ դուման ասեմ,
Աչքէդ հեռանալով արտասուելով ջան ասեմ,
Ով գայ դարդս իմանայ, հաւատար խան ասեմ,
Քարամդատի օրինակ՝ էրուելով մէ բան ասեմ,
Իմ ուշկն վարդի հետն է, ումն բանդիվան ասեմ։

Եարիցս ինչ իմանամ, որ էս կրակէն թափէ,
Ինչքան ասեմ՝ սիրելի, աչքս արտասունք չափէ,
Միշտ ինձ պէտք է դիմանամ, եարար ինչպէս հէսար է,
Էլ չունի էն խղճարն, չէ թէ բաղիփին խափէ,
Ով մէ խաբար իմանայ, շահ ու սուլթան, խան ասեմ։

Մտքիցս մոլորուել եմ, աչքս ճանապարհի ա,
Վարդն իմն գիտէի, իմացիլ իմ խարի ա,
Մտածելօք իմացայ, բաղիփը նաչարի ա,
Էսքան դարդ ու սար ունիմ, եարար վերջն բօրի ա,
Ինչ մարդ խաբար իմանայ, տրտմելով ամմն ասեմ։

Ձատ մարդ կօսէ՝ եար սիրեմ, սէր անդադար ունէ,
Լեզուս չի կարող կարդալ, սէրը մինձ դաւթար ունէ,
Գիշեր ցերեկ ղահրիցս աչքս լցուած արուն է,
Քիչիք-Նովին ինչ գաւալ, թէ բափալու եար ունէ,
Բոլոր աշխարհիս կողմէն գովեմ քիզ, աննման ասեմ։

## Զ

### ՃԱՐԻՃՈՒՐԻ ՄՈՒԽԱՄՄԱԶ

*Լուս պայծառ Իջման տիղն դուռն շատ գովելի է,*
*Ծաղկած բոլորքն դաշտով ձուրն շատ գովելի է,*
*Բարեկի պտուղ տըւող ջուրն շատ գովելի է,*
*Մեծամեծ օտարն երգնէն հուրն (*) շատ գովելի է,*
*Ցոյց տըւէք այս ասմունքն, վուրն շատ գովելի է։*

*Տրդատի ժամանակին տես ինչքան բաշարեցին,*
*Սրբանց նահատակելով չէլաւ, չը բեզարեցին,*
*Սուրփ Գրիգուր Լուսաւորչուն սարսափեալ չարչարեցին,*
*Գցեցին խուր վիրապն օձն ու կարիճ շարեցին [1]։*

*Յետով սուրբ կուսանաց գալն Տրդատն իմանում էր,*
*Գիշերն ուշկով մտկով սրտումն ցանկանում էր,*
*Խաչափայտն դօշին էր, հաւամ մտկով զարմանում էր,*
*Հռոմսին բռնիլ տըւաւ, միուսին հարցընում էր,*
*Բռնից Տրդատին ախտից, զօռն շատ գովելի է։*

*Հռոմսիմ կոյսն փախաւ Տրդատի պալատից,*
*Սուրբ Գայեանի ձեռնէն բռնէին մատըն մատից,*
*Անհամբարք բազմութինն հասան շատէն շատից,*
*Նահատակ կտորուէին չը զըրկուան հաւատից,*
*Հաւատի համար լաւ է սուրն, շատ գովելի է։*

---

[1] Վերջին տողը պակասում է։

*Մէկ բարելի կինարմատ իւր հիւր [1]) տանիցն հաց առաւ,*
*Լալով սուրբ Լուսաւորչի խուր վիրայն բաց արաւ,*
*Կսանց նահատակուիլն ճշմարիտ իմաց արաւ,*
*Ասաւ՝ այն խուցն սաղ է, սուրբ բերանն բաց արաւ,*
*Լուսաւորչու ասմունքն գուբն շատ գովելի է։*

*Խուց դարձուց՝ հոթհոթելով, բղբղում էր, կանչում էր,*
*Եփ Լուսաւորչին տեսաւ, ուշկ ունէր, ամանչում էր,*
*Իր միղկն դարձ էր գալի, ձեռն ու վուտին պաչում էր,*
*Լուսաւորչու հաւատին շատ ու շատ աղանչում էր,*
*Կռապաշտ հաւատն էթող, նուրն շատ գովելի է։*

*Տրդատի մկրտելով իր միղկն ազատէին,*
*Էկան չորս կողմանիցն և կէին՝ անապատ էին,*
*Ճատ ու շատ ուրախացան, հայուց ազգն հաւտէին,*
*Սուրբ լուսաւորչու աջն համբուրողն շատ էին,*
*Նորատօն էր խնդիրքն (°), օրն շատ գովելի է։*

*Իջման տեղի աթուռն Տրդատի գարթարած է,*
*Ուսքովն քարն կրած, շնուրքով պատն շարած է,*
*Անհամբարք կանթիղնիրն սուրբ տաճարին վառած է,*
*Սուրբ միռոնի էփ գալով այլ ազգն խաւարած է,*
*Լուսաւորչու մասունքն—կուռն շատ գովելի է։*

*Հայոց այն թուէն դէմն շատ չար ու բարի անցաւ,*
*Հազար ութ հարուր եռասուն ու մէ տարի անցաւ,*
*Քանի կաթողիկոսնիր դիփ էն ճանապարհն անցաւ,*
*Հարուր եռասուն ութ թիւն դիփ էն ճանապարհն անցաւ,*
*Նրանց հաքի ըզգիստն շուրն շատ գովելի է։*

---

[1]) Գուցէ՝ հօր տանիցն։

*Տէ՛ր, խաւարած մի՛ թողնի, լուսիդ արժանի արա՛,*
*Մի՛ հիռացնի էրէսդ, տեսիդ արժանի արա՛,*
*Ողորմութինդ շատ է, կլսիդ արժանի արա՛,*
*Երկնային հարսն շինէ՛, փէսիդ արժանի արա՛,*
*Քիշիկ-Նովի ասմունքն խուռն [1]) շատ գովելի է։*

---

[1]) *Ասմունքը խուռն՝ երևի, ուզում է ասել խրթին։*

# Է

## Դ Օ Ջ Ա Մ Ա

Կապել ես աշխարին բիւր հազարին,
Ինձ պէս ղունահքարին գալ, Աստուածածին,
Դառել եմ անաասունք, ինքդ ես մասունք,
Կու չափիմ արտասունք, լալ Աստուածածին։

Լալ քաշեմ էս դարով, միշտ ամսով տարով,
Ճուչս բաղշիս շարով, չըլիմ ազարով,
Խոստովանիմ իղրարով, տխսդ գամ բարով,
Զըլիմ դարդ ու սարով հալ, Աստուածածին։

Հալ չունիմ, տուր բարիդ, Յիսուսն արիդ,
Ղուլ իմ քու մուշտարիդ, քաղցրագուն ծառիդ,
Ողբալով հասարիդ, անգամ տուր բարիդ,
Ուզում եմ տաճարիդ գալ, Աստուածածին։

Գամ հայրդ Ովակիմ, մայրդ Աննա կին,
Քեզ տուուց արագին(*) յատուկ հասակին,
Տէր անմահ պսակին, գամ վուտիդ տակին
Քիչիք-Նովի ազգին շալ(*), Աստուածածին։

## Ը

Ո՛վ իմ սիրելի, աննման իս զարդարած իղրար,
Դուն ինքդ իս սարդար,
Պատկերքդ զոված, աչքերդ վառ-վառ,
Նմանակ չըաղդար,
Ընպէս քիզ զովիմ, վունց շամս ու ղամար,
Ճուխկ կուտաս ինձ համար,
Անչափ խնյօք իս, ունիս էհտիբար,
Ուր գնաս, հիտըդ տար,
Բօյըդ է բէրած, ինչպէս սալբու ծառ,
Ջուհար իս անգին քար։

Ի՞նչ լիզու պէտք է՝ թարիփլամէզ դիփ թամամ անէ,
Վուր սրտէն քիզ հանէ,
Էշխէդ էրուած իմ, այս ինչպէս բան է,
Ղուլիմ իմ, ո՛վ ճար անէ,
Խնդրիմ սրտէմէդ խիալդ հանէ,
Տուր խարին սպանէ,
Դռանդ ղուլ շինէ, ինչքան կենթան է,
Խնդիրքս էսքան է,
Ո՛վ ջուրամ կօնէ, քիզ, ո՛վ կօնէ քար,
Եա՛ր, մէջլիսի սարդա՛ր։

Դօշէդ փչում է դրախտի հուտն սալբու ռէհանի,
Ճատ ուրիշ նշանի,
Ինքդ սարդար իս, ծառայ ունիս համբարք մէ քանի,
Ինձ խիլքէս մի՛ հանի,

Դատաւոր չկայ, դարդս իմանայ, դատաստան անի,
Արզ անիմ մէ քանի,
Աղդով խնլօք իս, ուշկ ու մտկանի,
Ինձ բան էս մի՛ անի,
Բօյիդ մինայ է սալբու ծառ, գուարթար(°),
Ունիս խօսկ ու բառ։

Եա՛ր, ի՛նչպէս գովիմ, սարդար ու եար իս,
Լիզուովդ ճարտար իս,
Քիզ գովիլ չը կայ, օսկէ մաքան իս,
Խազինայ կու բանիս,
Խնդրեմ Աստծանից, վուր անթառամ պսակն առնիս,
Ինձ խաչաղպէր տանիս,
Աստուած կու սիրիս, մտկէդ չը հանիս,
Ձուտով մօտըդ տանիս,
Ջէհէլ իմ, Քիչիք-Նովա՛, գովքդ շինիլ իմ դաւթար,
Սողոմոն քիզ համար։




Վարթէն կորած բլբուլն ինչպէս աղալաթ ունէ,
Գիշեր ցերէկ ղահրիցն էրուել ու ջալլաթ ունէ,
Պէտք է ախ ու վախ քաշէ, սէրն մեծ մուլաթ (*) ունէ,
Իր կեանքն մոլորիլ է, սիվեղէն խալաթ ունէ։

Վարթիցն հիւանդալով՝ պէտք է վուր մահ ունէնամ,
Եադն չը մօտավուրուի, մտիկ տամ, շահ ունէնամ,
Չէ թէ ուրիշն քաղէ, խարիցն ահ ունէնամ,
Աւէք վարթին մոռանայ, թէպէտ գունահ ունէնամ,
Սէրիցն բանդ է շինի, հոքիս ամանաթ ունէ։

Ո՛վ կէր՝ ղարիբ բլբուլին սիրտն մխիթարիլ էր,
Հազար բարաթ ղարդ ունէր, սրգալն բէզարիլ էր,
Էլ չէր ուզում սաղ մնայ, իր վնասն ճարիլ էր,
Վարթի պայծառութինն ուշկ ու միտկս տարիլ էր,
Սէրն ջալլաթ է դարի, կեանքս մէ համլաթ (*) ունէ։

Ինքս բլբուլ իմ դարի, վարթին իմ եարն իմ շինի,
Դօստիցն եադ ուզողին բաղփին խարն իմ շինի,
Գցիլ իմ ղունէ գուռն, խիստ ղարբէզարն իմ շինի,
Էսպէս էրուած մուխամբաղ օրինակ ծառն իմ շինի,
Քիշիք-Նովի ղարղէրուն խաբարն խպալաթ ունէ։

## Ժ

## ԴԻՎԱՆԻ

Փըշուր էսպէս ժամանակն, յոյս ու հաւատ սէր չը կայ,
Մաշուել է ճշմարտութիւնն, մէկ իմանող տէր չը կայ,
Բռնել ենք մեզաց ջիղէքն, մէկ մէկու բամբասելով,
Պղտորուեց յստակութիւնն, պատուով հէրն ու մէր չըկայ։

Հասաւ մեր միզաց պատիժն, իմացէք՝ ինչպէս բան է,
Էլ մարթու աւատալ չը կայ, էս ինչպէս դատաստան է,
Տանջուանք ունէ դըժուխկումն՝ ով լիզուով սթամ կանէ,
Ահլի վարպիտի պատիւն մէ ժամանակ կէր՝, չըկայ։

Խափանուեց բարեկի միտքն, սէրով սալամ տալ չունինք,
Պէտքէ մէկս-մէկու մատնինք, աւելի ափալ չունինք,
Ճշմարիտ յուսով մարդ սիրել, միասին մանգալ չունինք,
Քիչ է մեր միզաց հարցմունքն, էլ քուր ու ախպէր չըկայ։

Վիրաւորուել ին հաւտիցն, օրէնքն խաւարում է,
Ջատ մարդ կայ՝ հոգուն չէ հոգում, մարմինն զարթարում է,
Քիչիք-Նովմ, միղկդ լացիր, ինչ անձդ բաշարում է,
Աւելցաւ շառն աշխարհս, այսուհետև խէր չը կայ։



# ՔՈԲԱՉԻ [1]

## Ա.

### ԹԷՋԼԻՍ [2]

*Նազանի՛, էշխէմէդ դառիլ իմ սարսարի,*
*Մայիլ իմ ջամալիդ, սիրտս էր սառած,*
*Ճամփէս մոլըրած։*

*Ճամփէս մոլըրած, եա՛ր, քու դիդարին,*
*Չինէթ ու մաթայի Հնդեմէն եկած,*
*Օսկով վարաղնած։*

*Օսկով վարաղնած էրէսիդ խալը,*
*Հաքիլ իս, սազ կու գայ քիզ Քիրման շալը,*
*Աննման սիրուհիս աշխարհս պատմած,*
*Խիլքս էլ տարած։*

[1] *Մովսէս Նազարեան Զախմախսազ Թիֆլիսեցի. անցեալ ժԹ. դարու սկզբներում։*

[2] *Ասած է 1809 Թուին։*

Խելքս էլ տարած, Նազանի՛, հուր իս,
Սուսան ու սմբուլ իս, մուշկ ու ամբար իս,
Լալ իս, անգին իս, ջաւահիր քար իս,
Նստած իս մէջլիսի մէջը ըաղիփն էլ տեսած,
Դովլթալաբ եկած։

Դովլթալաբ եկած, գլխիս ղաղայ է,
Հարգիդան ուստա է, հարցրու ղաղա է,
Քոբաշին եարի ձեռնեմէն ըաղա է,
Դարդիրը ղուլթար է, լալով է գրած,
Աջայիբ ասած։

# Բ

## ԴՈՒԲԷՅԹ

Նազլու դիլբարին սիրեցի, նա ինձ համար վաղ էր, գոզալ․
Բոյն ունէր սալբու չինար, աստւմ էինք սաղ էր, գոզալ,
Մանգալը ջէյրնի նման է, նախէն ջաւահիր ու լալ է, գոզալ,
Ինքը գոված պատուով եար է, վարդ մանիշակ Թաղ է, գոզալ․

Ես հիւանդ իմ, չունիմ չարա,
Էշխեմէդ կանչում իմ հարա,
Ջանս իս զցի գունդի եարա,
Սիրտս դուզուն գաղ է, գոզալ,․

Նազանու հիտ կէհամ սէյրան,
Րէհան Թայգուլ կօնիմ փէյվան,
Քորաշին է եարի հէյրան,
Միր իրդարը վաղ է, գոզալ․



## Ա

### ԹԻՖԼԻՍ—ՕԳՈՒԳԼԸՄԸ

*Աղամայ փուրթի, քու Աստծու մօտ դըրուստ կա՛ց,*
*Սթխով աղօթք արա՛՝ թէ կանաս կանաս,*
*Աշխարհիս վայելչութիւն անցուորական է,*
*Հոգուդ ճանապարհը գտի, թէ կանաս կանաս։*

*Միր փիրջը չինք պտռում, ինչպէս կույի միր հալը,*
*Միզ օթկական չի ըլի աշխարիս մալը,*
*Միզի սուրմիշ կօնին Ուռնէին կալը,*
*Կու հրամմէ՝ ջուղաբ տու՝ թէ կանաս կանաս։*

*Էս աշխարհիս ղամ ու ղովրան քաշիլ ինք,*
*Ջարլու զումաշ բիխը բիխը խաշիլ ինք,*
*Մարմներուս ուրախացրիլ ինք, հոգիներուս մաշիլ ինք,*
*Էնի կինքը ջուղաբ՝ փօնից կանաս կանաս։*

*Քոռաչու օղլա՛ն, միդքդ լայի քահանով,*
*Խոստովանիքդ դըրուստ արա քու գործքով ու քու բանով,*
*Եօթն անունը քօմակ ըլի իր բառով,*
*Քաշէ նրա դուլուղը՝ թէ կանաս կանաս։*

# Բ

Ունքիրդ ղալամով քաշած՝ օսկէ զարնշան է անում,
Թէրթէրունքդ չաղրի նման աչքերուդ շուաք է անում,
Լուս պատկիրքդ շուխկ է տալի լուսնիակի բանն է անում,
Բլբուլի պէս ճկճկում իս, շիրին իխտիլաթ իս անում,
Խալիրդ մարքրիտ է, լուս աստղերուն բաղ է անում։

Դօշդ մարմար քարի պէս, բոխախդ ունիս բրոլի պէս,
Թարխիփդ ինչպէս գովեմ, ման գալ ունիս մարալի պէս,
Թաք դու ինձ սէրով սիրիս, թէ կուզ սպանես ջալաթի պէս,
Ինչ վախտ սէրը միտս է գալի, էրւում իմ Քարամ-դաղի պէս,
Գցիլ իս փէրիշան հալը, սիրտս դուզուն դաղ է անում։

Քանքուլդ դաստա-դաստա կապած է րէհնի կօնի պէս,
Ինքդ դրախտական ծաղիկ, բաց իս էլի ալ վարդի պէս,
Խօսքիրդ ջաւայիր է, ճկճկում իս բլբուլի պէս,
Հաքիլ իս զար ու զարբաբ, դուս իս գալի սարդարի պէս,
Իլթիմազիդ վո՞ւնց դիմացայ, սէրդ ղիամաթ է անում։

Ջալաթ իս դուն ինձ ամա, քու ձիւռվդ հոգիս հանիս,
Պէտկ է սէրով սթխով սիրիս, դաս հիտս իլթիմազ անիս,
Անգուշ(*) զարդիրս արզ անիմ, իմ դարդիրուս դարման անիս,
Գցիլ իս էշխիդ կրակը, պէտկ է սէրով մտկէս հանիս,
Քօրաշլի-օղլան, էրիլիս սիրտդ, խաթրջամ իս անում։

---

## Գ.

Օսկէ բերան իս, դուն րէհան իս, վարդի բերած իս,
Զար ու զարբար իս, դու արբար իս, հնդէն էկած իս,
Ունքիրդ խաշած, ղալմով քաշած՝ շուտով ճարած իս,
Բլբուլի վարդն իս, նըրա հատն իս, նամով մանած իս։

Ով աշխարական, դուն դըրախտական, դօստերուդ զովիս,
Փշիս, թող անիս, դուն զօղան իս, ամռւան հով իս,
Միրեկանդ էրած, բօյիդ բերած, շատ զովական իս,
Հաքիդ սոսանի, դուն շրոշանի, չի գիդի ով իս,
Բանգով հարփած իս, դու խափած իս, դըրախտէն բերած իս։

Ո՞վ կայ դատաւոր, դուն թագաւոր, դատաստան անիս,
Դարիչին հիլ իս, թէ չսիրիս, ինձ դաթար անիս,
Խոնթքար ու խան իս, թէ չհաւնիս, դուն դաւթար անիս,
Ատծով թանգանաս, չըարկանաս, միզ սթամ չանիս,
Լիզուով զոված իս, զովական իս, շատ աննման իս։

Էրծթէ սանդըրով, հնազանդով, քանքուլդ սանդըրէ,
Բլբո՛ւլ գալիս իմ, ես լալիս իմ, կարմիր վարդ հադըրէ,
Բօյիդ չինար է, համ ռեհան է, դըրախտի փանդ է,
Քաշէ մէկ զովըրան, Քոըաչի-Օղլան, շատ զովական է,
Գովիմ անուշակ, դուն մանիշակ, հուտով բերած իս։



# ՕՔՍՈՒԶ ՕՂԼԱՆ [1]

## Ա.

*Ես քո տեսին կարօտել եմ,*
*Մէ գամ քիզ չտեսայ, զալո՛ւմ,*
*Աչկս ճանապարհիդ մնաց,*
*Մէկ ըահմ չես անում, զալո՛ւմ։*

*Դուն բացուել ես սմբուլի պէս,*
*Չէն ես տալի բլբուլի պէս,*
*Ինձ պահէ քեզ մօտ ղուլի պէս,*
*Ես կուլիմ քու Նօքարդ, զալո՛ւմ։*

*Աչք ու ունքդ է ղալամ քաշած,*
*Բոյիդ չինարի պէս տաշած,*
*Ջանս քու դռանդ մաշած,*
*Ի՞նչ կուլի մէկ ըահմ անիս, զալո՛ւմ։*

*Վի կացար գնացիր դու Հաշտարխան,*
*Էգնէդ վո՛ւնց դիմցաւ Օքուզ-Օղլան,*
*Երբ մեռնիմ, հաքի՛ ատլաս ալ [2]),*
. . . . . . . . . . . . .

[1]) *Մի տեղում գրուած է Օքսուզ օղլան, միւս տեղում՝ Օքուզ օղլան. դժուար է որոշել՝ ո՛րն է ճիշդը, կամ գուցէ երկու անձնաւորութիւն են։*

[2]) *Վերջին տողը պակաս է։*

## Բ

### Դ Ո Ւ Բ Է Ի Թ

*Նազլու դիլբա՛ր, մէկ բահմ արա՛, տեսիդ կարօտ իմ, կարօտ իմ,*
*Աչկս ճանապարհիդ մնաց, գալուդ կարօտ իմ, կարօտ իմ։*

*Ձեռիդ բռնիս օսկէ թաս, Աստըծէմէն առնիս մաս,*
*Հաքիլ իս ատլաս ու խաս, ալիդ կարօտ իմ, կարօտ իմ։*

*Օքսուզ-օղլա՛ն, հաքի սիպտակ, դըրուստ պառկի խուղի տակ,*
*Էդ է քու մարքարիտ ակ, լալիդ կարօտ իմ, կարօտ իմ։*

---

## Գ

### Ճ Ա Ք Ի

Պասն ու ուտիսը մէկ մէկու հիդ կռուեցան,
Ուտիսն ասաւ՝ իմ տիրուչը հուշ կօնիմ,
Ինձ որ տանում ըլին քիզ հետ խօսելու,
Վունց լայիղ չիմ անի, համ թէ նազ կօնիմ։

Պասն ասաւ՝ ինձ վրէն շատ իս խօսում,
Էդնէդ կուլիմ, դիբա դուսի խուզ կօնիմ,
Էս մէկն էկիլ իմ, ջանիդ նստած իմ,
Թէ որ մէկ էլ էկայ՝ դաբիդուս կօնիմ։

Ուտիսն ասաւ՝ խօսքն ասում իս փիսը,
Դու հուտած իս, ինձ ջալդ գալիս իս քիքսը,
Դովլթալաբ որ ըլինք, քի վրէն շատ ինք,
Գլխումդ կու ծեծինք, հաբբած ռուս կօնինք։

Պասն ասաւ՝ Քուռ կու բերիմ պղտուըը,
Կու խմեցնիմ, կու ցաւեցնիմ քու փուըը,
Կուտեցնիմ մախութքը, սուխը, սխտուրը,
Լիըթ ու թուքդ համ կու էրիմ—զուրս կօնիմ։

*Ուտիսն ասաւ՝ խօսքն ասիմ ես հատը,*
*Քու պարդէդէն միւնի, հիտը քու տատը,*
*Թէ բարով կուհասնիք Ցուլթի ուրբաթը,*
*… պանդուր տալով դուս կօնեմ։*

*Պասն ասաւ՝ խալիլ կուտամ օթախը,*
*Ես մէջը գօղ կօնեմ, դուն քաշիս ճխը,*
*Թէ բարով կու համնինք մէկ էլ էս չախը,*
*Ճատ մարդու վուտներ դարիդուս կօնիմ։*

*Ուտիսն ասաւ՝ խօսքն ասում իս փիսը,*
*Դուն հուտած իս, ինձ ջալդ գալիս իս քիքսը,*
*Հիւնդին կուտեցնիմ շիշակի միսը,*
*Ջանին ղըւաթ կու տամ, աչկին լուս կօնիմ։*

*Պասն ասաւ՝ ես քիզ հիտ շատ բան ունիմ,*
*Զարթնի ճուռտէրուն՝ օխտը խան ունիմ,*
*Ես քիզ կու չարչըրեմ, քանի ջան ունիմ,*
*Ňստի էնտի կու փորփըրիմ, փուս կօնիմ։*

*Օքսուզ օղլանը ձիր թարիփը ասելիս,*
*Հարրա հարրի վրէն մէ մէկ գարսէլիս,*
*Ձեզ երկուսիդ տեսնեմ մէտի խօսէլիս,*
*Դուք որ կռւում ըլիք, ես խօ հազ կօնիմ։*



# ՀԱՇՏԱՐԽԱՆԻ ԲԱՐԲԱՌՈՎ

## Ա.

### ԴԻՎԱՆԻ

*Ամենայն ժամ արթուն կացէք, լսէք աւետարանին,*
*Մեղայ ասէք, խոստովանուէք, ատեցէք չար սատանին,*
*Մէջ գիշերին, հաւախօսին մեզի յանկարծ մահ ունինք,*
*Տէր բարերար Աստուած, փրկիր ամէն քրիստոնէին։*

*Աղաչելով խնդրենք Աստծուց տեղն արդարոց՝ կեանք ա մեզ,*
*Մեղաց բանին մի՛ ցանկանաք, խիստ դժար տանջանք ա մեզ,*
*Հայրապետաց գիրքն ենք խախտըմ, էդ ինչպէս վտանգ ա մեզ,*
*Իսկ ճշմարիտ չենք հաւատըմ օրէնք ու պատուիրանին։*

*Ադամ խափուեց, գերի ընկաւ, մնում էր պայծառ լուսին,*
*Տէրն առաքեց մեզ փրկութիւն անեղ որդի Յիսուսին,*
*Չարչարուեցաւ, խաչուեց, թաղուեց վասն մեր մեղաց մասին,*
*Մարմինն մեզ հաց ճաշակենք, արիւնն բաժակ գինին։*

Պարզևես արքայութեան յոյս ու հաւատ, սէր ինձ,
Ազատես մեղաց տանջանքից արիւնիդ խաթեր ինձ,
Երես անկեալ աղաչեմ քեզ, ով կենարար Տէր ինձ,
Ծաղուբ օղլու բազում մեղքն չի ուզես դատաստանին [1]։

---

1) Թիֆլիսեցի էր Ծաղուբ օղլին, բայց երկար ժամանակ Հաշտարխան ապրելով, ընտելացել է այն տեղի բարբառին։ Նրա վերադարձի աթիւ՝ աշուղ Իվանը հետևեալն է գրում.

«Թիֆլիզից եկած մին թազա նուբար, Ծաղուբ օղլի,
«Հայիֆ, գնում ես, բաժանւում ես Հաշտարխանէն,
«Պատւելով կասեմ գովասանքդ, ողջով իմանան,
«Քանի աշուղ կան Թիֆլիզումը, պէլուին, հիանան,
«Բարեկամներդ հասրաթիդ ինչպէս դիմանան,
«Մի թողնիր կարօտ, ուղարկիր խաբար, Ծաղուբ օղլի»։

Գ. Լևոնեանի ասութեամբ՝ Ծաղուբ օղլին 1847 թուին իւր անուանակից և սիրելի ընկեր Դշլախեցի մի ուրիշ Ծաղուբ օղլի աշուղի հետ միասին մի չաբաթուայ մէջ մեռնում են Հաշտարխանում և թաղուած են այն տեղի գերեզմանատանը։ (Տես Հայ աշուղներ Լևոնեանի, եր. 97)։

## Բ

*(Ի վերայ սուրբ Կարապետի)*

Հիմքն սուրբ Կարապետին լուսածիր ա բոլորն,
Սկսեց Լուսաւորիչ հայրն սուրբ Գրիգորն,
Մինչ իրիկուն կաշխատէր, միշտ քանդում էր գիշերն,
Լուսարացին տեսնում էր՝ չի կայ տեղն մին քարն,
Հրամայեց ծառային՝ քանդեց քառասուն գազ հորն,
Բռնեց ածեց բանդի մէջ էն անիծած դևերն,
Նոր կրկին ձեռնադրեց, որ շինեն լոյս տաճարն։

Կը լինի ինչպէս անտակ ծով, շատ ա ողորմութիւնն,
Մարդ մին անգամ տեսնելով՝ չի առնիր հովութիւնն,
Բարձեցին ջորու վերան, իմանան էութիւնն,
Ով չի տեսել՝ ինչ գիտի, անչափ է զօրութիւնն,
Ում վրայ որ քաղցրանայ, շատ կտայ գիտութիւնն,
Խելքի դալար տաճար ա, ինչպէս ա շինութիւնն,
Տրդատը ուսովն ա բերել մարմար քարի սիւներն։

Արևելից արևմուտ իսկի չի կայ նմանն,
Կաղ դևն ծառայ գրուեց, որ լինի փոշէհանն,
Երևելի քրտնում ա լուսաբուղխ գերեզմանն,
Ջունի երեսպաշտութիւն, ուղիղ է դատաստանն,
Յոյս հաւատով խնդրողին կը տայ մուրատ իւր տանն,
Ամէն խորհուրդ կատարող՝ նա է Մշու սուլթանն,
Սրբոց միջին երևելի, որ չի կայ բարեբարն։

## Բ

### Դ Ո Ւ Բ Ե Ւ Թ

*Նազլու դիլբա՛ր, մէկ բահմ արա՛, տեսիդ կարօտ իմ, կարօտ իմ,*
*Աչկս ճանապարհիդ մնաց, գալուդ կարօտ իմ, կարօտ իմ։*

*Ձեռիդ բռնիս օսկէ թաս, Աստըծէմէն առնիս մաս,*
*Հաքիլ իս ատլաս ու խաս, ալիդ կարօտ իմ, կարօտ իմ։*

*Օքսուզ-օղլա՛ն, հաքի սիպտակ, դըրուստ պառկի խուղի տակ,*
*Էդ է քու մարքարիտ ակ, լալիդ կարօտ իմ, կարօտ իմ։*

# Գ

## ՃԱՔԻ

*Պասն ու ուտիսը մէկ մէկու հիդ կռուեցան,*
*Ուտիսն ասաւ՝ իմ տիրուչը հուշ կօնիմ,*
*Ինձ որ տանում ըլին քիզ հետ խօսելու,*
*Վունց լայիղ չիմ անի, համ թէ նազ կօնիմ։*

*Պասն ասաւ՝ ինձ վըէն շատ իս խօսում,*
*Էղնէդ կուլիմ, դիրա դռսի խուզ կօնիմ,*
*Էս մէկն էկիլ իմ, ջանիդ նստած իմ,*
*Թէ որ մէկ էլ էկայ՝ դարիդուս կօնիմ։*

*Ուտիսն ասաւ՝ խօսքն ասում իս փիսը,*
*Դու հուտած իս, ինձ ջալդ գալիս իս քիքսը,*
*Դովթալար որ ըլինք, քի վըէն շատ ինք,*
*Գլխումդ կու ծեծինք, հարբած ռուս կօնինք։*

*Պասն ասաւ՝ Քուռ կու բերիմ պղտուըը,*
*Կու խմեցնիմ, կու ցաւեցնիմ քու փուըը,*
*Կուտեցնիմ մախուխը, սուխը, սխտուըը,*
*Լիրթ ու թուքդ համ կու էրիմ—ղուըս կօնիմ։*

Ուտիսն ասաւ՝ խօսքն ասիմ ես հատը,
Քու պարդէղէն միռնի, հիտը քու տատը,
Թէ բարով կուհասնիք Ցուլթի ուրբաթը,
… պանդուր տալով դուս կօնեմ։

Պասն ասաւ՝ խալիլ կուտամ օթախը,
Ես մէջը գող կօնեմ, դուն քաշիս ճխը,
Թէ բարով կու հասնինք մէկ էլ էս չախը,
Ճատ մարդու վուտներ դարիդուս կօնիմ։

Ուտիսն ասաւ՝ խօսքն ասում իս փիսը,
Դուն հուտած իս, ինձ ջալղ գալիս իս քիքսը,
Հինդին կուտեցնիմ շիշակի միսը,
Ջանին ղրւաթ կու տամ, աչկին լուս կօնիմ։

Պասն ասաւ՝ ես քիզ հիտ շատ բան ունիմ,
Ջարթնի ճուռտէրուն՝ օխտը խան ունիմ,
Ես քիզ կու չարչըրեմ, քանի ջան ունիմ,
Խստի էնտի կու փորփըրիմ, փուս կօնիմ։

Օքսուզ օղլանը ձիր թարիփը ասելիս,
Հարբա հարբի վրէն մէ մէկ դարսէլիս,
Ձեզ երկուսիդ տեսնեմ մէտի խօսէլիս,
Դուք որ կուռում ըլիք, ես խօ հաղ կօնիմ։



# ՀԱՇՏԱՐԽԱՆԻ ԲԱՐԲԱՌՈՎ

## Ա.

### ԴԻՎԱՆԻ

Ամենայն ժամ արթուն կացէք, լսէք աւետարանին,
Մեղայ ասէք, խոստովանուէք, ատեցէք չար սատանին,
Մէջ գիշերին, հաւախօսին մեզի յանկարծ մահ ունինք,
Տէր բարերար Աստուած, փրկիր ամէն քրիստոնէին։

Աղաչելով խնդրենք Աստծուց տեղն արդարոց՝ կեանք ա մեզ,
Մեղաց բանին մի՛ ցանկանաք, խիստ դժար տանջանք ա մեզ,
Հայրապետաց դիրքն ենք խախտըմ, էդ ինչպէս վտանգ ա մեզ,
Իսկ ճշմարիտ չենք հաւատըմ օրէնք ու պատուիրանին։

Ադամ խափուեց, գերի ընկաւ, մնում էր պայծառ լուսին,
Տէրն առաքեց մեզ փրկութիւն անեղ որդի Յիսուսին,
Չարչարուեցաւ, խաչուեց, թաղուեց վասն մեր մեղաց մասին,
Մարմինն մեզ հաց ճաշակենք, արիւնն բաժակ գինին։

Պարգևես արքայութեան յոյս ու հաւատ, սէր ինձ,
Ազատես մեղաց տանջանքից արիւնից խաթեր ինձ,
Երես անկեալ աղաչեմ քեզ, ով կենարար Տէր ինձ,
Ծաղուք օղլու բազում մեղքն չի ուզես դատաստանին [1]։

---

[1] Թիֆլիսեցի էր Ծաղուք օղլին, բայց երկար ժամանակ Հաշտարխան ապրելով, ընտելացել է այն տեղի բարբառին։ Նրա վերադարձի առթիւ՝ աշուղ Իվանը հետևեալն է գրում.

«Թիֆլիզից եկած մին Թազա Նուբար, Ծաղուք օղլի,
«Հայիֆ, գնում ես, բաժանւում ես Հաշտարխանէն,
«Պատուելով կասեմ գովասանքդ, ողջով իմանան,
«Բանի աշուղ կան Թիֆլիզումը, պէլուին, հիանան,
«Բարեկամներդ հասրաթիդ ինչպէս դիմանան,
«Մի թողնիր կարօտ, ուղարկիր խաբար, Ծաղուք օղլի»։

Գ. Լևոնեանի ասութեամբ՝ Ծաղուք օղլին 1847 թուին իւր անուանակից և սիրելի ընկեր Ղզլարեցի մի ուրիշ Ծաղուք օղլի աշուղի հետ միասին մի շաբաթուայ մէջ մեռնում են Հաշտարխանում և թաղուած են այն տեղի գերեզմանատանը։ (Տես Հայ աշուղներ Լևոնեանի, եր. 97)։

## Բ

*(Ի վերայ սուրբ Կարապետի)*

*Հիմքն սուրբ Կարապետին լուսածիր ա բոլորն,*
*Սկսեց Լուսաւորիչ հայրն սուրբ Գրիգորն,*
*Մինչ իրիկուն կաշխատէր, միշտ քանդւում էր գիշերն,*
*Լուսաբացին տեսնում էր՝ չի կայ տեղն մին քարն,*
*Հրամայեց ծառային՝ քանդեց քառասուն գազ հորն,*
*Բռնեց ածեց բանդի մէջ էն անիծած դեւերն,*
*Նոր կրկին ձեռնադրեց, որ շինեն լոյս տաճարն։*

*Կը լինի ինչպէս անտակ ծով, շատ ա ողորմութիւնն,*
*Մարդ մին անգամ տեսնելով՝ չի առնիր հովութիւնն,*
*Բարձեցին ջրու վերան, իմանան էութիւնն,*
*Ով չի տեսել՝ ինչ գիտի, անչափ է զօրութիւնն,*
*Ում վրայ որ քաղցրանայ, շատ կտայ գիտութիւնն,*
*Խելքի դարար տաճար ա, ինչպէս ա շինութիւնն,*
*Տրդատը ուսովն ա բերել մարմար քարի սիւներն։*

*Արեւելից արեւմուտ իսկի չի կայ նմանն,*
*Կաղ դեն ծառայ գրուեց, որ լինի փոշէհանն,*
*Երեւլի քրտնում ա լուսաբուղխ գերեզմանն,*
*Զունի երեսպաշտութիւն, ուղիղ է դատաստանն,*
*Յոյս հաւատով խնդրողին կը տայ մուրատ իւր տանն,*
*Ամեն խորհուրդ կատարող՝ նա է Մշու սուլթանն,*
*Սրբոց միջին երեւլի, որ չի կայ բարեբարն։*

*Հայոց ազգիս պարծանք ա, չի կայ Թայն երկրում,*
*Հաւանել ա, Նստել ա Քուրդուստան Բալուայ սարում,*
*Մանանայն երկինքից վէր ա գալիս ծառերում,*
*Աշխարհքն լիանում ա, փափագով շատ են գնում,*
*Լիասիրտ գնացողներ շուտով մուրազն են ճարում,*
*Աշխարհի չորս կողմից Նրա մատաղն են բերում,*
*Չի կայ հէսապ մատաղին աւուրն Վարդէվառն։*

*Մօր փորում մարգարէացաւ, ճանանչեց Աստու փառքն,*
*Ծնեց մօր արգանտից, հրեշտակ առաւ բոլորքն,*
*Պահպանեցին լեռնում, Աստու էր հրամանքն,*
*Հաւատ բերեց քարոզով. շատ կռապաշտ հրէայքն,*
*Քրիստոսին կնքահայր, շատ է Նրա հնարքն,*
*Էն ժամանակից մնաց մկրտութեան շնորհքն,*
*Ցոյց տուաւ Նաղուբ օղլին իւր շնորհքի աղբիւրն։*

## Գ.

(Վասն Ներսէս Կաթողիկոսի)

Ներսէս կաթողիկոսն մեզ հոգևոր տէր եկաւ,
Իսկ երկրորդ Լուսաւորիչ, կրկին աշխարհ նոր եկաւ,
Ազգի պայծառացնող մեր հայոց խաթեր եկաւ,
Երկայնամիտ, տեղեակ, արդար դատաւոր եկաւ,
Ուղիղ ամենայն բանից, քննեց բոլորն, եկաւ։

Հազար ութն հարիւր քսանութից մինչի էսօր խօսում ենք,
Մեր շնորհալի Ներսէսն, ախ, ինչ էլաւ, ասում ենք,
Փոքր մեզ հովութիւն էր, Քիշնով համբաւ լսում ենք,
Միշտ հանապազ, տիւ գիշեր ճանպարհն սպասում ենք,
Աստուած լինքն կամեցաւ, արժան տեսաւ, որ եկաւ։

Ճատ փափագով մնում ենք, մենք քու տեսին ինք կարօտ,
Համբուրենք սուրբ աջն քո, վասն էն մասին ինք կարօտ,
Ուսումով լուսաւորես, որ էն լուսին ինք կարօտ,
Ժողովեցին, ընտրեցին քեզի պէսին ինք կարօտ,
Ուրախ լերու՛ք, ա՛զգ հայոց, հի՛մա հայրն մեր եկաւ։

Փառք բարերար Աստուծոյ, խնդիրքն մեր ընդունեց,
Ինչպէս խոր վիրապիցն Լուսաւորչին որ հանեց,
Նոյն և նման Ներսէսին հայոց համար պահպանեց,
Հուսումով լուսաւորաւ Քիշնով ուսումի կողմանէց,
Ապա թէ մերս կողմն կամեցաւ, շնորհ եկաւ։

*Լուսաւորչի ժամանակից վարք ա մեր հայոց համար,*
*Մենք՝ էսպէս կաթողիկոս, փառք ա մեր հայոց համար,*
*Ձատ էսպէսն չի ըլնիլ, կարգ ա մեր հայոց համար,*
*Պաշտելի և տօնելի հնարք ա մեր հայոց համար,*
*Ուսուցիչ, բարեխրատիչ, բարեպաշտ, բարերար եկաւ։*

*Վաղարշապատ քաղաքին տեղն Յիսուսի իջման,*
*Վասն ընտրելոյ մասին բոլոր անդ ժողովեցան,*
*Համաձայն խորհուրդ կապեցին՝ ով որ կան ամենեքեան,*
*Հայրապետութեան փառք Ներսէսին յօժար կամօք կամեցան,*
*Հոգւոյն սրբոյ շնորհօք հիմա հայրն մեր եկաւ։*

*Նիկոլայ Պավլովիչն ինքնակալ Թագաւորն,*
*Խիստ քաղցրութեամբ ընկալաւ, ն հարկէ, ունէր սէրն,*
*Եւրոպիա, Պարսից կողմն, կամ Օսմանցու խոնթքարն,*
*Ոչ որ ընդդէմ չի իլաւ աշխարհն, տիեզերն,*
*Ձարադրանքդ, Եաղուբ-օղլի, գեղեցիկ յարմար եկաւ։*



## Ա.

Ա՛խ, մարալ ու ջէյրա՛ն,
Ե՛կ, դուս արի սէյրան,
Դառնամ քեզի հէյրա՛ն։
Պատկերովդ նման ես ճառագայթ լոյս արեգական,
Փայլում ես զանազան.
Լցուած լուսին ես բոլոր, մաքուր, տասն ու հինգ օրուան,
Եղանակդ է աշնան.
Զիլփի մազերդ չորս կողմիցը թուխ ամպի նման,
Խիստ կապել ես դուման.
Ջուխտ աչքերդ՝ վառ նման է չանգի [1]) լոյս չրագդան,
Ծուխ կը տայ երազման [2]).
Թերթերունքերդ սուր սուր նշտար խանչալ ու փէյքան,
Ունքերդ է քաման.
Խիստ լարուել ա, հլորուել ա, պինդ շարուել ա վէյհան,
Նոր դուս եկայ մէյդան.
Սրտիս նշանը խորովեցիր, այրեցիր բիրդան,
Կեանքս արիր հէյրան։

Սուն ես հրեղէն երկնքիցն քաշ անդայաղ, անթել,
Ի՞նչ վարպետ ա սարքել.
Աղամայ դէսը մինչի օրս քեզ մարդ չի տեսել,
Տեսնի կու մնայ պէլ.

---

1) Անհասկանալի.
2) Անհասկանալի.

Ոչ ոք միամիտ չի կարենալ քեզ ձեռը ձգել,
Պինդ բռնել ու պաւթել.
Ճուտով գլուխը ջանլաթի պէս ջահտ կանես կտրել,
Ոչխարի պէս մորթել.
Թարիֆլամէդ սրտումս գրած անչափ առաւել,
Լեզուով չի լինի պատմել.
Ա՜խ, ես ո՛ւմը գնամ, արզուհալս ո՛ւմն արզ անեմ էլ,
Նհախ ինձ մի սպանել.
Այս աշխարհումս միայն դուն ես դոզալների սուլթան,
Քաշի՛ր դամ ու դովրան։

Քաշուել ա բոյիդ խուբի սառասատ [1]), քաշած խաթանգի,
Դալար ծառ ես խնկի.
Պտուղ ունիս քաղցր հոտով անուշ բաղրանգի,
Գինն է շատ թանգի.
Հինդ կամ Խորասան չի իլի քո հատը փարուանգի,
Ոչ չի աժի թանգի.
Ոչ ենգի դունիա կայ քեզ պէս սուրաթ ֆռանգի,
Քեզ որոնողն պէտք ա հագնի փոստը փալանգի,
Բալքամ քեզի ճանգի.
Ինչպէս թարիֆը պէտք է քցել թողել ժառանգի,
Որ աշխարհս դընգի.
Էլ ինչպէս գովեմ, քեզ տեսնեմ, արա հրաման,
Հուր փարի գլման։

Վիզդ շուշայ ա քունգի նման մինայի ֆարֆուր,
Հագիդ ջուբայ մախմուր.
Անտես գաղտից եփ ա գալիս բղխում ա խուռ-խուռ,
Մէկ անմահական ջուր.

---

[1]) Չի կարդացւում։

Էդ ... գոհար բերանդ չինել ես աղբիւր,
Մի թաս լցրու, ինձ տուր.
Էշխից կրակը սրտիս մէջը այրում է գիւռգիւռ,
Նման կայծակի հուր.
Ինչպէս վառել ես, ռահմ արա, էլ ինքդ հանգցրու,
Քարամդադի դաստուր.
Էշխից հաւեսու մարդ կը լինի խրաւի մահրուր,
Տեսէք ամէն աւուր.
Էգպէս տեսակով քաղցրն ես դու ամենին սիրական,
Գովելու արժան։

Քու էշխից թարիֆը ման է գալի բերին օվանդի [1]),
Որ քցի փրսանդի.
Բէչարայ Թուրինջին մի քցի գաւթ ու քամանդի,
Անճարին հնազանդի.
Որ ըստ օրէ մարդուս խլած կեանքը կու քանդի,
Ձատ կրգայ նոխսանդի.
Քաշեց էշխից սէրը տարաւ ինչպէս քար աղամանդի,
Գալեց, կապեց բանտի.
Խափով տարար ինձ քցեցիր ուսուլով փանդի,
Մէ իլի շառիրանդի.
Թէ թարիֆլամէդ ողջ ասեմ, մարդ կը զարզանդի,
Հոգին կու աւանդի.
Մի զարարի քեզնից չունիմ ումիդի դուման,
Էս ցաւիցն ինձ հան։

---

1) Անհասկանալի։

## Բ

(Տաղ ի վերայ Ադամայ եւ Եւայի)

### Գ Ո Ւ Բ Է Ւ Թ

*Այբն՝ Աստուած որ ստեղծեաց հայր Ադամին, մայր Եւային,*
*Բենն՝ բերաւ լուսեղէն զարդ, հագցրուց հարսն ու փեսային,*
*Գիմն՝ գոչեաց որ նստեցոյց ի մէջ դրախտին եդեմային,*
*Դան՝ դրախտն էր, շատ կայր պտուղ, չարն ու բարին չիմանային,*
*Եչն՝ եկաւ նշանց տուեց իւր զօրութեամբն աստուածային։*

*Զան՝ զրուց արաւ օձի հետ, մտաւ տամարն՝ հիացան,*
*Էն՝ էս կերպիւ խափեց նրանց. Աստուած կը դառնայք՝ չիմացան.*
*Ըթն՝ ըշտապեց աստուածանալ, կերան պտուղն մերկացան* [1],
*Թոն՝ թօթափեց լուսեղէն զարթն, փառք ու պատուիցն վե-*
*րացան* [2],
*Ժէն՝ ժանտ օձի զուր խօսելուն ճշմարիտն հաւատային։*

*Ինին՝ իմացաւ՝ ինչ էլար, կանչեց՝ Ադամ ազնուական,*
*Լիւնն՝ լոկ մերկ էր մարմնով, չունէր հագուստն սեպհական,*
*Խէն՝ խափեց, թէ կեր էդ պտղէն, խիստ համեղ է ախորժական,*
*Ծան՝ ծիծաղեց, ասեց՝ միթէ չունէիր կերակուր բաւական,*
*Կենն՝ կամքն կատարեցիք, այժմ դարձէք խաւարային։*

---

1) *Մի օրինակում. ըթն՝ շտապից կերան պտուղը, չուտով լուսիցն հեռացան։*

2) *Մի օր. թոն թօթափեց լոյս պատկերն, փառք ու պատուիցն զրկուեցան։*

Հոն՝ հիւանդ էր, չի տեսաւ, կուրացել էր հոգւոյ ակն,
Ձան՝ ձախ քցեց ամէն բանն, մթնեց պայծառ արեգակն,
Ղատն՝ ղամղով ասեց, թէ ես կու բերեմ լոյս ճրագն,
Ճէն՝ ճար չունէր՝ քարին զրեց իւր մուշտըլուղ զարմ ու զաւակն,
Մենն՝ մեզի տուաւ ծառայ հոգւով մարմնով սատանային։

Յին՝ յերբ առաւ ձեռագիրն, տարեց քցեց գետ Յորդանան,
Նուն՝ նեղութիւն շատ տուաւ էն խաբեբայ չար սատանան,
Շան՝ շատ կլանեց սուրբ հոգիքն, ածեց դժոխքն՝ լիանան,
Ոն՝ ուզեց թէ որ ազատի սուրբ հոգիքն ամենայն,
Չան՝ չըկամէր շուտով գայն, կամքն էր ստեղծող արքային։

Պէն՝ պարզեօք Աստուած իջաւ յերկնից յերկիր խոնարհական,
Ջէն՝ ջահ վառուած բնակեցաւ յարգանտ կուսին հաւանական,
Ռան՝ ռահիւ փառօք ծնաւ, էր կատարեալ մարդ մարմնական,
Սէն՝ սուրբ մարմնովն չարչարուեցաւ, խաչուեցաւ կամաւորական,
Վեվն՝ վասն մեր մեռաւ, որ թաղեցին անդնդային։

Տիւն՝ տէրն մեր երեքօրեայ յարեաւ փառօք գերեզմանէն,
Րէն՝ րամեալ ընդ երկնայնոց, համբարձաւ յերկինս ի յերկրէն, [1]
Ցոն՝ ցաւալից սուրբ հոգիքն ազատուեցան ի մահուանէն,
Ւիւնն՝ հիւծեալ է խեղճ հոգիս, որ կապեալ կամ ի չար ախտէն,
Փիւրն՝ փրկիչ, փրկեա զանձինս ի տանջանաց և ի բանտէն,
Քէն՝ Քրիստոս, զքեզ օրհնեմք, զՀայր և զսուրբ Հոգին, ամէն,
Օն՝ օր տուր արքայութեան, մեղաւոր Թուրինջ բանդային։

---

[1] Մի օրինակում՝ րէն րահմն էրիտ երկնայնոցն, համբարձաւ յերկինս յերկրէն։

## Գ.

*Աշխարհ դուս եկած՝ դու նոր նշան ես,*
*Քեզ գովել չի լիր, շատ զանազան ես,*
*Դու շահզադայ ես, սուլթան ու խան ես,*
*Նստած թախտումդ՝ ադիլ դիւան ես,*
*Մէկ զառ բաղարի հուքմ հրաման ես,*
*Զահմով խօսալով՝ մարդ կու սպանես,*
*Քան զՍողոմոն ճարտարաբան ես,*
*Ամէն բանովդ շատ փայլէվան ես,*
*Տար կատարեալ ես, դու նոր ջիւան ես,*
*Էդ իմաստութեամբ ո՞ւմ կը նմանես,*
*Գեղեցկութիւնով իւսուֆ ու խան ես,*
*Հրեղինաց մէջին խիստ գովական ես։*

*Սիւմբիւլ մազերդ նման է սաթի,*
*Զառ եազլուխներով ղաթ-ղաթ փաթաթի,*
*Հէնց ա գլուխդ՝ սադաֆի զութի,*
*Սարքած նման ես ոսկի սահաթի,*
*Պէտք ա քեզ պահել փառք ու ադաթի,*
*Ձատ մարդ քո վերան ախուն կու վիթի,*
*Կու պտրտի քեզ քաղցած անօթի,*
*Քար ես պատուական զումրութ եաղութի,*

Մէկ անգումանայ տեղ ես ղուղրաթի,
Անգին ջավահիր դու նոր մաղան ես։

Բոյըդ չինարի, սալբու ուէհանի,
Լիբաստդ թամամ կանաչ վարանի,
Կռներըդ բարակ, շիւղ եասամանի,
Ձեռներդ կակուղ մոմ կը նմանի,
Մատներդ շմալ նազիք նազանի,
Ծոցդ մախմուր՝ եա չայիր չիմանի,
Բաղչայ ու բաղ ես, վարդ ու ռէհանի,
Զամբաղ, նոնոֆար ու բալասանի,
Հոտդ շատ մարդոց խելքն կու տանի,
Դու անթառամ ծաղիկ բուրաստան ես։

Թազայ գոված մատտահ ես ֆրանգի,
Երանի նրան, ով քեզ կը ճանկի,
Զարդարուած նման ես փարշեանգի,
Դեռ քո թարիֆն աշխարհ չէ ընկի,
Ոսկէփետուր ես ռանգ ռանգի,
Բարձրաթռչուն ես նման կռունկի,
Ինքդ գիտուն ես, ձայնդ է ղանգի,
Լսողն կու դառնայ խև ու բանգի,
Ճախ-շախ կու կարթես ամենայն հանգի,
Քախցրախօս Բիւլբիւլ Հազարան ես։

Էյ ոսկեայ կուռք Անահիտայի,
Վախեմ՝ քեզ տանեն Խաթայ Խութայի,
Հնդի Մօլթանին թէ քեզ պատահի,
Կու կարդայ ջրամ-ջրամ օթայի,
Խեղճ Թուրինջը քեզ մաթ-մաթ կու նայի,

*Մէկ թամաշայ ես ուրիշ ջուռայի,*
*Կանգնած նման ես կաթուղիկայի,*
*Նմանակ ական ոսկէ ջղայի,*
*Աժես բիւր հազար խազինայի,*
*Էդ գովասանքիդ հալա էժան ես։*

---

## Դ.

Աշխարհումս փայլում ա լոյս երեսիդ զօրութիւնը,
Հախ միայն տէրն պահի քեզ օգնական յարութիւնը,
Հայցելով կու խնդրեմ՝ քեզի էլ տայ բարութիւնը,
Աւելանայ ումրդ, չի հանդիպի չարութիւնը,
Թաւադի սօյ շահզադայ, կու վայելի խանութիւնը,
Մին խեղճիս ռահմ արա՛, էրաւ էշխիդ սէրութիւնը։

Քաղցրահամ խօսալ ունես, մին շէյդայի բիւլբիւլի պէս,
Մազերդ բանաւուշ ա, բացուել ա թառ սիմբիւլի պէս,
Ծոցիդ մէջն բաղ ու բաղչայ, ծաղիկ ռէհան գիւլի պէս,
Էլ քեզի զէն չի համնիլ՝ ջավահիր անգին լալի պէս,
Ճատ ուստայ զարաֆ պիտի՝ իմանայ քո էութիւնը։

Լուսին ու արեգակ ա, զովը ա անում լոյս պատկերդ,
Ճատ մարդի խելք ա տանում եաղութ ու ալմազ աչքերդ,
Ճատերին ծառայ շինաւ նաշիդ ու նիգեար ունքերդ,
Ման ես գամ թաւուզի պէս, մալում անում ինթիզարըդ
Հէչ գեօզալ քեզ չի համնիլ, ունիս էդ գեղեցկութիւնը։

Բօյըդ սալբու չինարի, էյ նովրաստայ թազայ ջիվան,
Չէրքէզու բարակ մէջքիդ Թիրմայ կու սազի աննման,
Պռօշըդ ղանդ ու նաբաթ, ճարտար լեզուդ թութի զուբան.
Եար, հարսաթըդ քաշելով՝ սիրտս իլել ա բիրեան,
Չուն ինձնէն հեռացել ես, սաս լսեմ վատութիւնը։

*Ես Թաւրինջ շակիրտն եմ՝ ուսում առած իմաստութեան,*
*Աղրայիլի ղադայ ես՝ նման հուրի ղլմանութեան,*
*Գովական գովածներին մէկուն ունես նմանութեան,*
*Բուխարայ, քիւլ Իրանում չի կայ քո պէս սահմանութեան,*
*Հուքմովդ ղաֆլծ ես արել Հաշտարխանի տէրութիւնը։*

---

## Ե

Բիւլբիւլ եմ վարդից կարօտ, խարի ձեռից ղանդատ ունիմ,
Քցել ա ինձի ջուղայ, եարի ձեռից ղանդատ ունիմ,
Թէ կուզէք՝ ջոկ ջոկ ասեմ, հարի ձեռից ղանդատ ունիմ,
Վայում եմ՝ լաղ չի կայ, ղարի ձեռից ղանդատ ունիմ,
Խոցերս մղկտում ա, ցաւի ձեռից ղանդատ ունիմ,
Ի՞նչ անեմ, չի սաղանում, ճարի ձեռից ղանդատ ունիմ,
Լսո՞ւմ էք, էդպէս դարդ ու սարի ձեռից ղանդատ ունիմ։

Հարգլիզ ինձ ումից չունիմ, մինչի մահս ուրախանամ,
Դարդերս միտ կու բերեմ, կու զարհուրեմ, կու զարմանամ,
Զումքի էլ ճար չի կայ, ճարս էդ ա, որ դիմանամ,
Մնացել եմ մոլորած, չեմ իմանում, թէ ուր գնամ,
Դիւանս խան չի անում, չարի ձեռից ղանդատ ունիմ։

Ինձ համար ժամանակն վատացել ա տարիներն,
Կարծեմ, էլ մարդ չի քաշիլ իմ քաշած դարդ ու սարերն,
Տալիս ա ինձ նեղութիւն, չարչարում ա մարդուներն(*)
Չարերն մօտացել են, հեռացել ա բարիներն,
Զունիմ ինձ աջողութիւն, չարի ձեռից ղանդատ ունիմ։

Ջավսաթս քարի նման էշխի քիւլիւնկով տաշել ա,
Դառն ու քաղցր խօսքերով սրտիս արիւնը քաշել ա,
Ամա լերդ ու ջիգարս վառ վառ կրակով խաշել ա,
Էս բաբաթ, մինչի օրս, իմ ջիւան ումրըս մաշել ա,
Է՛յ զալում, եաղի սիթամքեարի ձեռից զանգատ ունիմ։

Թուրինջն եմ՝ դարդի արբաբ, չեմ իմանում, թէ ինչ անեմ,
Թէ լինի Լոգման հեքիմ, էլ շահ չունի՝ դանգատ անեմ.
Չի կարելի սուր քաշեմ, ինքս ինձի տամ սպանեմ,
Չեմ էլ մեռնում՝ պրծընեմ, ցաւի ձեռէն բանդիվան եմ,
Նամուսն ինձ խեղդել ա, առի ձեռից զանգատ ունիմ։

## Զ

Գեղեցիկ ես գեղեցիկ, շատ դիամաթ ես գեղեցիկ,
Չեմ իմանում պատճառդ, դու ինչ ջահաթ ես գեղեցիկ,
Զորս կողմդ զառ վարաղ ա, փուշթի մազաղաթ ես գեղեցիկ,
Ճարաղի մոհրայ տուած՝ թուղթ—քեաղաթ ես գեղեցիկ,
Լեզուով քեզ գովել չի լինիլ, ուրիշ բարաթ ես գեղեցիկ։

Էդ քու յարմար բաներդ հարգիդ չիլիր իմանալի,
Ճինուածդ զուգրաթտայ ա, խիստ պատուական, գարմանալի,
Քո թայրդ, բարէբարդ, յատուկ չիլիր գիւմանալի,
Մաշուր վարպետի ձեռով յօրինուած ես հիանալի,
Ճայնիշիով գարդարած քեօշք—իմարաթ ես գեղեցիկ։

Էշխդ սիրտումս ծով ա, որ պատուել ա, ռւման ա,
Տեղբատեղ թարիֆ անել հար աշղ դժուար կիմանայ,
Չի կարանալ քեզ գովել, քո թարիֆն զանազան ա,
Կարծեմ էս աշխարհումս, դժար թէ քեզ պէսն գոյանայ,
Քան գՔեարամն առաւել դու փարիզատ ես գովելի։

Ինչ վախտ ինձ տեսնում ես, աչքով ունքով նազ ես անում,
Անդամակ ես սպանում, հոգիս մարմնէս վազ ես անում,
Զարգարուած թաւուզի պէս, շխալով փարվազ ես անում,
Խօսալով խելք ես տանում, քաղցր ձայնով սազ ես անում,
Հազար վինտով, չարխերով սարքած սահաթ ես գեղեցիկ։

*Բաղէդ բաղվան եմ ղառել մէկ նուռն ու նարնջի համար,*
*Ծաղիկ ես ռանգ ռանգ, ինչպէս մեղրաճանճի համար,*
*Համ մալ ես, համ խապինայ, չեմ հոգալ ղազանջի համար,*
*Ոսկետիպ գիրք ես դառել խեղճ պարապ Թուրինջի համար,*
*Ձեռնիս բռնած կարդում եմ, նազլու հէքիաթ ես գեղեցիկ։*

# Է

## ՎԱՐՍԱՂ

*Երկնային Թագաւոր ստեղծող Աստուած,*
*Ստեղծեաց Ադամին իւրն նմանակ, ժառանգ յիշատակ,*
*Յիշատակ ժառանգող դրախտում նա էր,*
*Չի կարաց վայելել փոքր ժամանակ, զրկուեցաւ իստակ։*

*Իստակ զրկուեցան փառաւոր բաղդից,*
*Անմահ էին, մահ առին, վէր ընկան Թախտից,*
*Երբ իրանց հանեցին, դուրս արին դրախտից,*
*Ստեղծուածք սուք արին բարձր աղաղակ, բոլոր բովանդակ։*

*Բովանդակ ինքն Ադամ յոյժ ախտեղացաւ,*
*Սկզբնական մեղքին խիստ համեղացաւ,*
*Քաշեց մին ժամանակ՝ կինն յղացաւ,*
*Մեղաց պատճառ լլան, ծնեցին զաւակ, գող և աւազակ։*

*Գող աւազակ Կայէն չի խոստովանուեց,*
*Չար խորհուրդ նախանձ սրտէն չհանեց,*
*Անմեղ զառն եղբօրն տուեց սպանեց,*
*Ճակտին պող բուսաւ, իլաւ խայտառակ, խիստ անօրինակ։*

Անօրինակ մարդոյ փորձանքն տեսէք,
Ամենայն յանցանքն լաւ՝ որ չլսէք,
Օրէնք պատուիրանքին ընդդէմ բան չասէք,
Ով Աստծու բանին կընկնի հակառակ, կըլնի անդանակ։

Անդանակ արեցին քանի սուրբերի,
Որն սպանեցին, որն արան գերի,
Չարչարուեցին, մեռան Աստուծոյ սէրի,
Քանի՛ մարտիրոսներ, քանի՛ նահատակ, առին Թագ պսակ։

Պակի արժան մարդ հրեշտակի պէս ա,
Աշխարհից հեռի ա, մարդուս անտես ա,
Մեղաւոր Թուրինջն եմ, խնդիրքս էս ա,
Տէր Աստուած, դու կանգնես ամենին քոմակ, պահես աջողակ։

# Ը

Ինձ վատութիւն, արի՛, մատա՛ղ, մի՛ անիլ,
Ջանս քեզի ղուրբան սաղաղ մի՛ անիլ,
Մի փուչ բանով ինձ բէզամաղ մի՛ անիլ,
Արտասունքս վարար բուլաղ մի՛ անիլ,
Աստուա՛ծ սիրես, խոց սիրտս դաղ մի՛ անիլ։

Քու ճամփումդ ջիւան ումրս փուչ արի,
Կու խնդրեմ Աստանէ՝ տայ քեզ միշտ բարի,
Մուրուաթ արա՛, կա՛ց մուդարար իրղարի,
Ինչ որ ասեմ, խօսքս լսէ՛, կատարէ՛,
Չէ՛ մի՛ ասիլ, ունքերդ թաղ մի՛ անիլ։

Ի՞նչպէս անեմ, ո՞ւմ ասեմ դարդ ու սարս,
Օր բայ օր էւելնում է ահուզարս,
Մղկտում է, եռ է գալի ջիգարս,
Էշխիդ սիրով ճղճղել ես խուբարս,
Աստուա՛ծ սիրես, մահլամ դի՛ր, աղ մի՛ անիլ։

Եփրատացոց թագաւորն ես դու ահեղ,
Նոր զարդարուած թախտիդ վրէն փառահեղ,
Ջանյաթներդ կանգնեցրո՛ւ դուն ահեղ
Թէ սուչ չունեմ՝ դուլթսաղ մի՛ անիլ։

*Լաց ու արտասունքս գետի նման ա,*
*Թուրինջի պէս հար մարդ դժուար դիմանայ,*
*Ո՛վ ընկել ա, ո՛վ քաշել ա, կիմանայ,*
*Նա քեզ կասի՝ էշխի հետ հաղ մի՛ անիլ։*

---

### Թ.

*Կարմիր կանանչ բացուած վարդի նման ես դուն,*
*Հիլ ու միխակ, դարչին, հոտով ըէհան ես դուն,*
*Մայիլ եմ պատկերիդ, շատ աննման ես դուն,*
*Գովածներու մէջ յոյժ գովական ես դուն,*
*Աշխարհում մին ես, տուրփա ջիվան ես դուն,*
*Բարեբարդ չկայ, ինչպէս խաան ես դուն։*

*Ինձ պէս քու դադրը լաւ իմանող չկայ,*
*Ուզում եմ քեզ առնեմ, ինձանում փող չկայ,*
*Գինիդ բարէբարը աշխարհում չկայ,*
*Ջաւահիր ես անգին, քեզի պտող չկայ,*
*Թագաւորի խազինէմէն քարէն գուման ես դուն։*

*Քաղցր է բերանդ, խիստ մեղրով լիքն ա հալբաժ,*
*Պռօշներդ ղանդ է, լեզուդ շաքար նաբաժ,*
*Աճմ, տուր ինձի խմեմ մէկ փիալա շարբաժ,*
*Ինձ համար դուն մաղայ ես, հազար բաբաժ բաբաժ,*
*Փռած զարունքի մէյդան սուփրա ու սեղան ես դուն։*

*Էլ ինչ գովեմ քեզի, որ էդ կերպին դուն կաս,*
*Լաւ հուրի ղլման ես, որ էլ չիլի պակաս,*

*Ով որ քեզի կու տեսնէ, էշխէմէդ կուլի հակազաս-հավասըզ*[1]),
*Ծլած, ծաղկած մամուռ, չայիր-չիման ես դուն։*

*Լալ է իլի լեզուս բաց է, Թարիֆդ խան ասել եմ,*
*Գովասանքդ կասեմ, քանի որ կենդանի եմ,*
*Թուրինջն եմ, ... մարդի մէյիդան եմ,*
*Թէզուզ ինձի սպանես, շունչ պիտի փիքր քաշեմ,*
*Էսպէս մեռածներուն շունչ հոգի ջան ես դուն*[2])։

---

1) *Առաջի բառը չի հասկացւում, իսկ երկրորդը գուցէ նշանակում է անեռանդ։*

2) *Վերջին տունը փոքր ինչ անհասկանալի է, գուցէ արտագրողի շնորհիւ։*

## Ժ

*Նոր բահար ես գովելի, Թալայ նուկրար ես գովելի,*
*Էդ գեղեցկութինովդ շամշ ու ղամար ես գովելի,*
*Արևելեան կողմից կապած կամար ես գովելի,*
*Աննման ես գեղեցիկ, նախշ ու նկար ես գովելի,*
*Չի համնիլ քեզ գովասանք, դու անյարմար ես գովելի,*
*Լուսաբեր աստղի նման պայծառ ու վառ ես գովելի։*

*Նազ իլելով դուս կու գաս նախշկիքեար օթաղի մէջէն,*
*Թօփ կարմիր վարդի նման ջոկուել ես եափրաղի մէջէն,*
*Քաղցրահամ շամամներդ բարձրացել ա թաղի մէջէն,*
*Ձուխ բօյդ թահր ես առել արքայութեան բաղի մէջէն,*
*Միշտ կանանչ ա տերևդ, դու սալբու ծառ ես գովելի։*

*Լուսով ես, պատկերով ես, քանց արեգակի վրայ,*
*Վառւում ես ճրագի պէս ոսկի աշտանակի վրայ,*
*Փայլում ես մաշալի պէս, գունով ես ռանգի վրայ,*
*Յօրինած ես կայսերաց, թագաւորի թագի վրայ,*
*Թրաշ արած անգին եաղուտ քեօհվար ու քար ես գովելի* [1]։

---

[1] *Մի օրինակում՝*
*Հէնց սիրուն չափաղ ունիս, լաւ է արեգակի վրայ,*
*Փայլում ես չամալի պէս, գունով ես կրակի վրայ,*
*Թագաւորից անճարով ես ոսկի աշտանակի վրայ,*
*Մարգարտի պէս փայլ ես տալիս թագաւորաց թագի վրայ,*
*Կամ խաթա ես, խութա ես, գուն անգին քար ես գովելի։*

*Թայ չունես աշխարհումս, եարաբ դու ի՞նչ օրինակ ես,*
*Բիւլբիւլ ես գարնանային, ճարտարախօս ծիծեռնակ ես,*
*Բաց արա՛ արքայութեան բաղի դուռն, քանի՛ փակես,*
*Գիտեմ՝ անոյշ հոտով ես, վարդ, ռէհան մանուշակ ես,*
*Կամ Խաթայի Խութայի մուշկ ու ամբար ես գովելի՛։*

*Ո՛րտեղան ո՛րտեղ, Թուրինջ, ռաստ եկար դու էս պահն,*
*Դէս ու դէն պտուտ գալով՝ ախրն ինկար էշխի ջահն,*
*Ինկել ես, չես պրծնիլ, կառնի հոգիդ զալըմ մահն,*
*Հազար որ տարի չունեմ՝ ինչ կանեմ հէքիմ—ջառահն,*
*Ինձ համար անմահական դու դեղ ու ճար ես գովելի։*

---

## ԺԱ

### Դ Ո Ւ Բ Ե Ւ Թ

*Միրելի՛, բոյըդ ռանգ, ռանգ, ռանգ,*
*Զարդարուել ես խիստ լև, լև, լև,*
*Զառ ու զառ բաֆթայ թանգ, թանգ, թանգ,*
*Էն էլ մէկ ուրիշ ձև, ձև, ձև։*

*Ձեռվդ լոյս ես վառ, վառ, վառ,*
*Էրում ես մարդու սար, սար, սար,*
*Հրեշտակ ես հոգէ—առ, առ, առ,*
*Չունես պակասութիւն և, և, և։*

*Ետոպու երկրի ղազ, ղազ, ղազ,*
*Ջուրի շնորհք ու սազ, սազ, սազ,*
*Տեսնողը կանի հազ, հազ, հազ,*
*Թէ փարվազ անես, թև, թև, թև։*

*Թևերդ է նախշուն վարդ, վարդ, վարդ,*
*Թովուզի նման ես զարդ, զարդ, զարդ,*
*Ոչ հրեշտակ ես, ոչ մարդ, մարդ, մարդ,*
*Քեզնէն կու փախչի դև, դև, դև։*

*Դիւանհար եմ ու սար, սար, սար,*
*Ման եմ գամ սար ու քար, քար, քար,*
*Թուրինջն եմ, արա ճար, ճար, ճար,*
*Էշխէդ էլել եմ խև, խև, խև։*

---

## ԺԲ

Տիպ ու դէմքդ զառվարադ դաֆթար նամակ չէ՝ ի՞նչ ա բաս,
Սիրելի՛, քո կերպարանքդ լուսնիակ չէ՝ ի՞նչ ա բաս,
Ճոդդ պայծառ արեգակի նմանակ չէ՝ ի՞նչ ա բաս,
Քաղցրախօս էդ քո լեզուդ ղումրի թութակ չէ՝ ի՞նչ ա բաս,
Ղալամ քաշած ունքերդ կեռ կամարակ չէ՝ ի՞նչ ա բաս,
Բերանդ, պռունկներդ մեղր ու կարագ չէ՝ ի՞նչ ա բաս։

Քողըդ առար՝ երեսըդ տեսայ, խալդ զարդարել ես,
Բոլորուած լուսնի նման՝ նուր ջամալդ զարդարել ես,
Քցել ես դօշիդ վերան սուրբ հեքիալդ զարդարել ես,
Կապել ես բարակ մէջքիդ թիրմա շալդ զարդարել ես,
Հագել ես սալբի բօյիդ ղադդ ու ալդ զարդարել ես,
Սարասար զարբաֆ դիպայ՝ գիւլ, նար ռանգ չէ՝ ի՞նչ ա բաս,

Էլ չիկայ աշխարհումս յատուկ քու բարերարի պէս,
Սումբիւլ մազերիդ հոտն գիւլ, ռէհան, սուսամբարի պէս,
Քցել ես մէջքիդ վրայ երկու ծամդ շահմարի պէս,
Էդ քու ալ պռունկներդ նման միւշկի ամբարի պէս,
Ծոցըդ բաղչայ ու բաղ ա, ջուխտ շամամներդ նառի պէս,
Բոլորուած անձդ սիպտակ՝ նման ձուն նստած սարի պէս,
Սինադ մարմար քարի պէս սիպտակ ճերմակ չէ՝ ի՞նչ ա բաս։

*Թուրինջն եմ, դարդիս համար ղուսայ ու ֆիքր շատ կանեմ,*
*Վախտ կիլի՝ որ ինձի ես կը մոռանամ, քեզ եադ կանեմ,*
*Իմ ջահէլ ջիւան կեանքս ես կու քանդեմ, բարբաթ կանեմ,*
*Սուր կու տամ ինքս ինձի, կու սպանեմ, ազատ կանեմ,*
*Ասեցիր՝ թէ սաբր արա՛ յետ ու առաջ իմդատ կանեմ,*
*Դժուար հիւանդ եմ ինկած՝ գիշեր ու ցերեկ դադ կանեմ,*
*Էս ցաւն ես ինկել եմ՝ անճառ կրակ չէ՝ ինչ ա բաս։*



## Ա.

*(Ի վերայ աշուղների)*

*Անկաջ արէք, աղաներ, երկու աշուղ հիւր են եկել,*
*Փառք սրանց Ստեղծողին, միտքերն շատ սուր են եկել,*
*Սուրբ Կարապետի վանքից ողջ և առողջ լուր են եկել,*
*Մաքուր սուրբ գերեզմանից անուշահոտ բուր են եկել,*
*Եօթն անուան շնորհօք անսպառ աղբիւր են եկել,*
*Բոլոր համայն սուրբերից անմահական ջուր են եկել,*
*Իսկապէս խորհուրդ արած՝ լի ոսկի սափուր են եկել։*

*Փառք տալով մին միտք անենք էն աճեղ բանն Անհասի,*
*Տուել ա սուրբ շնորհն, սրանց քցել ա հաւասի,*
*Յատուկ պարգև ա տուած սուրբ Մկրտիչ Յովհաննէսի,*
*Վառուել ա էշխի սիրով, քաղցր անուշ խսկ կը խօսի,*
*Բորբոքուած կրակի պէս՝ անհանգչելի հուր են եկել։*

*Ձատ կարօտ փափագէինք էսպէս անուշ ըխտիլաթի,*
*Անխալ յարմարապէս մէյդան բացան մարիֆաթի,*
*Քաղցր համով խօսքերով ախորժ իլան ամեն մարդի,*
*Լսողն մուշտաղ իլաւ, ինչպէս բիւլբիւլ կարմիր վարդի,*
*Վարդ, ռէհան, սուսամբար, ծաղիկ համասփիւռ են եկել։*

Իսկ համեստ բնութիւնով ըխտիլած ու սազ արեցին,
Հաւասար արք և կանայք, լտողներն հազ արեցին,
Մէկ մէկու իմաց տալով՝ հաւաքուած փարվազ արեցին,
Բոլոր հազ անողներն մրթմրթալով տազ արեցին,
Տեսան խօսել չեն կարող, միտքներիցն շուր են եկել։

Այսուհետև եաղ կանենք սրանից անուններն տալով,
Բոլորքս ցանկանում ենք իսկ և մեաց սրանք տարով,
Ի՞նչ անենք, կարօտել են օթևանն փափագելով,
Սաղ սալամաթ եկել են, ողջ և առողջ կերթան բարով,
Իվանն չի մոռանալ, չում որ սիրտին դուր են եկել։

## Բ

### Դ Ի Ւ Ա Ն Ի

Անկաշ դիրէք, լաւ իմացէք, տէրական պատուիրանին,
Յոյս հաւատով հաստատուեցէք էն սուրբ աւետարանին,
Տէրն ասէ՝ զի՛ կոչես տէր, զոր ինչ ասեմ, ոչ առնես,
Թէ ես տէր եմ՝ դու ես ծառայ, լսիր իմ հրամանին։

Ոչ են պիտոյ մեծն արքայ՝ Ալէքսանդր Մակեդոն,
Փիլիսոփայք՝ Արիստոտէլ, կամ իմաստունք՝ Պղատոն,
Ոչ ընդունեմ և ոչ հաճիմ, թէ որ զաշխարհ առնէ Դոն [1]),
'Ի մէջ սրբոց ոչ երևին էն իմ արդար ատենին։

Սէր հաւատով և յոյս գործով, այն է իսկ ինձ հաճելի,
Չարն բարեաւ է, միշտ յաղթիր, լե՛ր դու ինձ ծառ պտղալի,
Զինչ օգուտ՝ զաշխարհն շահես, վերջն լինես դատելի,
Էդ ունայն կեանքն մի՛ փոխիր հայրական օթևանին։

Եղբայրական սէրն մի՛ թող, եկ, ընկերիդ մի՛ ատիլ,
Վարձ մշակաց մի հատանիլ, այլոց մեղքն մի՛ դատիլ,

---

1) Գուցէ Դանուբ գետի մասին է խօսքը։

*Զրկողութեան մի՛ հետևիլ, պէտք ա արդար աշխատիլ,*
*Հարուստ, տնանկ՝ Տէրն ա կարգել, կամ աղքատ մեծատունին։*

*Եղբայրն ոչ կարէ օգնել և կամ բոլոր ընտանիք,*
*Բարի գործքն ա օգնական, եթէ հետներդ տանիք,*
*Յորժամ Տէրն յաթոռ նստի, յաջակողմեան գտանիք,*
*Լալով հայցեմ, Տէ՛ր, ողորմի՛ր էդ մեղապարտ Իվանին։*

## Գ

(Ի վերայ մեծատան եւ Ղազարու)

Անկաջ դիր, Թարիֆն անեմ հարուստ մեծատունի բանըն,
Լսողն սարսափելով՝ Թող Թարիֆն անի տանըն,
Ուրախ էր, առատապէս վայելէր մնոտի կեանըն,
Հանապազ զարդարում էր դառ պատմուճանի ծիրանն,
Սիրում էր իր նմանըն, ինչ անէր տնանկի տանն,
Բնաւին ողորմութիւն չէր տամ աղքատի անուանըն,
Խեղճ աղքատ Ղազարոսն ինկած էր տունի դռանըն։

Էն հիւանդ Ղազարոսի կեանքն նման երազէին,
Փրթըմ էր կեղտի մէջին, ...ներն կը վազէին,
Շունքն խնամք տանելով եարաներն կը լզէին,
Մին կտոր հաց տալի տեղ՝ աչքով տեսնելն չուզէին,
Ցանկանալով փափագում էր տան սեղանի փշրանն։

Որ մեռաւ մեծատունն փառք ու պատւով Թաղեցաւ,
Իսկ նոյնպէս Ղազարոսն, Աբրահամու ծոց հանգուցաւ,
Դժոխքի մեծատունն իսկոյն հոգու աչքն բացաւ,
Ի հեռուստ նկատելով, իսկ Ղազարոսին նայեցաւ,
Սաղ վախտին քռացել էր՝ տեսնէր նրա չարչարանն։

Խնդրում էր կանչելով՝ հայր ասելով Աբրահամին,
Դժոխքի տաքութիւնից լեզուս բերանս պապակին,
Ուղարկիր Ղազարոսին, որ կարօտ եմ ջրոյ կաթլին,
Բերանս պապակել ա, ջուր թաց անի ծայրի մատին,
Մին բարակ միտք անելով՝ լաւ իմացէք պատասխանին։

Ցիշեա, սաէ, որդեակ, դու անդ բարիս վայելէիր,
Ղազարն քաղց ու ծարաւ, ընդէր խնամք ոչ տանէիր,
Եթէ դու ողորմելով՝ մին կտոր հաց սրան տայիր,
Սրանիցն էլ փոխարէն մինին հազար ջուր կառնէիր,
Պէտք ա, որ պապակես, Ղազարն մտնի սէյրանին։

Խնդրում էր՝ ուղարկիր, ախպէրներս էլ իմանան,
Օրինակ էին նոցա, բէլքի իմ գործքէն հեռանան,
Ունին, սաէ, մարգարէս, թող լսելով զգաստանան,
Թէ մեռելոց ոք գնայ, լաւ գրխտն կը հասկանան,
Անկաշ դինեն Մովսէսին, լսեն Աստու պատուիրանին։

Հինգ ախպօր մինն ես եմ, որ սարսափում եմ լսելով,
Անդադար քարոզում են մարգարէք, Մովսէս խօսելով,
Մեռելոց աէրն եկաւ, գիրխտն պատմեց ասելով,
Չարչարում ա ախպէրդ սրտի գութն պակասելով,
Ոչ ողորմիս աղքատիս, տեսնես դժոխքի տանջանքն։

Մի կարծէք, թէ առակ էր, ասաւ և պատմեց անցկացաւ,
Համօրէն անցաւորաց ճշմարիտ օրինակ ցուցաւ,
Ջաքէոսն լսելով՝ ողորմութեան դուռն բացաւ,
Պատուիրեց մեծատունին յոյժ կարի դժուար թուեցաւ,
Արքայութիւն Աստուծոյ ոչ մտանի մեծատունն։

Երկիւղն ինձ պատիլ ա, ահիցն հոգիս կը դողայ,
Մարմինս՝ միտք եմ անում, յետ ու առաջ՝ վերջն հող ա,
Թէ հարուստ, կամ թէ տնանկ, և թէ ծառայ, կամ թէ աղայ,
Մահըն, դժոխքի ահն միտքին պահի, քանի սաղ ա,
Կամ թէ Աստուծոյ սէրն ցանկայ, պահպանի Իվանն։

## Դ.

(*Հաղ խրատական*)

*Անկաշ գիր, խղճմտանք, քեզ մին խրատ տամ,*
*Իստակ մաքուր սրտով միշտ խոնարհ կացիր,*
*Օրէնք պատուիրանքն գրիր սրտումդ,*
*Նախանձ, չըկամ հմպարտ բանից հեռացիր։*

*Յոյս հաւատով Ստեղծողին միշտ սիրես,*
*Ախպօրդ, ընկերիդ նոյն նմանապէս,*
*Տնանկ, աղքատ ազգիդ օգնիր ծածկատես,*
*Էս ա կամքն Աստուծոյ, եկ, դու իմացիր։*

*Բամբասանքից, չար խորհուրդից հեռանաս,*
*Թշնամիքդ օրհնես, խռով չի մնաս,*
*Ինչ որ այլոց կուզես, էն կը ըստանաս,*
*Թէ ընկար նեղութիւն, փառք տուր դիմացիր։*

*Քրիստոնեայ ազգին ինչ կը վայելի,*
*Սիրենք իսկ միմեանց, էն ա գովելի,*
*Որր և կարօտներին օգնենք լիովին,*
*Էստոնք արա, հոգւով դու պայծառացիր։*

*Իվա՛ն, ինքդ քեզի միտք արա բարակ,*
*Ով որ սուրբ օրէնքին լինի հակառակ,*
*Էն ահեղ ատենին կլինի խայտառակ,*
*Մինչ կենդան ես՝ փրկութիւնդ հոգայի՛ր։*

# Ե

## ԲԱՅԱԹԻ

Աշխարհեմ աշխարհի եմ, աշխատանք աշխարհի եմ,
Խրիտքար եմ երկինքից, բէգէմ էս աշխարհի եմ։
Ես որ աշխարհ եմ եկել, տես ո՛ր աշխարհ եմ եկել,
Ճահ չունեմ, պարար ունեմ, ինչ որ աշխարհ եմ եկել։

Եարաբ էս խօսքս քեզ էլ դուր կը գա՞յ,
Տեսէք, թէ իմ մահի գալն ինչ կլլի,
Միտքս կը շաղաղուի, խելքս շուռ կը գայ,
Տէրն է խաբար, թէ իմ հալն ինչ կլլի։

Տեսամ հրեշտակիս, կերպն էր ախուր,
Հզօր զահմով եկաւ ձեռքին հուրի սուր,
Անից կերպս փոխամ, ա՛խ, մէր ու քո՛ւր,
Զորս կողմիցն թաքուն լալն ինչ կլլի։

Տէրն ասաւ՝ իրա չափով չափեցէք,
Քօլ շնորհս վերայիցն թափեցէք,
Դուս տարեցէք, ձեռն ոտն կապեցէք,
Ընտեղ ահով դողդողալն ինչ կլլի։

*Իվա՛ն, էս դարտերին դու քթիր չարայ,*
*Քանի որ կենդան ես, փրկութեան օր ա,*
*Կասեն՝ թէ սուրբ Գոյսն չարն խափանարար ա,*
*Նրան յայտնեմ էս ահվալն՝ ի՛նչ կիլի։*

Զ

## Թ Ա Խ Ն Ի Ս

(Ի վերայ տասն պատուիրանին)

Աստուած Մովսէսի ձեռքով ուղարկաւ մեզ համար պատգամ,
Տիրական ձեռքով ա գրուած.
Կամ թէ ես մեղաւոր հոգիս կարթել եմ քանիցս անգամ,
Դրխտ մարգարիտ է շարուած.
Յոյս հաւատով ընդունողին ցնծալով աւետիս կտամ,
Որ դրախտի դուռն ա բացուած.
Չեմ զազարել ես գովելից, քանի որ կենդանի եմ, կամ,
Արքայութեան զարդարուած.
Թէպէտ ինքս լի եմ մեղօք, հոգով մարմնով կը հաւատամ,
Ամեն չարից բերդ ա շինուած.
Ցնծայ Աստուած սիրողն, որ Տէրն ինքն էր գրողն,
Մաքուր և սուրբ էր բերողն, քցել էր երեսին քօղն,
Բոլոր ազգն Իսրայէլի երկրպագեցին միակամ,
Երեսն էր լուսով նկարուած։

Նախ՝ տէր Աստուածդ ես եմ, չիք այլ Աստուած ոչ ով,
Որ հաւատան նախահարքն,
Երկուինջի խօսքն էս ա՝ սիրել զԱստուած բոլոր սիրտով,
Կատարուի Աստուծոյ կամքն,

Երեքինջին՝ երդում մի կեր, անուն սուտին գինելով,
Մի պաշտիր արծաթի կուռքն.
Զորսինջին՝ որ է կիրակին՝ պարապ կաց, իլիր աղօթքով,
Կատարուեց Աստուծոյ գործքն.
Հինգինջին՝ հնազանդ կացիր ծնողացդ՝ պատիւ տալով,
Որ աւելանայ քու կեանքն.
Տէրն տուել ա հրաման, կապել ա մեր հետն պայման,
Պէտք ա, որ պահենք անխափան, մինչև 'ի դուռն գերեզման,
Եթէ որ կայնեցիր՝ զարթի, ես էլ կրկին կըխոստանամ,
Ինես անմահ սեղան նստած։

Վեցինջին՝ մի սպանանել, խոցոտելով դու զմարմին,
Աննես անիծքն Կայենի.
Օխտնինջի խօսքն ա՝ մի շնար, խառնակելով անզգամին,
Կրնկնիս հուրն գեհենի.
Ութնինջին ա՝ մի գողանալ, զրկելով Ադամայ զարմին,
Պատիժն որդն ա կենդանի.
Իննինջին՝ սուտ մի վկայիր հախ ու նահախ ամեն բանին,
Սուտն որդի ա սատանի.
Տասն՝ մի ցանկանար ընկերիդ կնոջն, կամ թէ ինչ ունի,
Իսկ քունն էլ քեզանից ելանի.
Տէրն տուել ա մեզ խրատ, պէտք ա հինգն պահենք հաստատ,
Հինգին յետև լինի վատ, էլ վերջն չի անես զանգատ.
Ինչպէս պատուիրեց Ադամին, էնպէս էլ մեզ խրատ ա տամ,
Պէտք ա, որ ճշմարիտ կացած։

Նայիր մին՝ պատուէրն Աստուծոյ տէրն էլ հաստատեց կրկին,
Հաւատով կամք կատարուի.
Տուաւ մեզ չորս գլուխ գիրքն ճշմարիտ, խօսքերն ա անգին,
Փրկութիւն էնգով կըճարուի.

Քաղցր ախորժ առակներով բոլորն գիրել ա սարքին,
Լսողի անկաջի հաշուի.
Եթէ խստակ սիրտ ունենաս, միտքով անկաչ արա կարգին.
Սիրտն էլ հետն կը վարուի.
Սիրովն միշտ խըրատելով՝ քանքար ա տալիս երեքին,
Վա՜յ նրան, որ կը զարարուի.
Տէրն տես՝ թէ որքա՜ն ա հեզ, արտասունքով մտաւ պարտէզ,
Չարչարուելով գտել ա մեզ, պէտք ա մաքուր պահես դու քեզ.
Ախր վերջն քեզ կըկանչի, թէ եկ տեսնեմ ուրախանամ,
Մտիր գործքովդ հագնըւած։

Եթէ ճշմարիտ իմանաս, հաւատքն ա մահագի քար,
Տէրն մեզ էնդով ա փորձում.
Ինչպէս սուրբ Գիրքն էլ վկայի, յոյսն էլ նրան ա ճոհվար,
Լոյսոյ տան շաֆաղն ա բացում,
Տէրն թաքրար հաստատում ա՝ սիրով խլեցէք եղբայր,
Նոր օրէնքին հիմք ա քցում.
Սաւուղն էլ միշտ քարոզում ա, գործքով են էստոնք կենարար,
Լուսով մեզ ճամփայ ա քցում.
Մին մարդ որ էստոնք չունենայ, էն ահեղ օրն ա անճար,
Ահա տալիս եմ իմացում.
Էն ահեղ վերջի ատենին՝ մայր անարատ, ծնող բանին,
Խեղճիր բոլոր բանգլիվանին, կամ թէ ողորմիր Իվանին,
Եթէ գժոխքից ազատուամ, ճշմարիտ քեզանից կիմանամ,
Դու ես ինձ պսակ բոլորուած։

# Է

(Ի վերայ հոգւոյ եւ մարմնոյ)

Գիշեր ու ցերեկ այրի հոգիս խնդրում ա դատ,
Էդ անիրաւ դատաւորին ով կըտայ խրատ,
Որ չունի բնաւ խղճմտանքից մախալ ու զրատ,
Քցել ա հոգիս մեղքի մէջն, չարչարում ա վատ,
Էլ չեմ իմանում, դարտս ասեմ ում, անեմ զանգատ.
Աստու օրէնք ու պատուիրանքից ելել ա ռադ։

Ոչ Աստուծուն երկիւղ ունի, ոչ մարդից ամօթ,
Յատուկ շինողն լաւ շինել ա պատուելի անօթ,
Ինքն իրանից գոյացել ա կըրակ ու կամ օդ,
Վառուել ա սիրով, աշխարհի հետ ելել ա ծանօթ,
Հէնց ա իմանում՝ անցաւորիս հիմքն ա հաստատ։

Մայիլ ա ելել անցաւորիս սնոտի կեանքին,
Վիզն ծռել ա, խնդրում ա էս խեղճիկ հոգին,
Հերիք ա, արի՛, մուրվաթ արա՛, լսի՛ր օրէնքին,
Քանի մին պէտք ա անկաջ դնես էդ խղճմտանքին,
Ախր սա մեզի խառնակելով՝ թողել ա բարբաթ։

Ե՛կ, մուրվաթ արա՛, էդ ոտոխին դու հանե՛ր բանտից,
Բէլքի զղջալով դու պրծնես սատանի ֆանդից,
Քեզ մին մաքրե՛ր, ինձ ազատե՛ր դժոխքի դարդից,
Քանի չի եկել էն մանգաղն, չի հնձել արտից,
Ե՛կ, մին աղաչենք Ստեղծողին գթած առատ։

Էսօր ու էքուց՝ ինչ տեղ իլի, գայ հոգեհանն,
Ինձ խօշ կըտանի, քեզ կը դնեն խողի տապանն,
Վերջն՝ դողալով պէտք ա գնանք ահեղ դիւանն,
Ամենայն հոգւոց տալ թողութիւն հայցէ Իվանն,
Տէ՛ր, դու ստեղծար, մի՛ կորցունիր, եկ, արա՛ իմդատ։

## Ը

*(Գովասանք Աստուածածնին)*

*Գովելի ես գովելի,դու անման ես, Տիրամայր,*
*Չորեքկերպեան աթոռոյ համանման ես, Տիրամայր,*
*Իսկ Հօրն երկնաւորի խորհրդարան ես, Տիրամայր,*
*Միածին բանին կենաց բնակարան ես, Տիրամայր,*
*Եօթն շնորհօք սուրբ Հոգւոյն իսկ իջեան ես, Տիրամայր,*
*Ճշմարիտ Աստուածութեան ընդունարան ես, Տիրամայր,*
*Հարմնացեալ Հօրն փառաց մեզ փրկարան ես, Տիրամայր։*

*Սոսկալի երեք խորհուրդ ճշմարիտ ի քեզ տեսանեն,*
*Առաքեալք և մարգարէք իսկութեանդ ոչ հասանեն,*
*Վարդապետք ոչ կարացին միով կերպիւ մեկնարանեն,*
*Հրեշտակքն հիացեալ հողեղէնք երկրպագանեն,*
*Անքննելի մտաց անճառ խորան ես, Տիրամայր։*

*Նշոյլդ իսկ Նախապէս մարգարէք տեսան, պատմեցին,*
*Իմաստունքն միտք արան, հիացին, պէլուած մնացին,*
*Էս կերպով թարիֆ արան՝ սա է դուռն կենաց հացին,*
*Լսեցին սանդարամետք, զարհուրելով սարսափեցին,*
*Իմացան, որ աշխարհիս միջնորդ պայման ես, Տիրամայր։*

Պարտէզ ես դու ծաղկալի, ընտրեալ քաղցր տատրակ,
Ծագել ես մեզ առաւօտ լուսատու պայծառ արեգակ,
Լուսով լուսաւորուեց բոլոր աշխարհս բովանդակ,
Միջնորդ ես մեղաւորաց արդարներին թագ ու պսակ,
Գերազանց քան զերկինս բացուած վրան ես, Տիրամայր։

Նունուֆար, Նարդոս ծաղկեալ, հոտով ծաղիկ ես անթառամ,
Ամպ թեթև անշէջ մորենի, կնքեալ աղբիւր ես բարեհամ,
Փրկիչն ազգի մարդկան ի քէն ծնաւ, կոյս Մարիամ,
Կենարար արեամբ Նորին մեռեալ Իվանս շունչ առամ,
Երկոտասան ազգ ազանց կարգ ու սահման ես, Տիրամայր։



## Թ.

(*Հաղ Աստուածածնայ*)

Դո՛ւռն արքայութեան, երկնից բանալի,
Ի մէջ հրեղինաց լոյս, Աստուածածին,
Ամպ ես հովանաւոր, անշէջ մորենի,
Ընտրեալ հողեղինաց բոյս, Աստուածածին,

Նշուլդ նախապէս հտես մարգարէն,
Սկսեց մեզ պատմել Էմմանուէլէն,
Ճշմարիտ մեզ փրկիչ ծնեալն 'ի քէն,
Մա՛յր Բանին, անարատ կոյս Աստուածածին։

Ընտրեալ աղաւնի և քաղցր տատրակ,
Ծագեալ մեզ առաւօտ պայծառ արեգակ,
Արեամբ Որդւոյդ փրկեալք, որ եմք անառակ,
Դու ես մեզ բարեխօս, յոյս Աստուածածին։

Գերազանց զօրելի պարծանք երկնային,
Թագուհի հրեղինաց, միջնո՛րդ հողային,
Ողորմիր և գթա՛ խեղճիկ Իվանին,
Խառնի՛ր աջակողմեան դասն, Աստուածածին։

---

# Ժ

(Հաղ հոգևոր)

Դրախտից արտաքսած, եկամ էս աշխարհ,
Ընկամ չարչարանքի դարդ ու սարի հետ,
Կարգ ընկամ հայվանի, խեղճ իլամ խոնարհ,
Միտկս էլ հաստատամ յատուկ չարի հետ։

Ես ինքս իմ կամքով ընկամ քարէքար,
Զրկամ հոգիս, թողամ փիրփիրի բէթար,
Ինձ տուամ սատանին մշակ ու նօքար,
Պայծառ լոյսն փոխամ ես խաւարի հետ։

Հեղեղն աշխարհս սուրբ արաւ մաքուր,
Տէրն տեսաւ՝ մարդիկ խաւար են տխուր,
Ասաւ՝ շատ են քաշում չարչարանքով հուր,
Խոնարհեմ, հաշտուիմ ես յիմարի հետ։

Իվա՛ն, Տէրն քեզ ազատեց բանտիցն,
Ե՛կ, հեռացի՛ր չար սատանի ֆանդիցն,
Փառք տո՛ւր Ստեղծողին՝ պրծար դարդիցն,
Ջահտ արա խառնըւես դու ոչխարի հետ։

## ԺԱ.

Նա՛ր, քո չինար բօյիդ խիստ լաւ կու սազի
Հաքիդ լիբաստ կարմիր ու ալ, Նազանի՛,
Բարակ մէջկիդ ոսկէ քամարն ի՛նչ կանի,
Եկ, դու կապի՛ր զառ. Թիրմա շալ, Նազանի՛,
Ով քեզ տեսնի, հազ անի։

Երկու ձեռքդ մինա արած զառերով,
Ղուլբաղդ ողջ մարգարիտ շարերով,
Ճարբի՛ր մատիդ ոսկէ մատնիք քարերով,
Եազութ, զումրութ, ալմաս ու լալ, Նազանի՛։

Քո երեսդ կարմիր վարդ ա շողալի,
Խեղճ բիւլբիւլն կուզի քեզ հետ խաղալի,
Ունքերդ մինա տո՛ւր, ծամերդ սզալի՛,
Թափի՛ր դօշիդ վրայ ծալծալ, Նազանի՛։

Ճատ մարդիկ կայ, որ քեզ տեսնելու փափագ ա,
Սիրտն էրուած, լեզուն բերնումն պապակ ա,
Բանդիվան ա, մէկ քո տեսուն փափագ ա, [1]),
Ե՛կ, դուս արի՛, ջէյրա՛ն, մարա՛լ, Նազանի՛։

---

[1]) Հաղիւ թէ այս երգը Իվանինը լինի, ըստ երեւոյթին «Բանդի-վանայ» խօսքի վրայ հիմնուած մի թիւրիմացութիւն է։

## ԺԲ

### ՂԱՓԻԱ ՃԱՔԻ

Ե՛կ, տե՛ս Ստեղծողի կարգն, սահմանն,
Աշխարհս տուել ա դովրան ինսանին,
Ցեսաւ, որ չի պահան իւր հրամանն,
Ասաւ՝ հաւասարուեն անբան հայվանին։

Մինին ողորմել ա, տուել ա նասիպ,
Մինին հուպ ա տուել, թողել ա քասիպ,
Ե՛կ, միտք արա՛, տե՛ս, թէ ո՞րն ա մունասիպ,
Խելք չի հասնիր էն անգուման դիւանին։

Մինին փառք պատիւով երկինք ա տարել,
Մինին չորս կողմիցն կրակ ա վառել,
Մինին դարդ ու ֆիքրի միջումն ա խարել,
Ունի իշխանութիւն ամենայն բանին։

Չատ բարի ա՛, եղբա՛յր, էս աշխարհ դալդ,
Ե՛կ, երկինք ուղարկէ՛ր դովլաթ ու մալդ,
Էն ահեղ ատենին լաւ կիլի հալդ,
Բէլքի օգնես էս բանդիվան Իվանին։

## ԺԳ

(Պատասխան Յարութինի Մուխամմազի)

Ընկալայ գովասանքդ, անկեղծ սէրդ որդիական,
Յարութիւն, որդի կոչեմ, տամ օրհնութիւն քեզ հայրական,
Ցնծալով գուարճացայ իսկ բանիդ գովասանական,
Հաստատ սիրելու է ըստ հրամանի տէրունական,
Սէրն է իսկ գովելի որպէս լուսը արեգական։

Հայցեմ՝ Տէրն տացէ քեզ սուրբ շնորհն առատապէս,
Լցուսցէ իմաստութեամբ երկար կենօք բարեաւ պէսպէս,
Իսկ մնալ միշտ աջողակ, հաստատ, անշարժ իսկ մշտապէս,
Առնես սիրտից խորհուրդն, հոգով մարմնով ճշմարտապէս,
Աստուծոյ սուրբ կամօքն կեանք ապահով վայելչական։

Երկիւղած ես Աստուծոյ, բանական գիտուն ես հանճարեղ,
Լցեալ ես իսկ սուրբ հոգով, զոր Տէրն 'ի վերուստ եհեղ,
Բղխեալ աղբիւր անսպառ, բարբառդ էր քաղցր, համեղ,
Լսողներն գովում են, թարիֆ են անում ամեն տեղ,
Ճշմարիտ և իսկապէս իսկ սէրդ բարեկամական։

Ժողովքն բոլոր սրբոց միշտ եղիցի քեզ պահապան,
Առաքեալք և մարգարէք, զօրք հրեշտակաց համանգամայն,
Մարտիրոսք և ճգնաւորք, սուրբ հայրապետքն ամենայն,
Տիրամայր Աստուածածին, Նորին աղօթքն մայրութեան,
Լիցի քեզ իբրև պարիսպ կենարար խաչն փրկչական։

Օրհնութիւն աստուածային, որ ետ տէրն Աբրահամին,
Իբրև աւազ և աստեղք հաստատութիւն Նրա զարմին,
Տացէ քեզ բարի զաւակ Տէրն փառաց նման նմին,
Սիրելիք և բարեկամք, ինչ վախտ լսէք՝ ասէք՝ «ամին».
Խնդիրքն խեղճ Իվանին լինի առ Տէր հաճոյական։

## ԺԴ

Թագաւոր ես աշխարհի, ո՛վ բռնաւոր չար մամոնայ,
Իշխելով ման ես գալիս, ամէն ցաւին ճար, մամոնա՛յ,
Կայսերաց ես սիրական, յաղթութեան հնար, մամոնա՛յ,
Օգնական ես արքայից, իսկ զօրաց գումար, մամոնա՛յ,
Պահպանութիւն քաղաքաց, թշնամւոյ դէնհար, մամոնա՛յ,
Իշխանաց փառք և պսակ, ցնծութեան քնար, մամոնա՛յ,
Թագաւորքն առանց քեզ մնում են տկար, մամոնա՛յ։

Թէ հարուստ և թէ տնանկ ցանկանում են՝ քև շատանան,
Ճգռուել են խալխը ջանից, չարչարանօք քեզ կը ջանան,
Սիրովդ վաճառականք ծով ու ցամաքըն անց կանան,
Չարչարում ես տնանկլին, արծաթասէրք փարթամանան,
Բոլորքիչ կլակլի պէս մեր ջանին ընկար, մամոնա՛յ,

Բաղ ու բաղչայ, բուրաստան քեզանով ամբողջ ա մնում,
Թէ հիւանդի մօտ գնաս՝ նարանքն ողջ ա մնում,
Ումանից պակասում ես, մոլորւում ա, խեղճ ա մնում,
Առաւել շատ սիրողդ մեռնում ա, անգեղջ ա մնում,
Փառք ու պսակըդ տալով՝ Ցուդային խեղդար, մամոնա՛յ։

Կտրար գիշեր ցերեկ ագահների դու ղարարն,
Անդադար աղօթքի տեղ խաէր են անում զարարն,
Հազար պակաս մնայ, ի՛նչ կլլի եարար մեր ճարն,
Պաշտում են Աստուծոյ տեղ, դու ես նրանց կամարարն,
Ով քեզի անարգում ա, թողել ես անճար, մամոնա՛յ։

Ով քեզի առնի կաշառ, կամ թէ կըտայ մուղաթի,
Մարմնով փարթամանայ, հոգին քաղցածանայ անօթի,
Որքան որ բարձրացնես, վերջն կը թողնես ամօթի,
Խնդրեմ՝ ով կըլնի՝ փառք պատիւ չը տայ արծաթի,
Որ յատուկ թշնամի ա դարշելից բէթար, մամոնա՛յ։

Դարշելի չար անպիտա՛ն, ով բռնաւոր, ուստի՛ ծնար,
Խառնակիչ ես աշխարհի, ոչ կայ երկրի քան զքեզ չար,
Կամակից բելիարայ, կապես դաշխարհ ուռկան և լար,
Որսալով դու զմարդիկ, առնես հոգու աչքն խաւար,
Սուրբ Գիրքն կը վկայի արդարև վատթար, մամոնա՛յ։

Պատուիրան է Աստուծոյ՝ ոչ ծառայել մամոնայի,
Պաշտողն երկու տէրանց ծառայ լինի սատանայի,
Տնանկն փափագում ա՝ ա՛խ, մին դատել կարանայի,
Տէր, ողորմիր աղքատին, աջողիր գործք Իվանոյի,
Խոստացել ա տնանկին՝ թէ փոխարէն ա՛ռ մամոնայ։

## ԺԵ

### ՄՈՒԽԱՄՄԱԶ ԽԻ ԲԱՆՔ ԽՐԱՏԱԿԱՆ

*Թարիֆ անեմ, լսեցէք, Աստուծոյ օրէնքն էս ա՝*
*Նախ պէտք ա զԱստուած սիրենք, իսկ և պատուիրանքն էս ա,*
*Երկնչենք, ահ ունենանք, իսկ Աստուծոյ կամքն էս ա,*
*Իսկ սիրենք ընկերներիս, գիրք ու կանոնքն էս ա,*
*Եղբարքն սէր միաբան, յատուկ հրամանքն էս ա։*

*Յատկապէս մեր դովլաթն պէտքը չէ մենակ վայելենք,*
*Մեր արդար աշխատանքից իսկ Աստուծոյ մասն հանենք,*
*Նոյն մասն ուրախ սրտով տնանկ աղքատի փայ անենք,*
*Որբ, կարօտ ընտանեաց հոգսն քաշենք, միշտ պահպանենք,*
*Աշղար և մաքուր մարդկանց յատուկ գովասանքն էս ա։*

*Ի՞նչ օգուտ՝ աշխարհն շահի, իւր հոգու հոգսն չի քաշի,*
*Կըղողի փողի վերէն, անցկանայ կեանքն վաշվաշի,*
*Պահապան ա դովլաթին, անօգնական ա ուրիշի,*
*Վայրենի թռչունքի պէս նա իսկ նման ա բայղուշի,*
*Ագահ, նաքաղ մարդերի իսկ սիրտի բաղձանքն էս ա։*

Յատկապէս կը պատկանի՝ մարդն դովլաթն պահպանի,
Եւ այլև նաքաղ չիլի, իսկ չափաւոր քէֆիր անի,
Ինչ իրա ձեռքով տուաւ, յատուկ էն հետն կը տանի,
Յետկիցն աղարկածն աւաղակն կը թալանի,
Աղարկող թամահքարի ղըկելոյ հնարքն էս ա։

Ուզում եմ՝ մէկ բան ասեմ, շատ մարդի խաթիրն մնում ա,
Յատկապէս իսկ ճշմարիտ ղըխատ ինքն էլ իմանում ա,
Ի՞նչ օգուտ՝ ննջեցելին շոր հագցրած՝ զարդարում ա,
Միթէ նա էն զարդարանքով ահեղ դատաստանն գնում ա,
Հողից կարօտ ա թողնում, իսկ նրա տանջանքն էս ա։

Արարիչ Փրկչին մերոյ կտաւով գերեզման դըրան,
Միթէ այս մեղաւորն գերազանց է քան զնրան,
Պարծանք ա և գովասանք, թարիֆ անեն և զարմանան,
Բնաւին շահ չունի հոգին, թէկուզ հազար գովասանք տան,
Յատկապէս հմպարտութեամբ պարծանալոյ հիմքն էս ա։

Արարիչ Սանդծողն իսկ և յանձնեց հողն հոգին,
Յատկապէս զարդարողն պարծանում ա իրա փողին,
Զուն որ նա հարսնացել ա իւր արարիչ Ստեղծողին,
Կղառնայ յոյժ վայելուչ, հարսն արժան ա իւր քօղին,
Անցաւոր էս աշխարհի վերջի զարդարանքն էս ա։

Հոգին էն կեանք ա գնում, շոր զարդարանք չեն հարցնում,
Եթէ արդար հոգի ա, ճերմակ հանդերձ են հագցնում,
Միտքներն փառք երգելով՝ առ Աստուած են վերցնում,
Անարատ մաքուր կուսանք անկելոց տեղն են լըցնում,
Զարդարանքն դիր ղըաղ, իսկ և նրանից փառքն էս ա։

*Իվանն միտք ա անում՝ էս աշխարհս է ճանապարհ,*
*Մարդ կայ, որ սուրբ օրէնքից գամ ա, գնում ա, բէխաբար,*
*Նրանի տամ էն մարդին, գործքն առաջ գնում ա վար,*
*Ծառայ բարի ասելով՝ ընդունի Տէրն բարերար,*
*Երջանկութիւն ճշմարիտ անմահական կեանքն էս ա։*

---

## ԺԶ

*Ինքնակալ, հօգոստափառ իսկ զօրեղ Կայսեր ես առատ,*
*Բարձր հզօր բազկաւդ յաղթող թագաւոր ես առատ,*
*Ճառագայթեալ արեգակ, պայծառ լուսաւոր ես առատ,*
*Անպարտելի զօրութեամբ ամպ հովանաւոր ես առատ,*
*Քաղցրահայեաց գթութեամբ գթած բարերար ես առատ,*
*Հայրախնամ տեսչութեամբ միշտ խնամարար ես առատ,*
*Հաւասար ազգ և ազանց իսկ երախտաւոր ես առատ,*
*Համայն իսկ ենթակայից արթուն ակնարար ես առատ,*
*'Ի մէջ բոլոր կայսերաց անյաղթ վարչարար ես առատ։*

*Նիկոլայ Պավլովիչդ Աստուած ընդ քեզ իսկ տեսանեն,*
*Սերովբէք և քերովբէք մինիստրքն կընշանեն,*
*Երկոտասան սենաթօրք առաքելոց կընմանեն,*
*Ճշմարիտ արդարապէս իսկ և ուղիղ դիւան կանեն,*
*Զօրքդ իսկ նման դասուց պաշտեն զքեզ, փառաբանեն,*
*Առհասարակ ժողովուրդ Կայսերիդ երկիրպագանեն,*
*Ողորմած Կայսեր գոլով, իսկ համայնից տիրես առատ։*

*Նիկոլայ Պավլովիչդ պայծառացեալ իբրև արև,*
*Գերազանց քան զամենայն կայսերաց ես լոյս ակներև,*
*Անյաղթելի զօրութիւն ամպ հովանի արծիւաթև,*
*Գեղեցիկ հիմնաւորեալ Մոսկով փայթախտդ բարեձև,*
*Ձըջի սուրբ հրամանդ առ ընդհանուր ազգս պարգև,*

Զօրապետք և գունդք զօրաց գերազանցել անձինք պարաթ [1]),
Փառաւորեալ տէրութիւն, յուսափայլ զամբար ես առատ։

Նիկոլայ Պավլովիչ քաղցր, առատ տէր ողորմած,
Սարսափեն միշտ դողալով չար թշնամիք, քօլ արարած,
Ձեռամբդ տիրապետես ծով և ցամաք լայնատարած,
Կալ մնալ միշտ անսասան, հայցեմք ՚ի տէր բազկատարած,
Ազգէ ազգ, որդոց որդի հաստատ կայցես մինչ կատարած,
Անթառամ սուրբ պսակին արժանացո՛, տէր Աստուա՛ծ,
Ստեղծող տէրդ գոլով՝ օգնութեան հնար ես առատ։

Պետերբուրգ կայսերանիստ անդ է դիւան ու դատաստան,
Երկիրն յոյժ բարեկլի, աղբիւրք և գետք, ոսկոյ մատան,
Ընթանան անթիւ նաւեր Ինգլիզ, Չվէդ, Փրանգստան,
Բուխարա ու Օսմանցին, Պարսից երկիրն Հնդստան,
Չինիմաչինի հետն իսկ ապրանք առնեն ու տան,
Ցանկալի քօլ աշխարհիս զովեն նիժնայի եարմունկան,
Բոլոր վաճառականաց արձակ ճանապարհ ես առատ։

Արևելից արևմուտք, ՚ի հիւսիսոյ կողմն հարաւ,
Վերջացան քօլ թշնամիք, ջնջելով արար վարթարափ,
Պատուական եպիսկոպոսք բաժանել ես թարափ թարափ,
Սարքել ես գուբերնաններ իշխող ենարալ ու գրաֆ,
Ապահով ակնարկութեամբ հովուել անսխալ, անխըլափ,
Գեղեցիկ առուտուրով քօլ քաղաքըմն կայ սանափ,
Հովուապետ տէրդ գոլով, իսկ օրինադիր ես առատ։

Գեղեցիկ տէրութիւնդ յատկապէս դրախտի նման,
Բոլորն աստիճանով կարգել ես ինչպէս Նարդիւան,

---

[1]) Ոչինչ չի նշանակում։

Հաւասար քօլ քաղաքում գերծալ բացած կանեն դիւան,
Ամէն տեղ մանկանց համար հաստատել ես ուսումնարան,
Անտէր անճար հիւանդին իսկ շինել ես բժշկարան,
Ամենայն գեղ և քաղաք կարգել ես անքուն պահապան,
Պարիսպ ես անքակտելի, գթած ազգասէր ես առատ։

Անյաղթելի զօրութեամբ տիրապետար Լեհաստանն,
Ահեղ հզօր բազկաւդ յաղթար Օսմանցու սուլթանն,
Ոչ կարաց ընդդէմ կենալ, հարկ տուեց, կապեց պայմանն,
Իսկապէս տիրապետար բոլոր երկիր Վրաստանն,
Անպատմելի հնարիւ խկոյն առար Երևանն,
Լսելով սարսափեցին իսկ բոլոր քիւլլի Իրանն,
Անպատմելի զօրութեամբ միշտապէս զէն հարեր առատ։

Իսկ հմուտ արուեստագէտք ճարտար գիտուն են անհամար,
Գիտանի ազգ և ազանց բոլոր աշխարքին զահարար [1]),
Յաղթեցիր քօլ թշնամիդ, քաշար սուրն ինչպէս տաւար,
Քանդար քար ու սարերն, բացար լէն արձակ ճանապարհ,
Էջմիածին տաճար ես Լուսաւորչի ազգի համար,
Իվանին ազգիս հայոց փրկիչ կենարար ես առատ։

---

1) Անհասկանալի։

## ԺԷ

### Դ Ո Ւ Պ Է Ի Տ

*Խնդրում եմ Ստեղծողիդ, եկ, մեզ արդար մի՛ դատիր, Տէ՛ր,*
*Ողորմութեամբ մեզ Ներողիդ մենք ենք յիմար, մի՛ դատիր, Տէ՛ր։*

*Ստեղծար մարդն բանական, ցանկամ ես օրինակ գնան,*
*Նախանձարկու չար սատանան տայ զուր խաբար, մի՛ դատիր, Տէ՛ր։*

*Տէ՛ր, եկ, մեզի մի՛ թող անգէտ, բարի գործքին արա՛ վարպետ,*
*Չար անօրէն ազգերի հետ մեզ բարեբար մի՛ դատիր, Տէ՛ր։*

*Էդ ողորմելի Իվանըդ, մեղքի միջին բանդիվանըդ,*
*Վերջն գալու ա դիւանըդ, ճշմարտաբար մի՛ դատիր, Տէ՛ր։*

## ԺԸ

### ԱՌ ՏԻՐԱՄԱՅՐՆ

*Մայր ես ողորմութեան, պարծանք աշխարհի,*
*Ամենի խնդիրքն տաս, Աստուածածի՛ն,*
*Լոյս ես արեգակ ինձ պէս խաւարի,*
*Անդադար բարեխօս կաս, Աստուածածի՛ն։*

*Լալով, արտասունքով քեզ աղաչում եմ,*
*Յոյս հաւատով քու անունն կանչում եմ,*
*Ողորմի՛ր ինձ, խղճի՛ր, իսպառ կորչում եմ,*
*Ինձ պէս անտէրներին համ, Աստուածածի՛ն։*

*Խեղճ Իվանն ուրիշ տեղէն յոյս չունի,*
*Չորս կողմիցն խաւարել ա, լոյս չունի,*
*Քօլ աշխարհքն քեզ պէս մաքուր կոյս չունի,*
*Կապել եմ ողջի հետ բաս, Աստուածածի՛ն։*

---

# ԺԹ

(’Ի վերայ պասի)

Մեծ պասն եկաւ, մախուխ հեփիր,
Աղանձով ինքդ քեզ խաբիր,
Կրճոնքներն տար դէն թափիր.
Ուրախ կաց, զատիկ ա գալիս,
Պաս պահողի վարձն ա տալիս։

Մեծ պասն եկաւ, հեփիր չլաւ,
Մախուխն սիբտս աքորաւ,
Ղազի յետղօլն ինչ իլաւ.
Ուրախ կաց, զատիկ ա գալիս,
Պաս պահողի վարձն ա տալիս։

Ձատ փար ու փուչ բաներ առանք,
Ըխտիլաթով քաղցր խօսանք,
Փառք Աստուծոյ, պասին հասանք.
Ուրախ կաց, զատիկ ա գալիս,
Պաս պահողի վարձն ա տալիս։

# ԺԸ

## ԱՌ ՏԻՐԱՄԱՅՐՆ

Մայր ես ողորմութեան, պարծանք աշխարհի,
Ամենի խնդիրքն տաս, Աստուածածին,
Լոյս ես արեգակ ինձ պէս խաւարի,
Անդադար բարեխօս կաս, Աստուածածին։

Լալով, արտասունքով քեզ աղաչում եմ,
Յոյս հաւատով քու անունն կանչում եմ,
Ողորմիր ինձ, խղճիր, իսպառ կորչում եմ,
Ինձ պէս անտէրներին հա՛ս, Աստուածածին։

Խեղճ Իվանն ուրիշ տեղէն յոյս չունի,
Չորս կողմիցն խաւարել ա, լոյս չունի,
Քօլ աշխարհքն քեզ պէս մաքուր կոյս չունի,
Կապել եմ ողջի հետ բաս, Աստուածածին։

## ԺԹ

*('Ի վերայ պասի)*

Մեծ պասն եկաւ, մախուլս հեփիր,
Աղանձով ինքդ քեզ խաբիր,
Կրճոնքներն տար դէն թափիր.
Ուրախ կաց, զատիկ ա գալիս,
Գաս պահողի վարձն ա տալիս։

Մեծ պասն եկաւ, հեփիր չլաւ,
Մախուլին սեքսաւ աքորաւ,
Ղազի յետոլն ինչ իլաւ.
Ուրախ կաց, զատիկ ա գալիս,
Գաս պահողի վարձն ա տալիս։

Ճատ փար ու փուչ բաներ առանք,
Ըխտիլաթով քաղցր խօսանք,
Փառք Աստուծոյ, պասին հասանք.
Ուրախ կաց, զատիկ ա գալիս,
Գաս պահողի վարձն ա տալիս։

*Մեծ պասն եկաւ, հեփի՛ր լոբի,*
*Թուլթուններն իրա բարի,*
*Ձատ մի՛ կեր, կըտայ խաբարի.*
*Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,*
*Պաս պահողի վարձն ա տալիս։*

*Ոսպն փոր ա ցաւացնում,*
*Անչափ ջուր ա խմացնում,*
*Մարդի սրտներ ա ուռցնում.*
*Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,*
*Պաս պահողի վարձն ա տալիս։*

*Մեծ պասն եկաւ, առնենք բոխի,*
*Էլի կինկնենք աղով սոխի,*
*Ձատ մարդ կայ՝ պասից կը վախի.*
*Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,*
*Պաս պահողի վարձն ա տալիս։*

*Մեծ պասն եկաւ, առնենք զէյթուն,*
*Նրանումն կայ զօրութիւն,*
*Նրա հետ չի սազում թուլթուն.*
*Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,*
*Պաս պահողի վարձն ա տալիս։*

*Մեծ պասն եկաւ, զորոխ խաշի՛ր,*
*Ուրախ կա՛ց, կեանքդ մի՛ մաշի՛ր,*
*Էդ ապաշխարանքն քաշի՛ր.*
*Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,*
*Պաս պահողի վարձն ա տալիս։*

Մեծ պասն եկաւ, կապար առնենք,
Սոխ չրթենք, եղով [1]) խառնենք,
Ցոյս հաւատով պասն բռնենք.
Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,
Պաս պահողի վարձն ա տալիս։

Հրէս հասանք Ծաղկազարդին,
Աւետիս տամ ամեն մարդին՝
Ով կանգնել ա պասի շարթին.
Ուրախ կա՛ց, զատիկ ա գալիս,
Պաս պահողի վարձն ա տալիս։

Զատի՛կ, զատի՛կ, ջանիմ զատի՛կ,
Սան սան դին իմանիմ զատի՛կ [2]),
Արժան արա՛ խեղճ Իվանին,
Արի՛ մեր տուն, խանում զատի՛կ։

---

1) Պահոց իւղ՝ կամ ձէթ,
2) Դու ես իմ կրօնն ու հաւատը։

# Ի

## ԴԻՎԱՆԻ

*Մին մարդ որ եկաւ էս աշխարհ, ճշմարիտ կենալ պիտի,*
*Ֆիքր անի՝ վերջի օրն էլ թաքրար գնալ պիտի։*

*Իսկ ամենայն դարտակ բանին պէտք ա, որ տանք պատասխան,*
*Չար ու բարին բաժանելի՝ միտքով իմանալ պիտի։*

*Թէ որ լինի տէր աշխարհի, վերջին վախճան կունանայ,*
*Մերկանայ դովլաթն ու փառքը, գործերն կը մնայ,*
*Վերջի ահեղ դատաստանին ինչ երեսով կը գնայ,*
*Ամենայն չար արարմունքին յատուկ համար տալ պիտի։*

*Մարդ որ քանի կենդանի է, հոգւոյ հոգսն թող քաշի,*
*Ինչ նասիբն ա, կստանայ, ֆիքրով սիրտն չի մաշի,*
*Դարձ գայ գործած մեղքերիցն, քէն չի պահի, բարիշի,*
*Իվանի սասծ խօսքերին յատուկ հաւատալ պիտի։*

---

## ԻԱ.

### Թ Ա Ղ Ա Ւ Ա Յ

*Ո՛վ արդար դատաստան, չունիմ ինձ պատասխան, արժանի եմ*
*կապման,*
*Ծանիր հարսանիսն տէրունական, առակն արքայութեան,*
*Նախ՝ որ հրէայք հրաւիրեցան, գնալ ո՛չ կամեցան,*
*Տէր առաքելոցն տայ հրաման. կոչեալք չէին արժան,*
*Կոչել հեթանոսք՝ որքան պատահան. կոչեցին բաւական,*
*Վա՜յ ինձ, կոչել են՝ չունիմ պատմուճան, ո՛չ պատասխան,*
*Արժան եմ կապման։*

*Ես եմ Աստուծոյ ծառայ և նոքար, որ ետ ինձի քանքար,*
*Որ միշտ գործքովս լինիմ շահաբար, գտնեմ հոգւոյս մին ճար,*
*Ահեղ ատենին առնեն ինձ համար, թէ ո՛րքան շահեցար,*
*Ընդէր քանքարն յերկրի թաքուցար, ո՛վ դու չարըդ վատթար,*
*Իսկոյն առնէ զիս ծառայ անպիտան, արժան անքուն որդան,*
*Ի հուրն անվախճան։*

*Ոչխարն Ադամն էր, որ փառսն կորոյս, մոլորեցաւ անյոյս,*
*Որ Բանն ծնաւ անարատն կոյս, եղև մեզ բարի բոյս,*
*՚Ի խնդիր եկեալ վասն ոչխարոյս, գտեալ բարձաւ ՚ի յուս,*
*Ո՛վ դուք բարեկամք իմ սիրեցելոյս, խնդացէ՛ք, եկն լոյս,*
*Սա էր մեղաւոր, եկն ապաշխարան, իսկ յերկինս ցնծան,*
*Անչափ ուրախանան։*

Աղամն էր՝ իւր հօրէն որ բաժանեցաւ, փառացն զրկեցաւ,
Անառակի պէս ամեն ինչ վատնեցաւ, այլոց ծառայեցաւ,
՚Ի սաստիկ սովոյ ինքնին զղջացաւ, առ հայրն ընթացաւ,
Լալով, ողբալով մեղայ գոչեցաւ, իսկ հայրն գթացաւ,
Եգն պարարակ միածին զենան, իսկ պար առեալ խնդան,
Մեռեալն եղև կենդան։

Ադամն էր՝ անկաւ ձեռս աւազակին, որ է սատանային,
Որքան մարգարէքն պատահեցին, տեսին ու անցին,
Յորժամ պատահեց այն սամարացին, պատեաց ձէթ ՚ի խոցին,
Տարեալ յանձնեաց պանդոկապետին, որ է վարդապետին,
Իսկոյն ետ նմա երկու դահեկան, թէ տուր դմա դարման,
Մինչի իմ դալստեան։

Ծառ եմ Աստուծոյ, պիտի պտուղ տամ, որ քաղէ ամէ ամ,
Ծաղկեմ հաւատով, լինեմ բարեհամ գործով ամենայն ժամ,
Յոյսով Աստուծոյ կամքն իմանամ, սիրովս միանամ,
Անկանիմ մեղս, անպտուղանամ, անշէջ հուրն գնամ,
Տայ այգեգործին տէրն հրաման՝ հատ դծառդ խոտան,
Երկիրդ առնէ խափան։

Եկ ծանուցանեմ բանն կուսանաց, լսիր, ունկերդ բաց,
Օրինակ է մեզ զգայարանաց, որ միշտ լինի սանձած,
Մինչի գալ փեսային դու կացիր վառուած, չիցէ լինիս հանդած,
Ինչպէս յիմարքն մնացին քընած, վերջերն իլաւ լաց,
Մտին հարսանիս, դուռն փակեցաւ. յետոյ յիմարքն գան,
Մնացին արտաքսման։

Միտքն ի վերայ մարմնոյ է տնտես, կառավարիչ պէսպէս,
Չիցէ թէ հոգոյդ բարիքն վատնես, օրէնքն առնես անտես,

Արա՛ բարեկամ չար մամոնային, ընդունին քեզի ներս,
Իցէ՛ թէ ոմանք մեղանչեն առ քեզ, բաշխի՛ր, կամ արա՛ կէս,
Յորժամ առ 'ի քէն լինին ամբաստան, Տէրն զայդ գովասան,
Գործոյդ իմաստութեան։

Կամիս պարտատէրս դու իմանաս, քննի՛ր մտօք հաս,
Մեզօք Աստուծոյ միշտ պարտական կաս, պիտի որ համար տաս,
Իցէ թէ ոմանք առնեն քեզ վնաս, մի՛ արա բամբաս,
Հաշտուի՛ր, հետն խռով չի մնաս, որ մահն ա հասահաս,
Զիցէ թէ Տէրն կոչէ քեզ յատեան, մտանես ի գնդան,
Մինչև ի հատուցման։

Ադամն գտաւ դրամն կորուսեալ, 'ի յաղբի շաղախեալ,
Աստուածութիւնն է ճրագ վառեալ, խաչն աւել ածեալ,
Զօրքն երկնային դրացիս կոչեալ, լերո՛ւք ուրախացեալ,
Տեսէ՛ք, զի գտի դրամս կորուսեալ, արեամբս լուացեալ,
Իսկոյն երկնայինքն ուրախացան, արարին խրախճան,
Կորուստն եղև գտման։

Թէ կամիս գիտել, սերմանածն է Աստուծոյ բանն,
Են ոմանք՝ լսեն սուրբ պատուիրանն կամ *ընկնու կանքն* [1]),
Անկանին հոգւոյ վաստակ ու ջանն, էդ ունայն զովրանն,
Հեղձուցանեն իսկ հոգի ու ջանն, իսկ և անմահ կեանն,
Իսկ որոնք բարի երկիրն անկան, ծաղկեն ու պտուղ տան,
Մինչի թիւ հարիւրեան։

Ե՛կ, սէր մի՛ քցիր մամոնայ ժանգի, չարն կտայ բանդի,
Աստուծոյ կապած սէրն կը քանդի, կը քցի քեզ լանդի,

1) Չի որոշւում։

Էստով սատանան քցում ա փանդի, որ հոգին էլ ճանկի,
Կըներկի մեղքով ռանգ ռանգի, հազար բարաթ հանգի,
Լսիր՝ ինչ կասէ սուրբ աւետարանն. որք սիրեն մամոնան,
յԱստուծոյ հեռանան։

Մարդ պիտի լինի ծառայ իմաստուն, ամենայն բանի բուն,
Դռնապանի պէս միշտ կենայ արթուն, ոչ մտանի ի քուն,
Ոչ գիտէ մահն երբ գայցէ 'ի տուն, կամ թէ յորում ժամուն,
Են, որք արբենան չարին գրպանուն, վերջն լինին մաղրուն,
Գայ տէր ծառայի, յոյժ տայ անարգան. չար Յուդայի նման՝
Կորուստն է յաւիտեան։

Ե՛կ, թարիֆն անեմ բան դատաստանի, էն ահեղ ատենի,
Ով ոք բանտարկեալք 'ի բանտից հանի, կամ ջուր արբուցանի,
Քաղցեալն լցնու, մերկն կեցուցանի, էգ հետն կտանի,
Էստունցով կապի լեզուն Իվանի, ինչ վախտ կը հարցանի,
«Երթայքն յինէն» խկոյն վճիռ տայ, «եկայք», ասէ, տայ ձայն,
Որդոց արդարութեան։

## ԻԲ

Ո՛վ ստեղծող Տէր բարերար, արեւ ես մեզի ուսուցվար,
Երկինքումն քաղաք շինար, արքայութիւն անուն դիրար,
Անգին քարով հիմքն քցար, եաղութ, զումրութ, լալ և գոհար,
Մաքուր ոսկով պարիսպն արար, պայծառ լուսով զառվարադար,
Երկոտասան դուռն բացար, մարգարիտի դուռներ կախար,
Գիշեր ցերեկ լուս ա լուսով, մէջն լիքն ա մաքուր կուսով,
Ե՛կ, մենք էլ խնդրենք յուսով, արդարաց լինենք բարերար։

Արի՛, գնանք արքայութիւն, չորս կողմն լիքն ա բարութիւն,
Ինչ վախտ, որ կլինի յարութիւն, կործանուի ամեն չարութիւն,
Տէր, եկ մեզի տուր զօրութիւն, սուրբ անարատ մաքրութիւն,
Խնդրեմք 'ի քէն, Երրորդութիւն, արժան արա, զանք տեսութիւն,
Առանց քեզ, Տէր, ես ի՞նչ անեմ, մեղքի մէջին բանդիվան եմ,
Թէ մեղքով հոգիս կսպանեմ, դու ես ինձի տէր կենարար։

Արքայութիւն խնկի ծառ ա, վարդ, ռէհան, սուսամբար ա,
Չորս կողմն մուշկ ու ամբար ա, անուշահոտ նունաֆար ա,
Ծաղկունքներ հոգւոյս ճար ա, սիրտս սիրով սիրահար ա,
Մէջին նստած արդար զառ ա, օխտը ճրագ կողքին վառ ա,
Եկէք սրա լուսով գնանք, մի՛ կարծէք, թէ ճամփին մնանք,
Լալով թակենք դուռն բանանք, ներսն տա՛ր, Տէր ուրախարար։

Քօլ աշխարհիս բաղչայ բաղն, զարդարուած տունն, օթաղն,
Արեգակ լուսին աստեղն, ոչ գայ նման նմանողն,

Հայր և Որդի լոյս ծագողն, սուրբ Հոգին մխիթարողն,
Հրեղէնք են փառք երգողն, մարգարէք երկրպագողն,
Ժողովք սրբոց ուրախանան, ըմպեն զջուրն անմահական,
Ցնծութեամբ խնդան անվախճան, օրհնեն զԱստուած միշտ
անդադար։

Հրեշտակաց ինն դաս են, փառք պատիւ երգելով կասեն,
Մեղաւոր հոգիք կըսարսեն, արդարոց մէջից պակասեն,
Խնդրենք Աստուածածին կուսէն, ամենայն սուրբ բարեխօս են,
Արդար հոգիքն կըսպասեն, արի՛, փեսա՛յդ անմահ, ա՛սեն.
Մենք էլ ասենք միաբերան, արի՛, փեսայդ՝ Որդի և Բան,
Լալով խնդրէ 'ի քէն Իվան, ինձ էլ ամպի վերև դիր, տա՛ր։

## ԻԳ.

### Գ Օ Ղ Ա Մ Ա Յ

*Որդի եմ Ադամայ, սերեալ Թորգոմայ,*
*Ծնեալ եմ Արամայ, կասես՝ թէ հայ եմ,*
*Իսկս ով կիմանայ, նիւթս չորս բան ա,*
*Հետն հոգի ջան ա. բէս բանական եմ։*

*Ինն ամիս ճանապարհ եկամ բէխաբար,*
*Ընկամ եմ էս աշխարհ, տեսամ լոյս խաւար,*
*Հասամ օխտն համար, խելքս էր յիմար,*
*Հարցրամ մին խաբար, ասան՝ ինսան եմ։*

*Տասն հինգէն յետն՝ տեսամ անգէտն,*
*Գտամ մին վարպետն, սուրբ Կարապետն,*
*Առաքելոց պետն, օրինաց գէտն,*
*Յիսուս վարդապետն ասաւ չար չանես։*

*Երեսունին հասամ, չար բարին տեսամ,*
*Բարին անարգամ, չարին շուտ լսամ,*
*Հետն սէր հաստատամ, քշամ դովղ ու դամ,*
*Խիստ անուշ քաղցրահամ, դու խօշ դովրան ես։*

Քառասունից յիսուն՝ իլամ բանիրուն,
Փարկ արամ չար բարոյն շահն իմ գործոյն,
Ծերամ՝ շատ եմ մաղթուն, հեկեցիմ անքուն,
Յոյսս կապամ Աստուն, Տէր, դու ինձ օգնես։

Օխտանասնից ութսուն գալով, վայ դարդիհալով,
Անջար դողդողալով, շրջամ սողալով,
Մահիս մտիկ տալով, խնդրամ լալով,
Թէ Տէ՛ր, դատես հուրով, արդար դիվան ես։

Իննսուն հարիւրուան՝ իլամ անպիտան,
Ջունչ էիմ անկենդան, հասամ օր մահուան,
Մինչև 'ի դատաստան, ո՛վ խեղճիկ Իվան,
Գնա հող գերեզման, ասա գնդան ես։

## ԻԴ

*(Հաղ ի վերայ պասի և ուտիսի)*

***Պասն և ուտիս միմեանց հուջամ արեցին,
Ուտիսն ասաւ՝ մարդկանց գովրանն ես եմ.
Պասն ասաւ՝ մարմնով ինձ հետ սէր չունեն,
Հոգիների յատուկ սէհրանն ես եմ։***

***Ուտիսն ասաւ՝ սէհրանումդ ծառ չունես,
Երկու երեք ճրագ մին տեղ վառ չունես,
Աշխարքին գովելի լաւ բարբառ չունես,
Զովք ու սաֆա քէֆի մաքանն ես եմ։***

***Պասն ասաւ՝ ինքս ինձի ծառ եմ ես,
Քան զճրագ միշտ լուսաւոր վառ եմ ես,
Երկնային եղանակ երկբարբառ եմ ես,
Ճշմարտախօս մարդկանց բերանն ես եմ։***

***Ուտիսն ասաւ՝ ինչ ա քու զօրութիւնդ,
Լոբի, զորոխ, ոսպ ու կապար զէյթունդ,
Հէնց էդ ա, որ համեստ ա բնութիւնդ,
Հարբ ու հարբով խօսող սուլթանն ես եմ։***

*Պասն ասաւ՝ գովելի է համեստն,*
*Տէրն կանխէ անհնազանդ և հեստն,*
*Ես եմ ճգնաւորաց լուսոյ զգեստն,*
*Նրանց բնակութեան կայանն եմ ես.*

*Ուտիսն ասաւ՝ ինձնով սարքում են մէճլիս,*
*Սիրով և միաբան մօտս են գալիս,*
*Քէֆ եմ նշանց տալիս ինչպէս հարսանիս,*
*Բազցրահամ բարեկի սեղանն եմ ես.*

*Պասն ասաւ՝ մէճլիսդ ինչի նմանի,*
*Մեղքի հետ բամբասանք 'ի քէն ծնանի,*
*Հակառակ կըխօսեն սուրբ պատուիրանի,*
*Անուշահոտ բուրմամբ խորանն եմ ես.*

*Ուտիսն ասաւ՝ զաղ, մարի հաւ, զօլ ունեմ,*
*Խաւիար, զուրգել, դօշ, խորոված բօլ ունեմ,*
*Լաւ ձուկն որսալու ջուրի գեօլ ունեմ,*
*Երկնքի թռչունքի ուռկանն եմ ես.*

*Պասն ասաւ՝ դըխտ ասար ուռկան ես,*
*Ագահ մարդկանց խելքն միտքն զաւթ կանես,*
*Վերջն կը հաւաքես դժոխք կը տանես,*
*Երկնից արքայութեան դրանն եմ ես.*

*Ուտիսն ասաւ՝ ինձնով ա զովդ ու սաֆան,*
*Բացում են սեղանն, հեփում են ղաֆան,*
*Բաղ չեն տանում բնաւ քեզ պէս բէյրաֆան;*
*Զայլը չիման, ծաղկեայ գիւլշանն եմ ես.*

Պասն ասաւ՝ անցաւոր ա գիւլշանդ,
Արբեցութիւն մեղաց պատճառ նշանդ,
Հակառակ օրինաց քօլ արած բանըդ
Հայրապետաց գիրք ու կանոնն ես եմ։

Ուտխն ասաւ՝ գիրքն ու կանոնն ինչ ա,
Ի՛սկ պաս ուտողների համար ոչինչ ա,
Որքան ուտեն, էլի կասեն՝ թէ քիչ ա,
Նրանց համար իսկ պատուիրանն ես եմ։

Պասն ասաւ՝ ես եմ հիմքն օրէնքի,
Ճշմարիտ հաւատքի, սուրբ պատուիրանքի,
Դու կապեցիր ծաղկեալ դուռն դրախտի,
Կրկին խոստացեալ օթևանն ես եմ։

Ուտխն ասաւ՝ ինձ սիրողն հարուստ ա,
Որդիքն իշխանաց ինձ միշտ բարով տայ,
Քեզնից գանգատում են, ասում են վատ ա,
Նրանց սրտի խորհրդարանն ես եմ։

Պասն ասաւ՝ ես պարխապ եմ լուսապատ,
Թէպէտ ինձանից անում են գանգատ,
Իսկ իմ ժողովուրդն տնանկ ա, աղքատ,
Նրանց յոյս հաւատքի իսկ սիւնն ես եմ։

Ուտխն ասաւ՝ իշխան, հարուստ, մեծատուն,
Իմ մօտ են հաւաքւում իմաստունք գիտուն,
Երիտասարդ անձինք, քօլ իշխանազուն,
Նրանց սրտի սիրականն ես եմ։

Պասն ասաւ՝ իշխանների որդիքն,
Հաւատքի թոյլ ոսկրամոլ մարդիկն
Պասն ուտում են, շաղաղւում ա հոգիքն,
Նրանց հոգու իսկ քաւարանն ես եմ։

Ուտիսն ասաւ՝ թէպէտ բարեաւ պարարտ եմ,
Նրանց մեղքին ես չեմ պատճառ, անպարտ եմ,
Պասի միտքն ասեմ, խօսքն աւարտեմ,
Նրա միտքով՝ շատ անպիտանն ես եմ։

Պասն ասաւ՝ ինքդ քեզի իմացիր,
Հակառակ օրէնքի ընդդէմ մի կացիր,
Ինչ քեզ հրաման ա, հաստատ մնացիր,
Քեզնից աւել իսկ պատուականն ես եմ։

Թէ գիտուն ես՝ պաս ուտիսին վճիռ տուր,
Պաս ուտողն ա ուրախ, չի ուտողն ա տխուր,
Ուտողն ա շաղաղուած, պահողն ա մաքուր,
Մեղապարտ շարադրող Իվանն ես եմ։

## ԻԵ

*Երգ օրհնութեան*

Սերոբէք քերոբէք, դասք հրեշտակաց
Անկաչ գինողներին օգնական իլի, պահապան իլի,
Ժողովքն արդարոց, մաքուր կուսանաց,
Անկաչ գինողներին օգնական իլի, պահապան իլի։

Եօթն անուամբ շնորհօք սուրբ Կարապետն,
Տասն երկու առաքեալք օրինագէտն,
Յիսուս սամարեցի մեծ վարդապետըն
Անկաչ գինողներին օգնական իլի, պահապան իլի։

Սուրբն Ստեփաննոս մեծ սարկաւագն,
Արգարին ընծայած սուրբ դաստառակն,
Բոլոր ուխտատեղեաց սուրբ պատարագն
Անկաչ գինողներին օգնական իլի, պահապան իլի։

Աստուածային գրած սուրբ պատուիրանն,
Հայր Աբրահամու օրհնեալ սեղանն,
Քրիստոսի մաքուր լոյս գերեզմանն
Անկաչ գինողներին օգնական իլի, պահապան իլի։

Որ վասն մեր զենաւ Աստուծոյ գառն,
Քրիստոսի կապուած օրհնեալ սուրբ ծառն,
Աստուածային օրհնութեան բարբառն
Անկաշ դինողներին օգնական իլի, պահապան իլի։

Դրախտիցն բղխած էն չորս առաջն,
Սրբոյն Գրիգորի պատուական աջն,
Քրիստոսի արիւնաներկ սուրբ խաչն
Անկաշ դինողներին օգնական իլի, պահապան իլի։

Բոլոր ուխտատեղիք, սուրբ Էջմիածին,
Փրկիչն աշխարհի Յիսուս միածին,
Իվանն խընդրում ա, սուրբ Աստուածածին,
Անկաշ դինողներին, օգնական իլի պահապան իլի։

## ԻԶ

Սիրելի՛ք, էս աշխարհին շատ մարդ կայ, գանգատ ա անում,
Աշխարհն չէ մեղաւոր, ինքը գործքն վատ ա անում,
Բարին արհամարհում ա, իսկ չարն արմատ ա անում,
Թէ մին լաւութիւն անի, էն էլ իսկ թերատ ա անում,
Չունի բնաւ գործք բարի, հէնց դարդակ ումուտ ա անում։

Տէրն ինքն ա կամենում՝ էս աշխարհս մենք վայելենք,
Չուն՝ որ մենք չենք անասուն, խելքով միտքով բանական ենք,
Նման ենք հրեշտակաց, մինթէ մենք անբան հայվան ենք,
Պէտք ա, որ մեզ ճանաչենք, չափենք, կշռենք, գին անենք,
Մեզ Հայրն երկնաւոր որդի հարազատ ա անում։

Չում պատկեր ես Աստուծոյ, պիտի որ քեզ պահես մաքուր,
Ի՞նչ օգուտ՝ ցնծայ մարմինդ՝ էդ խեղճ հոգիդ իլի տխուր,
Աշխարհս վայելում ես, հոգիիդ էլ մէկ բաժին տուր,
Դու ես նրան օգնական, չունի նա ազգ, կամ մէր ու քուր,
Քեզանից գիշեր ցերեկ աղաղակ և դատ ա անում։

Չեմ ասըմ՝ թո՛ղ դովլաթդ, եկ, ձեռ վեր ա՛ռ էս աշխարհէն,
Տուել ա քեզ բարութիւն անհուն անհաս բարերարէն,
Արժան ա, միշտ վայելի՛ր, գործի՛ր բարի, փախի՛ր չարէն,
Չիցէ՛ թէ ձեռքդ քաշես որբ և կարօտ տկարներէն,
Էդ բարի գործքն ա՝ քեզ յաւիտեանն անպարտ ա անում։

Իսկապէս մեր գործքերն, կամ արծաթ իլի, կամ ոսկի,
Տէրն իսկ հատուցանի, էն ահեղ հրապարակի,
Թէ խոտ ա, փէտ և ղամիշ, արժան լինի նա կրակի,
Ազգ ընտանիք չեն օգնիլ, թէկուզ հազար աղաղակի,
Գործքն ա իսկ օգնական, հոգին անարատ ա անում։

Երանի տամ էն մարդին՝ ողորմած ա և բարերար,
Նրա գործքն ա բարի, իսկ սիրտումն ճրագ ա վառ,
Վայ տուէք էնպէս մարդին, աղահ, նաքազ, գործքն ա չար,
Երկմիտ և թերահաւատ, հմպարտ, նախանձ, միտքն խաւար,
Անողորմ մարդկանցն Տէրն դատապարտ ա անում։

Աբրահամ հայր հաւատոյ Մելքիսեթին եա տասանորդ,
Ճշմարիտ Քրիստոսի մարմնոյ արեան եղև հաղորդ,
Զոր Յակոբ թոռն նորին փոխան նորա եղև հաղորդ,
Իսկ ուխտ եդ ընդ Աստուծոյ տալ տասանորդ համապազորդ,
Օրինակ ամենեցուն նահապետն ուխտ ա անում։

Մովսէսն օրէնքն գիրաւ՝ տասանորդել իսկ եղբօրն,
Չի գտնուի ձեր միջին որբ և կարօտ տկլորներն,
Տէրն հրամայէ, հան ի գանձէդ հին և նորն,
Նորիցն տուր տասանորդ, կառավարուի չքաւորն,
Իսկապէս կատարողն գործքն մարգարիտ ա անում։

Իցէ թէ կր բամբասեն, թող վատաբանեն Իվանին,
Զում՝ որ ինքն քասիպ ա, յորդորում ա մեծատունին,
Ողորմութիւն բարձրանայ բարձր ձայնով դատաստանին,
Ճշմարտութիւն գործողն գայ համարձակ լոյս ատենին,
«Եկայք օրհնեալ» աջ կողմին, ձախ կողմին ուստ ա անում։

---

# ԻԷ.

(*Ղափիա տէրունական, կամ՝ վարսաղ*)

*Ստեղծող Տէրն մեր զգեցաւ մարմին,*
*Առաւ կերպ ծառայի մարդ եղաւ անհատ և անթերատ,*
*Անթերատ մարդկութիւնն առաւ ճշմարիտ,*
*Շրջեցաւ աշխարհի, շատ կրեց նախատ, եղաւ բռնադատ։*

*Բռնադատեալ տանջանք, չարչարանք քաշեց,*
*Ձեռագիրն Ադամայ իսկ ջնջեց և մաշեց,*
*Բոլոր քօլ աշխարհքի մեղքերն բախշեց,*
*Նրանք ամենքեան ժառանգ պայազատ, որդիք հարազատ։*

*Հարազատ Միածինն իջաւ 'ի վերուստ,*
*Աղքատացաւ ինքն, մեզ արաւ հարուստ,*
*Զում՝ որ գերի էինք դժոխքի կորուստ,*
*Ազատեց, զգեցուց հանդերձ լուսապատ, իսկ անհամեմատ։*

*Անհամեմատ հոգիներս պայծառ ա,*
*Որդի ենք Աստուծոյ, չենք այժմ ծառայ,*
*Աշխարհս պարտէզ ա, մարդս մին ծառ ա,*
*Պէտք ա բարի գործքով պտուղ տայ առատ, սէրով յոյս հաւատ։*

*Հաւատքով կատարեալ գործք բարի անես,*
*Մինչ կենդան ես, հոգոյ մասն բաժանես,*
*Իվան, էս աշխարհքից ինչ հետդ տանես,*
*Ընդով պէտք ա քեզ տան փառք պատիւ ազատ, հագցնեն խալաթ։*

---

## ԻԸ

### Ղ Ա Ր Ձ Ո Ւ Լ Ա Մ Ա Ց

*(Տէր, մի տար դատաստանի, բացելով զմիտս նորա)*

*Վա՜յ մեղաւորիս, որ տանին ատեան ինձ,*
*Ամա՜ն, ինձի մին ճար.*
*Որ չունեմ պատասխան ինձ,*
*Ամա՜ն, ինձի մին ճար,*
*Իսկ տէրունական պատմուճանից արել եմ իւվան (*) ինձ,*
*Իւվանայ եկած հոգիս մարմնով կալանուած կապան ինձ,*
*Կապած, Թաքցրած իմ քանքարի հեսարն բերան ինձ,*
*Բերան ու տեսին, որ շահ չունեմ, 'ի բանդ արգելան ինձ,*
*Արգելած տեղս մութն է խաւար, մին լոյս չի արան ինձ,*
*Ամա՜ն, ինձի մին ճար։*

*Լոյսն երկնից եկաւ, գտաւ մոլորուած ոչխարիս,*
*Ոչխարն ես եմ անտաւակ, պանդուխտ եմ աշխարհիս,*
*Աշխարհումն չար աւազակն խոցոտեց տկարիս,*
*Տկարքն տեսին, ոչ օգնեցին անկեալ կիսամահիս,*
*Կիսամահ էի, Սամարացին ձէթ եղ սպեղան ինձ,*
*Ամա՜ն, ինձի մին ճար։*

Ինձ էն անպտուղ ծառի նման, Տէ՛ր, մի՛ քցիր հուրն,
Հուրից ազատի՛ր, Տէ՛ր, յիմարիս, բացի՛ր կենաց դուռն,
Դուռնումդ մի՛ թող, որ տնտեսիս ամբաստանեն ծուռն,
Ծուռ մեղքերս իմ առանց բանտի ներիր, մի՛ տուր սուրն,
Սուր բարկութիւնիցն ազատի՛ր, հանի՛ր, տա՛ր սէհրան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր։

Սէհրան դրախտից կորած էի, եկար գտար ինձի,
Ինձի, եկ, մի՛ թող խեղճի փուշն—չար սատանան հնձի,
Հնձել տո՛ւր ինձ, Տէ՛ր, հրեշտակաց, մի՛ թող հուրն խանձի,
Խանձել իմ հոգիս. սէր իմ քցել մամոնայ պղնձի,
Պղնձի նման ժանգոտել ա, արել ա վերան ինձի,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր։

Վերանայ իլած իմ քաղաքի դռնապանն ա յիմար,
Յիմար փախտըմըս, Տէ՛ր, մահ մի՛ տուր, յանկարծակի մի՛ տար,
Տանես՝ ինձանից՝ մի՛ հարցըրուր, թէ ոչ կերակըրար,
Կերակուր եմ ես անքուն որդանց, թէ որ դատես արդար,
Արդարոց յորժամ «Եկայք» ասես, Տէ՛ր, կոչի՛ր Իվան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր։

---

## ԻԾ

### ԴՈՒԲԷՅԹ

*Տէ՛ր, եթէ շրթունս բանաս, օրհնութիւնդ կը բարբառի,*
*Անհուն անքննելի զօրքդ հող լեզուս ինչպէս կը ճառի։*

*Բոլոր արարածք հիանան, հիացեալ պէլուած կը մնան,*
*Բանաս զձեռդ, լիանան համայն գազանքն անտառի։*

*Ստեղծար հողից Իվանին՝ իսկ հաւատայ անհեղ Բանին,*
*Անսկիզբն նուխակ բնութիւն բնակեալ աննիւթ պատճառի [1]։*

[1]) *Մի օրինակ՝ Անսկիզբն երրեակ մի են բնակեալն աննիւթ տաճարի։*

## Լ.

Տէր, մի տար դատաստան ինձ, ամա՜ն, ինձ մին ճար,
Որ չունեմ պատասխան ինձ, ամա՜ն, ինձի մին ճար,
Մտի հարսանիս տէրունական, չունեմ պատմուճան,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Արարին վճիռ ձեռ ու ոտըս կապելոյ՝ արժան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Քանքարաթաղոյց ծառայի նման արան անպիտան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Չունեմ գործք բարի, կամ թէ բարութիւն վաստակ և ջան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Մնացի լալով, կրճել ատամանց խաւարն արտաքսան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճար։

Ոչխարի նման ինկել եմ չօլեր, որ ես մոլորեցայ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Անառակի պէս 'ի հայրենեաց խպառ բաժանեցայ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Անկայ 'ի ձեռս աւազակաց մարմնով խոցոտեցայ,
Ամա՜ն, ինձի մին ճար։
Էն քահանային, կամ Ղևտացոյն, գիտես՝ պատահեցայ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Ո՛վ սամարացի տէր իմ Յիսուս, դու ես օգնական ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճար։

Ես 'ի պարտիզի տէրունական մին անպտուղ ծառ եմ,
Ամա՜ն, ինձի մին ճար,

Նման յիմարայ ես խել չունիմ, լապտերս ինչո՞վ վառեմ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Արտաքսուել եմ տնտեսի նման, մին խեղճ ու անճար եմ,
Ամա՜ն, ինձի մին ճար,
Պարտատէրն իմ եդ գլս 'ի բանտի՝ պարտս իմ վճարեմ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Երկայնամիտ լեր, ո՛վ տէր իմ Յիսուս, եկ, էս բանտից հան,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր։

Տիպ եմ տիրական ես կորուսեալ նման դրամն կնկայ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Սերմանացանի սերմի նման 'ի մէջ փշոց անկայ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Հեղցուցի հոգիս, անցաւորի դարտ ու ֆիքրէն ընկայ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Իլել եմ ծառայ էս մամոնային, չիմացայ թէ ժանդ ա,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Զում՝ էդ պատճառի կապեն 'ի խրձունս, 'ի բոց հրոյն տան ինձ,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր։

Ի մէջ չարութեան մտել եմ 'ի քուն նման դռնապանի,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
'Ի մէջ գիշերին, կամ հաւախօսին հոգիս պիտի տանի,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Արբուցանել ջուր, կամ կերակրել յինէն կը հարցանուի,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Կը կապուի լեզուն կը պապանձուի էս խեղճիկ Իվանի,
Ամա՜ն, ինձի մին ճա՛ր,
Գիտեմ, որ լսեմ «Երթայքն յինէն» դառն պատասխան ինձ.
Ամա՜ն, ինձի մին ճար։

---

## ԼԱ.

(Հաղ Դ.աֆիա)

Տէրն ասաւ՝ քօլ աշխարհն իմանայ,
Ինչպէս գնացել եմ, գալու եմ էնպէս,
Մարդ կասեմ, որ իմ ղանշարին դիմանայ,
Ամենին փոխարէն տալու եմ էնպէս։

Երկինքն ժաժ կտամ, տարերք կը խաւարեմ,
Քօլ աշխարքն կրակ կը տամ, կը վառեմ,
Երկու կողքից վեց վեց աթոռ կը շարեմ,
Ինչպէս դատար՝ քեզ դատելու եմ էնպէս։

Իմաստուն փիլիսոփայք ո՞ր տեղ են,
Ճարտարախօսներն մոխիր են, հող են,
Ջուղար կուզեմ՝ կպապանձուեն, կը դողեն,
Ինձ էրել էք՝ ձեզ էրելու եմ էնպէս։

Իվա՜ն, մին օր սուգ, ղիամաթ, բուք կը գայ,
Որդն կը չարչարի, ցուրտն հուփ կը գայ,
Արդարներն ամպի վերին թուփ կը գայ,
Ինչ արել էք՝ ձեզ անելու եմ էնպէս։

---

# ԼԲ

## Դ Ո Ւ Բ Է Ի Թ

*Տէր, քո դատաստանդ լսամ, առաւ սարսափ դողն ինձի,*
*Թէպէտ կաղաչեմ սարերին, որ թագցընի հողն ինձի։*

*Ամենայն հոգիք կը սարսեն ահեղ ատենիդ երեսէն,*
*«Եկա՛յք» մեռեալին որ կասեն, զարթուցանի փողն ինձի։*

*Ո՞վ կիմանայ գողի գալն, կամ թէ իրա հոգի տալն,*
*Ամպ, մառախուղ, սուգի լալն, քէշկէմ տար կենցաղն ինձի։*

*Եկ լալով աղաչէր, Իվա՛ն, անանց կեանքըն տայ քեզ դովրան,*
*Քանի մարմնով եմ կենդան, արա՛, Տէր, եասաղն ինձի։*

---

## ԼԳ.

*(Վասն ողորմութեան, որ ընկալեալ եղեւ ինքնակալ Կայսերէն, թվին 1848, մայիս 30)*

*Փառք և պատիւ նախ՝ Աստուծոյ մատուցանեմք, աղայ Դանէլ,*
*Բազմեալն աթոռ սերոբէից փառաբանեմք, աղայ Դանէլ,*
*Զօրք հրեղէնք, մենք ընդ նոսին օրհնաբանեմք, աղայ Դանէլ,*
*Նա արարիչ, մենք հողեղէնք, հայր անուանեմք, աղայ Դանէլ,*
*Սիրտ կայսերաց ձեռս նորին իսկ տեսանեմք, աղայ Դանէլ։*

*Թագաւոր թագաւորաց և տէր տէրանց է համօրէն,*
*Իսկ համայն արարածոց տուեալ ա պատուիրանք, օրէն,*
*Նիկոլայ Պաւլովն հաստատեալ ա իւր փոխարէն,*
*Կառավարիչ աշխարհի, տէր և հովիւ առատօրէն,*
*Նորին սուրբ կայսերութեան միշտ խոնարհ եմք, աղայ Դանէլ։*

*Նիկոլայ Պավլովիչն հայր է գթած, տէր բարերար,*
*'Ի վերայ ազգիս հայոց ծագեալ արև լուսոյ կամար,*
*Տէր պահեսցէ հաստատուն որդոց որդի միշտ մուղալար,*
*'Ի մէջ բոլոր կայսերաց հզօր բազկաւն միշտավար,*
*Կալ մնալ միշտ անսասան, առ տէր հայցեմք, աղայ Դանէլ։*

Թագաւոր քաղցր առատ, հայր խնամող համայն ազգին,
Պահպանիչ բոլոր ազգաց ընդ հովանեաւ դրօշակին,
Պրվելիկն [1]) հայրական նորագարդեալ ետ մեզ կրկին,
Պաշտելի ողորմութիւն շնորհ բարի պարգև անգին,
Նորին ողորմութիւն այսօր տօնեմք, աղայ Դանէլ։

Միջնորդ էր մեծն Մովսէս առ Աստուած Իսրայէլին,
Նոյն նման միջնորդ իլար վասն ազգիդ Ինքնակալին,
Ընկալար ողորմութիւն շնորհ բարի յոյժ լիովին,
Հարուստ, տնանկ և աղքատ ուրախացանք բոլորովին,
Տացէ տէր ուէր միաբան միշտ վայելեմք, աղայ Դանէլ։

Հարազատ որդիդ քոյին՝ աղայ Գրիգոր Դանէլիչ,
Բարերար երախտաւոր իսկ եղև մեզ մխիթարիչ,
Երկմիտ տխուր սիրտներս ցնծութեամբ եղև փարատիչ,
Տո՛ւր սմա երկար կեանս, հայցեմք 'ի քէն, Տէ՛ր մեր փրկիչ,
Նորին իսկ պայծառ կենաց բարեխօս եմք, աղայ Դանէլ։

Փրկիչն ազգի մարդկան ինչպէս կատարեց Հօր կամքն,
Կամաւոր և հնազանդ յանձն առաւ չարչարանքն,
Նոյն նման որդիդ քոյին կատարեց քո հրամանքն,
Կամաւոր հետևելով, բարձրացաւ ազգի փառքն,
Նորին խոնարհութիւնն գովաբանեմք, աղայ Դանէլ։

Ի՛սկ և ունի յիշատակ եկեղեցին Լուսաւորչին,
Նոյն նման այս երախտիք գերազանց է քան զողջին,
Գանձ է յերկինս գրեալ 'ի դպրութեան կենաց միջին,

---

[1]) Աստրախանի հայերի Ռուսաց կայսրութիւնից ստացած արտօնագրի մասին է խօսքը, որ եղաւ Սէրգէյեան տան ներկայացուցիչ Դանիէլ աղայի և իւր որդի Գրիգորի միջնորդութեամբ։

Հայցեմք՝ Տէրն հատուսցէ 'ի գալստեան օրն վերջին,
Ձեզ և մեզ, սուրբ պսակին ակն ունեմք, աղայ Դանէլ։

Խնդրեմք 'ի Տեառնէ՝ տացէ նմա բարօրութիւն,
Բոլոր գարմ ու գաւակով սէր միաբան հաստատութիւն,
Հաւասար ամենեցուն եւս եղև փառաւորութիւն,
Օգնութեամբն Աստուծոյ արաւ մեզ բարերարութիւն,
Յիշատակ անջնջելի միշտ յիշող եմք, աղայ Դանէլ,

Վասն կենաց իշխանիդ հայցեմք 'ի Տէր միշտ անխափան,
Ազգէ ազգ, որդուց որդի հաստատ պահեա, Տէր, անսասան,
Տէրն լինի վարձատու աստ մարմնով իւր տեսութեան,
Առ հասարակ, ժողովուրդք, ասէք «ամէն» միաբերան,
Մենք չենք կարող փոխարէնը հատուցանեմք, աղայ Դանէլ։

Իսկ Տէրն հրամայէ՝ մարդն երախտիք խմանայ,
Յիշելով որդուց ոքդի, լաւութիւնն չի մոռանայ,
Յիշատակն անջնջելի շատ գովելի բարի բան ա,
Գովասանքս ասողն ձեզ աղօթարար Իվանն ա,
Պատուելի աղայութեանդ միշտ ծառայ եմք, աղայ Դանէլ։

---

## ԼԴ

*Քրիստոս Տէրն մեր գնաց հարսանիք,*
*Շնորհք տուեց, օրհնեց հարսն ու փեսային,*
*Աստուածապէս ջուրն գինի փոխարկեց,*
*Ի՛սկ սէր հրամայեց հարսն ու փեսային։*

*Պայծառացուց հարսանիքն գերազանց,*
*Բոլորքըն օրհնըւան, իլան լուսապսնծ,*
*Տէր, էն օրհնութիւնն, խնդրեմ, տո՛ւր սըրանց,*
*Պսակըն հաստատեց հարսն ու փեսային։*

*Մարդին պլուխ շինաւ, կնկան օգնական,*
*Ծնանին մանկունքըս սիրով միաբան,*
*Մաքուր և անարատ միան անբաժան,*
*Դիրք և օրէնք տուեց հարսն ու փեսային։*

*Արհամարհեց մովսիսական օրէնքին,*
*Էլ կնկան չի թողնեն, պսակուեն կրկին,*
*Զում՝ որ 'ի սկզբանէ մարդ էին և կին,*
*Անքակ միաւորեց հարսն ու փեսային։*

Իվանըն առաւ մարմնաւոր պսակն [1]),
Անմահ պսակին էլ իսկ ունի ակն,
Տէր պահեսցէ սըրանց զարմը զաւակըն,
Ինչպէս որ զարգարեց հարսն ու փեսային։



[1]) Իվանն ամուսնացած էր և ունէր զաւակներ։

# ՄԱՐԴԱՆԵԱՆ ԽԱՉԱՏՈՒՐ

*Ամա՛ն, ի սէր Քրիստոսի, ով անցք բանին իմ լսի,*
*Թէև ինձի չափսոսի, մէկ ողորմի թող ասի։*

*Թարիփլամաս երկար ա, պատմել լեզուս տկար ա,*
*Ով դօստ սրտիս ջիգար ա [1]), Նա ինձ կանի աշկարա՝*
*Թէ չէլաւ ինձ մին չարայ, որքան դեղ ու ճար արայ,*
*Ախըր վերջն բէզարայ, որ տեսայ ինչ ազար ա.*
*Մահն միթամ շիքա՛ր ա՝ կենդանի վախտս եմ տեսի։*

*Ղարիպ էի վեց տարի, կարօտ ազգաց դիտարի,*
*Երբ զուլլուղս կատարի, իմ վաթանս յետ արի՛,*
*Թէ ցաւս քիչ դադարի, զուրս գամ երկրէն օտարի,*
*Բայց պատահայ բէթարի, խիստ դաղ ու բեդաղ արի,*
*Ախըր, ինչ մուրազ արի, ոչ մէկին էլ չի հասի։*

*Հալբաթ շատունց մալում ա, թէ մահն ինչ զուլում ա,*
*Բայց որ մարդու հալում ա, հոգսը դահա զուլում ա,*
*Մինն վախճանի՝ օլում ա, թէ իր վադին իլում ա,*
*Միւսն կապ ու կալում ա, միտքը բէյվախտ խլում ա,*
*Երբ յետնիցն լալում ա ծնողն մին նաֆասի։*

*Հազար մին դարդ, երկու ցաւ, քանրադդ դլխովս դիփ անցաւ,*
*Սրտիս նիշտար սուր ցցաւ, լիրդ ու թոքս խիստ խոցաւ,*

---

[1]) *Երևի՝ նշանակում է. ով որ ինձ սրտակից և կարեկից է։*

Ախրը դուգուն դադ բացաւ, խպառ հալից ինձ քցաւ,
Իմ փայ եօլը հէնց բարձաւ, բոլոր ջափաս փուչ դարձաւ,
Աչքս ադի ջուր լցաւ, խաւար է, օհտաճ եմ լուսի։

Մալում՝ էդ էր ինձ գրուած, էդքան Նասիբ, փայ դրուած,
Գառն եմ, սպանդ եմ վարուած, մնացել եմ շուարած,
Զորս դիս ջալլաթ բոլորուած, մէջներումն եմ մոլորուած,
Վերջի թեւս կտրուած, մէջք ու բէլս կոտրուած,
Իմ թայ թուշից խոտորուած, ճանապարհս կորուսի։

Պատահայ, մուլթ օթախ ա, անաչք, անդուռն, անթաղ ա,
Արել ին ինձ ղաղաղայ, թէ դա միշտ քեզ եաթաղ ա,
Դէ ինչ անեմ, մեծ դաղ ա, որ ուր ծնայ, ուր թաղայ,
Թէ ոչ ջանս մատաղ ա, ձեր արևուն սաղաղ ա,
Հոգիս մեզօք թաթախ ա, միջնորդ ա պէտք՝ բան խօսի։

Եթէ քննենք լաւ խորը, ինչ ա մեր հալ, ումբրը, օրը,
Մէկ ա դնում թաց չորը, ծեր և ջահիլ, հին, Նորը,
Գրեցէք իմ եղբօրը՝ խաբարս տայ իմ մօրը,
Գիտեմ կը հագնի սև շորը, կընկնի սրգով սար ձորը,
Մարդու համար մահն ա սուր, չուն՝ վիզ ա տամ, ինչպէս թուր,
Ամա մահ ա, որ կայ ջուր, էդ գազանին կլին կուր,
Հէնց էդ մասին կրակ հուր ինձ էրում ա առանց ջուր,
Մարդանեանն եմ Խաչատուր, որ ասեցի բան տխուր,
Հանգիստ հոգոյն, Տէր իմ, տուր Ալէքսանդրին-Մուրդուգին։



# ՄԵՂԱՒՈՐ ՅԱՐՈՒԹԻՒՆ

## Մ Ո Ւ Խ Ա Մ Մ Ա Զ

*Քօլ Հաշտարխան գովում են՝ ուստա Իվանն ա բանական,*
*Ի վերուստէն տուեալ է քեզ շնորհն արուեստական,*
*Երրորդութեան նշանն լինի քեզ վերայ օգնական,*
*Գին չի համնիլ խօսքերիդ, գովում են հաւասարական,*
*Լսողն, կամ տեսնողն, կամ ջահիլ, մինչև օրական,*
*Քաղցրախօս, բարեհոգ, ամենի մօտ ես դուրական։*

*Թէ եղնաղ, կամ թէ մէճլիս՝ բոլորքիս հաղպատ ես անում,*
*Բարեկամ ընտանիքով, կամ որդով սովրաթ ես անում,*
*Խօսում ես աստուածարան, ջոկում ես, բաբաթ ես անում,*
*Մաքուր բարբառ սիրտիցդ սէր ու յոյս հաւատ ես հանում,*
*Չի լիլը քեզնից կուշտանալ, աստուածատուր սա սիրական։*

*Աշխարհում թամահ չունես, ամեն բանից լիացել ես,*
*Մարմնիդ տանջանք ես տալիս, չար կամիցն հեռացել ես,*
*Յոյս կապել ես Աստուծոյ, լոյս հաւատին հիացել ես,*
*Սիրտիդ խորհուրդն առնես, չուն՝ որ էսքան սէրացել ես,*
*Ումուտըդ մի փոխարկիր՝ նոքա քեզի տէր տիրական։*

Պարգներես, ջերմ եռանդով մտի՛ր Աստուծոյ առաջն,
Բարեխօս Աստուածածին, սուրբ Յովհաննէս Մկրտիչն,
Պահապան լինի՛ քեզի սուրբ Գրիգոր Լուսաւորիչն,
Նշանն լինի՛ հետդ Քրիստոսի կենաց խաչն,
Յոյսովդ փաթաթուել ես, նա ա քեզի միշտ օգնական։

Դու ես էս քաղաքումն բոլոր ազգի հայոց մէջին,
Պիտի քեզի պահպանեմք քարեղէն, կամ ոսկի միջին,
Թէ շարուի քանի սխալ, ներիր ինձ էս խօսքի միջին,
Մեղաւոր Յարութիւնին մի՛ թող նրան մեղքի միջին,
Կը վկայեն էս բանին շատ գիտուն անձինք պատուական։



# ՍԱՅԱԴ ՕՂԼԻ

## Ա.

*Ո՛վ աշխարհ, եարա՛բ, քեզնէն շնորհակալ մարդ կը լինի՛,*
*Չեմ կարծում, որովհետև ամենումն էլ դարտ կը լինի,*
*Եթէ մարդ փոքր միջոց մտօքն հանդարտ կը լինի,*
*Սիրտով կուրախանայ, մարմնով դուարթ կը լինի,*
*Ձուտ կադարկես հոգսերն, կը դայ հետն շարթ կը լինի,*
*Խեղճ մարդուն ուրախ սիրտն թառամած վարդ կը լինի,*
*Ամենեցուն պատճառն չարութեան հնարրդ կը լինի։*

*Թէ մէկ մարդու տուել ես յաջողութիւն մամոնայի,*
*Խղճմտանքն բարձել ա, ընկերոջն ոչ խնայի,*
*Սատանի մշակ դառած՝ դդուշութեամբ կը ծառայի,*
*Մահն միտքն չի քցիր, հոգուն չի տալ երկու շահի,*
*Մարմնաւոր փորձութիւն միտք կանի հազար ջուռայի,*
*Հանգստութիւն էլ չունի, գիշեր ցերեկ ախ ու վայի,*
*Տեսնողն հէնց կիմանայ՝ հարուստն անդարտ կը լինի։*

*Մէկէլն թէպէտ ունի իրան ապրուստն բաւական,*
*Անհանգիստ է անցկացնում իւր ժամանակն պատուական,*
*Թամահն աշխարհումս բազմացել ա անթուական,*
*Թէ հարուստ և թէ տնանկ, կամ թէ իշխան ազնուական,*
*Թէ համայն արհեստաւորք, կամ բոլոր վաճառական*

Ծառայում են աշխարհիս իրանց կամօք յօժարական,
Ամենեցուն կը տիրէ, բայց ինքն անպարտ կը լինի։

Մարդ կայ, որ իրա խելքով բոլոր աշխարհն չափել ա,
Ոչ գժոխքի տանջանքից և ոչ մահից սարսափել ա,
Էս անցաւոր բաներին իւր բոլոր յոյսն կապել ա,
Չի իմանում, որ աշխարհն ունայնութիւնով խաբել ա,
Հոգւոյ աչքն ա քոռացել, գիշեր ցերեկ խարխափել ա,
Սատանան էլ սիրտումն իւր չարութիւնը թափել ա,
Կամօքն մոլորուել ա, միտքն էլ հմպարտ կը լինի։

Ո՛վ եղբարք, գիտեմ յոյժ դուք ինձի դատաստան կանէք,
«Կսէք՝ թէ ո՞վ է արդեօք երջանիկն, կը հարցնէք,
Փառք կտար միշտ Աստուծոյ, թէ փոքրով բաւական էր,
Աշխարհից չէր գանգատիլ, ընկերոջից օգնական էր,
Մարմնաւոր նեղութիւն համբերութեամբ կը տանէք,
Աստուած իմ, Սայեադ օղլու թէ յանցանքն չի հարցանէք,
Հարիւրից մինն պակաս մոլորեալ ոչխարը կը լինի։

# Բ

Ո՛վ ստեղծող Աստուած, սուրբ Երրորդութիւն,
Տո՛ւր մեր մեղաց թողութիւն,
Կու խնդրեմ, աշխարհիս տո՛ւր խաղաղութիւն,
Որդւոց մարդկան հաշտութիւն,
Միշտ և ամենայն ժամ արդար տէրութիւն,
Հայ ազգին ուրախութիւն,
Աղաչեմ ողբալով՝ ոչ տաս գերութիւն,
Հերկարանայ չարութիւն,
Մօտանայ աշխարհիս ամէն բարութիւն,
Միմեանց խոնարհութիւն։

Չարիցն ազատի՛ր, փրկի՛ր անհասն,
Պարտիմք պահել քո պասն,
Քրիստոսի մկրտիչ սուրբ Յովհաննէսն
Տացէ՛ մեզ բարի հաւասն,
Անապական ծնեալ անարատ կուսն
Լինի մեզ բարեխօսն,
Արժանի արասցէ տէր մեր Յիսուսն
Իւր աջակողմեան դասին,
Եւս կենաց տացէ բարի սովորութիւն,
Լինի միշտ արդարութիւն։

Եղբա՛յր, դու բարի սովորութիւն արա՛,
Աստուծոյ միշտ յօժար ա,
Գիտենք՝ արքայութիւնն միշտ պայծառ ա,
Գնալն մեծ հնար ա,
Աշխարհումս, կարող ես՝ լաւութիւն արա՛,
Հոգու փրկութիւն ճարա՛,
Երանի՜ այն մարդուն, ով բարերար ա,
Էն կենայն նա արդար ա,
Քեզ օրինակ վեր ա՛ռ բարի սովորութիւն,
Մի՛ արա յիմարութիւն։

Խելքն աշխարհումն մին անգին բան ա,
Ով որ ղադրն կիմանայ.
Ով որ մասն ունի, միշտ պէտքական ա,
Հոգուն էլ օգնական ա,
Ով որ մասն չունի ու անպիտան ա,
Գործով միշտ պարտական ա.
Ամէնն պարտ է, որ իւր բանն իմանայ,
Էդ էլ մեզ բաւական ա,
Սայադ օղլանն միշտ խնդրէ թողութիւն,
Ծնողաց արքայութիւն։



# ՕՀԱՆԷՍ

## ՄՈՒԽԱՄՄԱԶ

Էդ ա Աստուծոյ պատուիրանքն՝ վաղուան համար դարդ մի՛ անիլ,
Խելք ու միտքդ, խիալըդ մարմնոյդ վրայ բանդ մի՛ անիլ,
Թէ մեծութեան մօտենաս, միտքդ անհնազանդ մի՛ անիլ,
Փարթամութեան մի՛ ցանկար, հոգիդ քարուքանդ մի՛ անիլ,
Հինգ օրուայ կեանքիդ համար սուտ ու զորդ անդ մի՛ անիլ,
Սէրդ Աստուծուն միացրու, չարի հետը բանդ մի՛ անիլ,
Օրհնօք զովգդ արա, եարը քեզ փըսանդ մի՛ անիլ։

Փառք Աստծու պարգեւածին, մի՛ ասիլ՝ թէ էդ էլ քիչ ա,
Մի ցանկանալ այլոց վրայ, թէ փլանը խալխի մէջ ա,
Թէ բոլոր աշխարհը շահես, իմացիր՝ թէ վերջը հէչ ա,
Տես Սողոմոն իմաստունին, նրա պէսը նէչա նէչա,
Թէ գիտես, խոնարհ կացիր, ինքդ քեզ հպարտ մի՛ անիլ։

Ե՛կ, գնանք սէհր անելով՝ մտիկ անենք գերեզմանն,
Ոչ թէ շատ՝ ստ ժամանակ էդ ա մարմնոյս [1]) գնդանն,
Երկնչում եմ ասելու ահեղ օրուայ վերջի բանն,
Աչքիդ դիմաց գրուած ա Ստեղծողի պատուիրանն,
Ճշմարիտ բանիր բանըդ, դալը ու զուլըի փանդ մի՛ անիլ։

---

[1]) Մի օրինակում՝ մահու գնդանն։

*Զուն՝ բարի օրդ քիչ ա, պիտի որ միշտ զգաստ կենալ,*
*Թէ լաւ օրին ուրախ ես, վատին էլ պէտք ա դիմանալ,*
*Քանի որ կենդանի ես, մահուան օրդ մի՛ մոռանալ,*
*Աշխարհս անցաւոր ա, յետ ու յառաջ պէտք ա գնալ,*
*Մահիցը մի՛ վախեցիր, ինքդ քեզ հիւանդ մի՛ անիլ։*

*Գիտեմ, որ պատկերովդ դու էլ Աստծու նման ես,*
*Գործովդ մաքուր կենաս, ինչ որ ուզես, դու էլ կանես,*
*Տես, որքան հրաշք գործեցին սուրբքն համայն ճշմարտապէս,*
*Եկ, սրանց միջնորդ քցիր, մին ճար կանեն քեզ, Օհանէս,*
*Հեռացիր բամբասանքից, չարը մանաւանդ մի՛ անիլ։*



# ԱԼԼԱՀՎԵՐԴԻ

Մարիա՛մ, գինի տո՛ւր մէկ չինի թասով,
Խմենք, քէֆ անենք էշխ ու հաւասով,
Արի, քեզ պահեմ ատլաս ու խասով,
Խաս ղըրմըզ շալիկ զարբաբ լիբասով,
Էլ չեմ կշտանայ քու անուշ տեսով,
Դուք սիրով կացէք հարսն ու փեսով։

Մարիա՛մ, քու սիրուն ես էլայ հէյրաթ,
Արեգնական ես, Թիֆլիզու թաւաթ,
Կը մոնենք օթախը, բերենք մասլահաթ,
Էլ մասլահաթին չի լիլ խայանաթ,
Գիւլ ու ծոյ անենք հաւաս գիւմասով։

Եա՛ր, քու մէջլիսին սանթուր ա պիտուն,
Ոսկէ թելերից սանտր ա պիտուն,
Իմ սիրած եարը ծանտր պիտուն,
Մէջլիսի թասը մանտր ա պիտուն,
Էլ չեմ ուզենայ խմել շահքասով։

Ալլահվէրդին[1] ասաւ՝ ինձ հետ սէր ունես,
Ձուտով եմ յանել՝ հէրն ու մէր ունես,
Որ մէ պաչ չես տայ, էլ ինչ խէր ունես,
Եար քեզ կաղաչեմ լաւ իլթիմասով։



1) Ալլահվէրդին Նախիջևանցի աշուղ էր։
Ծան. Գ. Հախվերդեանի։

# ԲԱՆԳԻ

## Ա.

### *ՄՈՒԽԱՄԲԱԶ*

*Էսօր մէ սիրուն տեսայ՝ խիստ խալիս ահւալ ունի,*
*Ջաւահիր մաղան էր՝ եաղութ, եաման, լալ ունի,*
*Երեսումը լուսածիր, պատկերքումը խալ ունի,*
*Ոչ մի տեղին փուտ չըկայ, աչքն, ունքն չալ ունի,*
*Զար ու զարբար հագել էր, կապած թիրմա շալ ունի։*

*Ո՛վ սիրելի, թարիֆդ պէտք ա ասեմ խաղումը,*
*Ճամամէքդ բաց էլած՝ պայծառացրել ես թաղումը,*
*Թուխի դումբի դուշի պէս, ուր ման կուգաս բաղումը,*
*Մէջլիսը չաղ ես արել, Նստած ես դլաղումը,*
*Բիւլբիւլի պէս աւազով՝ քաղցր դալմաղալ ունի։*

*Աշխարհքումս գոված ես, դուն չես մէկ ինսանի պէս,*
*Երկնքիցը վէր եկար հուրի ղլմանի պէս,*
*Թէկուզ անես դիւանս թախթը Սուլէյմանի պէս,*
*Ծոցիդ մէջը հոտով ա՝ աթտարի դուքանի պէս,*
*Բաղուփի ձէն մի տայ՝ էնդուր փուչ խայալ ունի։*

*Սովդագարն գոված ա մաթահն ահւալի հետ,*
*Աշխարքումս գին չունի նա իր անգին քարի հետ,*
*Թէ բաղման ես, բէջարի բլբուլ գիւլզարի հետ,*
*Աշուղ Բանգին քեզ սիրեց, ման կու գայ խայալի հետ,*
*Քանի գուզէ քեզ գովէ, հայի՜ֆ, քոռ իղբալ ունի։*

# Բ

## ԹԷՋԼԻՍ

*Հոգի.* Հոգին ասաւ՝ մարմին, քեզ մէ բան ասեմ,
Կոչենք ծունտր ու աղօթք, լացը լաւ կըլի,
Յորժամ ժամ կըկոչուի, մի տեղ գնանք ժամ,
Արտասունքով ծունտր ու աղօթք լաւ կըլի։

*Մարմին.* Մարմինն ասաւ՝ հոգի, չեմ գնայ ժամը,
Սազ ու սոհբաթ, ուրախութիւն լաւ կըլի,
Կառնեմ սիրուններս, կերթամ սէրհանգահ,
Ուտել, խմել, սէհր ու չագը լաւ կըլի։

*Հոգի.* Հոգին ասաւ՝ մարմին անգէտ ու յիմար,
Էդ աշխարհի բանին դու չես խաբարդար,
Քանց ջուրն ցածր կա՛ց, բարձր մի՛ ման գար,
Աղքատ մարդի բարով տալը լաւ կըլի։

*Մարմին.* Մարմինն ասաւ՝ հոգի՛ ծովեր կը չափեմ,
Կը հալեմ ոսկի, էրծաթ, մարգարիտ կը թափեմ,
Որտեղ մէկ սիրուն կայ՝ կառնեմ կը խափեմ,
Պաչեմ գոզալների խալը՝ լաւ կըլի։

*Հոգի.* Հոգին ասաւ՝ մարմին անգէտ, անարժան,
Երբ, ես դու մի տեղ ընկնենք միաբան,
Յորժամ Յիսուս Որդին վէր գայ դատաստան,
էն աշխարհքում ջուղաբ տալը լաւ կըլի։

*Մարմին.* Մարմինն ասաւ՝ հոգի, ես ինձ կը ներեմ,
Կը հալեմ ոսկի, էրծաթ, մարգարիտ կը բերեմ,
Որտեղ մէկ սիրուն կայ, կառնեմ կը սիրեմ,
Հագցնեմ ատլասը, ալը՝ լաւ կըլի։

*Հոգի.* Հոգին ասաւ՝ մարմին, յիմար ու տխմար,
էդ աշխարհքի բանին դու չես էլ ճարտար,
Դատաստանին դու ինձ մի անիր շատ յօժար,
Արքայութիւն ինձի ճամբը լաւ կըլի։

*Մարմին.* Մարմինն ասաւ՝ հոգի, ես եմ շատ փառքով,
Ունիմ ոսկի, էրծաթ, մարգարիտ շարքով,
Քեզի քոմակ կանեմ ժամ պատարագով,
Դատաստանին քեզի ճամբը լաւ կըլի։

*Բանգի.* Բանգին ասաւ՝ մարմին, քեզ չեմ բաղի,
Յորժամ Յիսուս Որդին կը նստի դաղի... [1])

*Մարմին.* Մարմինն ասաւ՝ հոգի, ես մեղայ քեզի,
Որտեղ գնաս՝ քեզ հետ գալը լաւ կըլի։



---

[1]) Բառ երեւթին՝ երկու տող պակասում է։

# ԳԻՒՐՋԻ ՆԱՒԷ

(*Ի գոյն «Ասում՝ են ղլմացի»*)

*Երբ որ լսում եմ անուշ բառդ քաղցր առաւօտեան,*
*Անձս է կրում տանջան.*
*Լեր ողորմասիրտ, բարեխնամ, թէ դու ես Լողման,*
*Դարդիս արա դարման.*
*Էս արտասուելով խառնակուել է աչքերս արեան,*
*Ինձնում չը մնաց ջան։*

*Արժանի արա՛ ինձ քո տեսոյդ, լե՛ր բարեխնամ,*
*Ղուլլուղումդ միշտ կամ.*
*Էս չարչարանքն ինձ տալիս ես, տե՛ս քանի՛ անգամ,*
*Ուզում եմ հոգի տամ.*
*Ես ո՞նց դիմանամ, ինձ տալիս ես ցաւերդ էսքան,*
*Մի անգամ հոգիս հա՛ն։*

*Էս չարչարանքն ինձ տալիս ես, մի տեսնեմ ինչո՞ւ,*
*Ողորմը չունես դու.*
*Ես արտասուելով տիւ և գիշեր վասն սիրոյդ քու,*
*Ես չեմ ասում ահու.*
*Խղճա՛ սիրելուդ, մի՛ չարչարիլ, ո՛վ իմ սիրեկան,*
*Տեսոյդ լինիմ արժան։*

Ես մեռեալ էի, կենդանացայ, ինձ եկար ռաստ,
Փրկիր, մի՛ անիլ դաստ.
Քեզ կը ծառայեմ, քանի սաղ եմ, մի՛ պահիր նուաստ,
Սիրտս ինձ էրում է սաստ.
Ազահ մի՛ լինիլ, չես կշտանալ՝ աշխարհը քեզ տան,
Ինձ խղճա՛, սիրակա՛ն։

Գիշեր ու ցերեկ ես քաշելով քու ահ ու դարը,
Վերջն ինչ ա իմ ճարը.
Էլի քեզանում կը գտնուի ցաւիս հնարը,
Ե՛կ, իմ սիրահարը.
Զայնից կարօտ եմ, խօսացնելիս՝ տո՛ւր ինձ պատասխան,
Ինձ կըլնի բաւական։

Էս չարչարանքը ես քաշում եմ, կարօտ եմ սէրի,
Քեզ տարել են գերի.
Քու ողորմութիւնդ ինձ վրայ որ ըլնի թերի,
Սիրտս կու համբերի.
Արա՛ բարութիւն, վերջիդ օրը ունենաս նշան,
Ըլնի յիշելիք բան։

Ինձ պէս ցաւատար ոչ ոք չը կայ մէջ աշխարհումը,
Տուիր էս տարումը.
Բա՛, քու ձեռիցը դանդատ անեմ, գնամ, ե՛ր, ո՛ւմը,
Միշտ լինիս բարումը.
Էս Գիւրջի Նաւին ոչ ոք չունի տէր քեզնից զուման,
Սիրտս է հալել զուման։

## Բ

*Զարմանալի է Աստուծոյ բանը,*
*Ի՞նչպէս ստեղծեց երեք նշանը,*
*Մէկ՝ բարամա—կոյս աննմանը,*
*Իլաքիմ՝ բոժոժ—հարս սիրեկանը,*
*Մէկ՝ աբրշում—կին ղովականը։*

*Բարաման տասնուչորս ամաց կոյս ա,*
*Զարմանալի բողբոջ նորաբոյս ա,*
*Ունքերն անեղ, աչքերն լոյս ա,*
*Նա ինձի համար հաւատ ու յոյս ա,*
*Խիստ աղալած ա նրա դիւանը։*

*Բոժոժ-հարսը մէկ գիշերուայ կին ա,*
*Այսօր դրել ա ձեռները հինա,*
*Կերպը, փայլքը շուխն ու բոյը մին ա,*
*Քաղցր խօսալն իմ սրտիս սին ա,*
*Կարծեմ, թէ ընդու մաումառոյն ա (*)։*

*Աբրշում-կնոջ իսկն է փռանգ,*
*Հագուստն ա տեսակ ռանգ ռանգ,*
*Քաղցրախօս ես, ունիս բլբուլի հանգ,*
*Քեզ ղուլ կըլնեմ, քանի որ սաղ կանք,*
*Բլբուլը դու ես, իմ գուլարանը։*

*Գիւրջի Նաւէն երեքիդ մատաղ ա,*
*Բարամայ ծոցումդ դրախտի բաղ ա,*
*Բոժոժ ծոցումդ շամամ կու խաղայ,*
*Աբրշումի աչքերը Թամամ կու խաղայ,*
*Ես մեռնեմ իրեքիդ անուանը։*



# ԵԱՂՈՒԲ ՕՂԼԻ

## *Թ Է Ձ Լ Ի Ս*

### Ա.

*Ադամայ ողլի, ստեղծողդ միտդ բեր,*
*Մինչեւ զայ ողորմութիւն բարերարէն քեզ,*
*Գիշեր ցերեկ ծունր աղօթքին կաղնիր,*
*Յետ դարձրու էդ չար ճանապարհէն քեզ։*

*Դու միշտ յոյս ածում ես քու աշխատանքը,*
*Միտքդ գցիր յետիդ օրուան վախճանքը,*
*Էդքան ժողովում ես դովլաթն ու կայքը,*
*Վերջն ինչ կը տանես էս աշխարհէն քեզ։*

*Մարմինդ ուրախ ա զանձիդ հաւով,*
*Խեղճ հոգիդ տկար ա մեղաց էդ ցաւով,*
*Էդքան բարձրանում ես սատանի թեւով,*
*Շուտով կու թօթափի բարձր սարէն քեզ։*

*Քու դովլաթը քու մարմնաւոր փառքն ա,*
*Թո՛ղ աշխարհս, դու դարտակ յետ դա՛ռ, գնա՛,*
*Եաղուբ օղլի (1), հինգ դաղ կտաւն ա՛ռ, գնա՛,*
*Ազատիր աշխարհիս զարդ ու սարէն քեզ։*

---

1) *Եաղուբ օղլին Թիֆլիսեցի էր, մեռաւ խօլերի ժամանակ Հաշտարխանում, նա կոյր քամանչա ածող էր։*

*Ման. Գ. Հախվերդեանի*

## Բ

*Խելքս առել ես, նոր թագա ջիւա՛ն,*
*Հոտով նման ես վարդ ու ռէհան,*
*Լոյս ես արեգակ ինքդ գանագան,*
*Խելքով դանանդա Բահլուլի նման,*
*Կարծեօք դուն չունիս թայդ Փռանգստան,*
*Բոլոր աշխարհքը սալամաթ կուգան,*
*Հարցրու հալս, արա՛ դատաստան,*
*Էշխդ արել ա ինձ բանտ ու փարվան։*

*Ինքդ փառահեղ խիստ մարիֆաթով,*
*Ճատ ջան ես էրում խօշ խիտիլաթով,*
*Խօսքդ, ջուդարդ քաղցր նաբաթով,*
*Ճատ ես գովելի, պայծառ սուրաթով,*
*Դարչին մխակից ծոցդ ա հոտով,*
*Նստել կանգնելդ կարգով ադաթով,*
*Արի քեզ պահեմ սազով սովբաթով,*
*Թամաշ անողդ դառել ա հէյրան։*

*Բօյդ քաշուել է սալբու չինարի,*
*Նստած նման ես մէկ հուրի փարի,*
*Ճողքդ փայլում է ինձ լալազարի,*
*Հատդ չի ճարուի ամեն դիարի (կողմը՞),*
*Քեզ պըտուտողը դժուար կը ճարի,*

*Պէտք է թարիֆդ գրենք դաւթարի,*
*Բոլոր աշխարհքն լսեն, իմանան։*

*Վառվառ աչքերդ պառլու փիալա,*
*Ռանգդ բաց էլած մայխուռայ լալ ա,*
*Բերանդ տաճար, լեզուդ բլբուլ ա,*
*Սուրահի վիզդ մինայի կուլա,*
*Ճարմաղ բօխախդ աջաբ ծալծալ ա,*
*Հոգի ես հանում, էլ ինչ խայալ ա,*
*Ծաղուբ օղլին, եար, դռանդ ղուլ ա,*
*Էնպէս պահիր դուն՝ չիմանայ դուշման։*



# ԹԻՖԼԻԶ ԵԱԼՂՈՒԶ

## Թ Է Ջ Լ Ի Ս

Թէ Աստուած կու սիրես, իմ սիրեկան եա՛ր,
Էշխեմէդ դուցաղ իմ, մէկ մօտս արի՛,
Լեզուդ բլբուլ, ակռքներդ մարգարիտ,
Բոյդ թարի նման է մէկ սալբու ծառի։

Տարէց տարի քո էշխեմէդ էրուած իմ,
Արէն արտասունքս աչքէս վէր ածիմ,
Ջիգարով խորուած իմ, սրտով էրուած իմ,
Միտքս մոլորուիլ է դարդ ու սարսարի։

Պատկիրքդ նման է նաղուշ ալմասի,
Ջանս քիզ ղուրբան մատաղ իմ ասի,
Մէկ ասի՝ թէ բաղիփի հիտը մի՛ խօսի,
Հարցրէք՝ թէ էնէնց էլ ի՛նչ գէթ իմ արի։

Քու խաթրով ման եկայ ուս ու սուս արաւ,
Տօ՛, իմ ղաղիմի եա՛ր, խիլքդ ո՞վ տարաւ,
Ով որ նհախ տիղը քիզ ինձմէն առաւ,
Ցոյս ունիմ հանդիպի անգումանք չարի։

*Թիփլիս-Ծալղուկն իմ խիստ շատ ղալըդըն դիմացաւ,*
*Իմ ղադիմի եարը ինձմէն հեռացաւ,*
*Ումն որ լաւ էի ասի, նա վատ իմացաւ,*
*Չէլյա՛ւ, չը ռաստ եկայ մէկ դօղըրու եարի։*



# ԹԻՖԼԻԶ—ՆԱՐԳԻԶ

## Ա.

*Եար, դուն գոված սիրուն աննման իս դուն,*
*Աշխարհքումն յայտնած Նովչւան իս դուն,*
*Քաղաք[1], Շամքոռ, Գանջա, Երևան իս դուն,*
*Խոյ, Նուխի, Շուշի գոված խան իս դուն,*
*Գիլան, Մազանդարան, Թէհրան խան իս դուն․*

*Թէհրանումը խան իս դուն,*
*Թաք ինձ քիզ մօտ տանիս դուն,*
*Էշխից մէջն էրւում իմ,*
*Անօր [2] չսպանիս դուն,*
*Ուր որ էհաս, ինձ էլ տանիս դուն։*

*Օսկու մէջն գրած գումրուխտէ բառ իս,*
*Բայլըում իս [3] ջաւահիր դու անգին քար իս,*
*Դրախտի մէջն կանգնած դու խնկան ծառ իս․*

*Խնկան ծառ իս աննման,*
*Ծաղիկ իս վարդի նման,*
*Բլբուլի պէս էրւում իմ,*

---

[1]) *Հաւանական է, որ քաղաք կոչուածը Թիֆլիսը լինի. սովորաբար այդպէս են կոչում Թիֆլիսին բնիկները։*

[2]) *Գուցէ՝ անժամանակ։*

[3]) *Չի հասկացւում։*

## Բ

Եփրեմ սրբազան սուրբ կաթուղիկոս,
Լուսաւորչու տիղն կաս, հոգևոր տէր,
Մատնահար մատնիրդ, լուսեղէն աջդ,
Էջմիածին նստած կաս, հոգևոր տէր։

Արարած աշխարհքիս ծով ու ցամաք իս,
Չորեք դիմաց Հայուց ազգի քոմակ իս,
Լուսաւորչու կարգած գուն օրինակ իս,
Ունիս Աստուածեմէն մաս, հոգևոր տէր։

Տասն երկու առաքեալք, հրեշտակապետն,
Օհաննէզ Մկրտիչ, Եղիսաբեթն,
Երեք հարուր վաթսուն ու վից հայրապետն,
Նրանց բերանով օխնած կաս, հոգևոր տէր։

Ինքնակալ մինձ Կայսեր հայրապետ սուրբ իս,
Էջմիածին նստած կաթուղիկոս իս,
Էն կեանքէն դրախտէն դուս եկած լուս իս,
Արքայութեան փայ կաս, հոգևոր տէր,

Թիֆլիզու—Նարգիզն իմ, քու վուտի խուղն իմ,
Չիմ արժանի քիգի անգիտաւոր իմ,
Ես գամ Էջմիածին, աջըդ համբուրիմ,
Օխնընքեմէզ փայ տաս, հոգևոր տէր։

---

## Գ

### Մ Ո Ւ Խ Ա Մ Բ Ա Զ

Երթայ ու է՛լ յիտ չը գայ
Էս թաւուր զուլում քաղաքին,
Շատ ու շատ բիաբուռացիլ ին,
Չին դըրուստ կենում իրանց հախին,
Երկինք գետինք ժաժ է գալի,
Միղքն է աւելցի քաղաքին,
Լօթի—փօթի, հարամզադա,
Հարզաքար շատ կայ քաղաքին։

Թագաւուրի խիլքը գնաց,
Հալբաթ Աստծու բարկութին էր,
Սուրն ու սովը, մահն եկաւ,
Զարման հացի թանգութին էր,
Քաղքի տղայ շատ պակսեցաւ,
Դիփուն իրանց խելքեմէն էր,
Մեր մեղացէն կրակ էրիտ
Չինից բէմուրազ քաղաքին (1)։

---

1) Լուսանցքումը Գ. Հախվերդեանի ձեռքով մատիտով գրուած է հետեւեալը.

Մելիք, լաւ արիր ա՛յ,
Քաղաքը ռուսին տուիր,
Գնա՛, խէրը տես։

Յետոյ ռուսերէն աւելացրած է՝ ասաց գիժ Աղալօն Մելիք Դարչինին։

Քիչ ներքեւ լուսանցքումը գրուած է. սրանք իմ տեհած ռուսներիցը չեն։

Էգի գամը լաւ բան բանից
Ողորմելի Գեօրգի խանը,
Քաղաքը Ռուսին էրիտ,
Լաւ բարաթ շինից մըր բանը,
Աղպըրտէրանց ռուգըը կտրից,
Ձանց էրիտ հայն ու ափալը,
Ալէքսանդրէն թուրքացիլ է,
Բերում է զօշում քաղաքին։

Վրացիքը լաշըրացիլ են,
Էլ չէ կտրում նրանց թուրը,
Թաւըդնիրը սեւ-երես են,
Վունց որ մէ պղնձի մուրը,
Էնէնց էլ իլաջ չունին,
Գիտին դէվէր թափի Կուրը,
Վուղջը մըր մուխանաթ են,
Դառիլ են դուշման քաղաքին։

Թիֆլիզ—Նարգիզ ծնանեցայ,
Էս աշխարհիս բանն իմացայ,
Էն էղըլի մարդ վուչ ծնանի՝
Ինչ ես էղըլին տիրացայ,
Ում համա լաւ ուզեցի,
Աներադդ ջուղաբին տիրացայ,
Ինձ Աստուած բէխըրալ գըից,
Սաու՝ չարչարուխս քաղաքին ([1])։

---

1) Այս երգը շարադրել է 15 տարեկան հասակում, այժմ նա 61 տարեկան է (1849 ամի)։

Ծան. Գ. Հախվերդեանի։

## Դ.

### ՃԱՔԻ

Ինքդ մէ հախվէրմազ,
Ջանջալ մաշեննիկ,
Դուն իս Ցուդի դասէն,
Փասօյի տղա՛յ։

Տօ՛, վառվառ (*) սադայէ՛լ,
Հէսաբէն փախչող,
Գրփող, գչլող, ուտող Փասօյի տղա՛յ։

Աստուած քի անիծէ՛,
Դուն իսկի չըլլի՛ս,
Պատընքի պէտք ածիս՝
Ինչ ինձմէն խլիս,
Վուր թենը վուր գնաս՝
Ջախ ու բուրթ ըլլի՛ս,
Թօփ խփած ձեռի պէ՛ս, Փասօյի տղա՛յ։

Քրիստուս քի անիծէ՛,
Ծուտով փչանա՛ս,
Կուտըր նընգնի՛ս,
Հիտն ու հիտը խղճանա՛ս,
Չուրնաս, սիւնաս, ագռաւի պէս զղճանաս,
Քաղքի ղէնօ դառնաս, Փասօյի տղա՛յ։

Աստուած կտրէ քիզմէն ծիլն ու փայլին,
Վուղչ քիզ ին անիծում Վրացին ու Հային,
Ութ լիտր կորէկն, էդ իմ տաս շահին
Ուտում իս, չիս տալի, Փասօյի տղա՛յ։

Ինքդ սուտ քրիստոնիայ, անպիտան հայ,
Քու հոգին շինիլ իս սատանի փայ,
Դուն իս մօլլա, դաւրիշ, ախունդի թայ,
Տէս, ինչպէս գովիլ իմ, Փասօյի տղա՛յ։

Ով քի մօտ տուն գուքայ, սուտ սուտ կամանչիս,
Զաչանակ կու ղառնաս, շան պէս կու հաչիս,
Մէ գրօշի համա մարդու կու խաչիս,
Դիլանչի, Թալանչի, Փասօյի տղայ։

. . . . . . . .
. . . . . . . .
. . . . . . . .
. . . . . . . .

Գլխումդ հատիլ է, խիլք ինկի չունիս,
Գիշիր ցերեկ օշօշի պէս անքուն իս,
. . . . . . .
. . . . . . .

Ջանումդ նընդիլ է կրակն ու բուցը,
Միջքիդ շալկում իս աղրի քթուցը.
. . . . . . .
. . . . . . .

*Անպիտան կու խօսիս գէնօյի նման,*
*Փողոց դուս գուքաս ղէնօյի նման,*
*Պատկիրքդ շատ սիրուն, դուն իս աննման,*
*Սէւադումը ներկած, Փասօյի տղա՛յ։*

*Եարաբ, ի՞նչ գէլթ արի՝ էդ բան ինձ արիր,*
*Դատաստանդ կորաւ, ինձ նահախ արիր,*
*Թիֆլիզ—Նարդիկին բէդնամաղ արիր,*
*Տէհնինք ի՞նչ կու ճարիս, Փասօյի տղա՛յ։ (¹)*



¹) *Բաց թողած տողերն անգրելի հայհոյաբանութիւններ են։*

# ԹՈՒՐԻՆՋ

## Ա.

### ԴԻՒԱՆԻ

Անգաջ արէք ամենայն ժամ, լսէք աւետարանի,
Դաւիթ մարգարէն որ կանգնեց սաղմոսն շարականի,
Աստուած սիրող, անգաջ արէք, կէս գիշերին մահ կը գայ,
Որ Գաբրիէլ կը գայ, կառնի իր տուած ամանաթի։

Մեր երկնային Աստուածն եկաւ, քաշեց շատ տպաշխարանք,
Բևեռեցաւ վրայ խաչին, քաշեց շատ չարչարանք,
Աւագ հինգշաբթի օրը կանգնեց սուրբ պատարագ,
Մարմինն մեզ կերակուր շինեց, արիւնն բաժակ գինի։

Գաբրիէլ որ աւետիք տուաւ, եկաւ կուսի արգանդի,
Երեսուն տարի ման եկաւ, եկաւ սուրբ դատաստանի,
Մեր մեղաց որ մահացաւ, մտաւ սուրբ գերեզմանի,
Ամենայն մեղաւորի ողորմաս խեղճ նաչար Թուրինջի։

## Բ

Ընկերից մի քաշի, մի դատապարտի.
Աստծու ճանապարհին ջուղարն ինչ կը տաս,
Մի տարր, որ քաշ եմ, ես կու չէնանամ,
Որ մեղաւոր կըլնես, ջուղարն ինչ կը տաս։

Աստուած դատաւոր ա, ինքն ա միայն մաւնք,
Լուսեղէն աթոռ ա, սարքած միայն անքունձ,
Սադեմէն քարակ ա, կապած ա կարմունք,
Էնց կննայիս՝ նրա ջուղարն ինչ կը տաս։

Վա՜յ հոգի քաշողին, օրէնք քաշողին [1],
Երկնային թագաւոր Աստուած յիշողին,
Վա՜յ սահամէր—կնքաւորի ծօշողին,
Որ կասնի կրակը, ջուղարն ինչ կը տաս։

Թուրինց, ողորմի քեզ՝ էս բանն ասել ես,
Մեղաւորաց ձայնն հարար լսել ես,
Դժոխքի կրակն հարար տեսել ես,
Որ կը վառուես մէջին՝ ջուղարն ինչ կը տաս։

[1]) Հոգի, օրէնք քաշել՝ նշանակում է հայհոյել։

## Գ

### ՄՈՒԽԱՄԲԱԶ

Հերի՛ք է, մուրվաթ արա,
Նհախ տեղը մի՛ չարչարի,
Մէկ սահման արա,
Եա՛ր, քեզի ղուրբա՜ն։

Ո՛վ իմ սիրելի, մէկ մօտս արի՛,
Հար գամ քո ղուշը գալս իմացի՛,
Երկու աչքեմէս արիւն է գնում,
Գլխիս վայ տալով՝ լալս իմացի՛։

Մէկ խալւաթ օթախ, մէկ ես ու ես եմ,
Արի՛ դու ինձ մօտ, քեզ հետ մէկ խօսեմ,
Բացեմ դարդերս, անկաջ կալ, ասեմ,
Իմ քօռ անբաղդ իղբալս իմացի՛։

Սիրտիս դարդերն դուն չես իմանում,
Նհախ տեղն ինձ ինչ ես սպանում,
Աչքիդ տակովը չես մտիկ անում,
Անմռունչ բարով տալս իմացի՛։

*Էշխիդ կրակը սիրտումս վառ ա,*
*Լերդ ու ջիգեարս դառել է եարա,*
*Աստուած կը սիրես, ինձ մէկ ռահմ արա,*
*Խեղճ Թուրինջն եմ ես, հալս իմացի՛։*



# ԼԱՋԱԹ ՕՂԼԱՆ [1]

## ՄՈՒԽԱՄԲԱՋ

*Ինչ գուզէ վարդն չմչկի, դուն բաց արած ես ինձ ամա,*
*Համ Հնդստանու մաթահ ես, համ թանգ առած ես ինձ ամա,*
*Անգին քար, ալմաս ու լալ, մարգրիտ շարած ես ինձ ամա,*
*Եագութ, զմրուխտ ու մարջան, ծովէն ճարած ես ինձ ամա։*

*Պատկերքդ լուս է տալիս, հէնց գիտում իմ՝ օձի հուլ իս,*
*Անմահական հուտ իս տալի, դրախտէն կապած մէ թայգուլ իս.*
*Լեզուդ քաղցր կու կարդայ, նոր սարէն եկած բլբուլ իս,*
*Մէջլիսի չրաղդան իս, կշտիս վառած իս ինձ ամա։*

*Երանի քեզ պէս գողալին, համաշա մուշտարիդ չաղ է,*
*Ծոցիդ միջում բաց էլած սուսան, սմբուլ, բաղչա, բաղ է,*
*Ճերմակ երեսիդ խալը, աչքերդ փիալա սաղ է,*
*Վարդ մանուշակ առջևս դուն միշտ փռած իս ինձ ամա։*

*Խարար տանին շահի մօտ, գայ սէհր անէ զուքս ու սազիդ,*
*Հազիլ իս բէհուշտ ծիրանի, սաղ է գալիս թիլ փարվազիդ,*
*Բոլորն ծաղկով շարիլ իս, լուլա հուսած դաստա մազիդ,*
*Պատկերքդ ղալամքար քաշած՝ ոսկէզառած իս ինձ ամա։*

---

[1] *Թիֆլիսեցի էր Լազաթ օղլանը, Տափի թաղեցի մկրտան էր Ծրինծղարօյումը. իւր հարսանիքից անմիջապէս յետոյ՝ խեղդուեց Կուր գետումը, 1843 թուին, մօտ 25 տարեկան հասակում։*

*Ծան. Գ. Հախվերդեանի։*

*Քանի գուզէ ծիրանամ, էլի կու գովիմ մէ քանի,*
*Անմահական հուտ իս տալի կարմիր վարդիրի խէյվանի,*
*Գցեցիր էշխիդ կրակը սպանում իս Լազաթ օղլանի,*
*Իմ մեռնելու օրը քիզ գուզիմ՝ վրէս քար ածիս ինձ ամա։*



# ՂԱՐԻԲ ՕՂԼԱՆ

Նստել ես որպէս թագաւոր աթոռքին խաղաղ, աչքիլո՛յս,
Բարկութեամբ մտիկ ես անում, ձեռքումդ մանգաղ, աչքիլո՛յս,
Ես անպարտ եմ, չես քննում, անում ես նասաղ, աչքիլո՛յս,
Թշնամու սրտով եմ դառել, սպանում ես նահախ, աչքիլո՛յս,
Թող ես մեռնեմ, քո ցաւն առնեմ, թաք դու լինիս սաղ, աչքիլո՛յս։

Էշխեմէգ ջունուն եմ դառի՝ վիզս ծռած նաչարի պէս,
Քո դռանը վէր կընկնեմ՝ փողով առած նոքարի պէս,
Կամիս՝ պահիր, կամիս՝ խաչիր, էրած խորված եսիրի պէս,
Օրն մէկ վրէս անց կենաս, մազերդ շաղ շաղ, աչքիլո՛յս։

Իմ ջառահ հէքիմն դուն ես, իմ ցաւս ոչ ով չ'իմանայ,
Ձատ դատ եմ կանչում մաշուելով, ուրիշ օքմին չի դիմանայ,
Մհլամ ու ճարս քեզ մօտ է, առանց քեզի չեմ լաւանալ,
Տեսոյդ կարօտ մի սպանիր, ես քեզի մատաղ, աչքիլո՛յս։

Փիքր արա մէ քեզ ու քեզի, գլուստ աչքով մտիկ արա,
Այլոցն ականջ մի դնի, եկ ուղիղ դատաստան արա,
Թէ իմ ցաւս քեզմէն ըլի, ողորմիր ինձ, դու ճար արա,
Թէ կու սպանես, հազիր արա թարութ ու դագաղ, աչքիլո՛յս։

*Ամէն ծիտ բլբուլ չի լինի, ամէն ծաղիկ վարդ չի դառնայ,*
*Ընտրող պէտք է, որ լաւ ջոկէ, միշտ լաւն ու վատն իմանայ,*
*Վա՛յ է բարակ մանողին, չուն՝ հաստ ու բարակ մէ գին ա,*
*Ղարիբ օղլանն երբ միտդ գայ, կու կանչես ա՛խ վա՛խ, աչքիլո՛յս։*



# ՅԱՐՈՒԹԻՒՆ ԲԷԳՈՒՄ

*Բօյդ սալբու չինար է, ծոցիդ գուլիշան ունիս,*
*Էրնէկ կուտամ քու եարին, քեզ պէս նովջուան ունի,*
*Նոր բհարեմէն ծնած, մայիսեմէն թաց էլած,*
*Երկնային շուղն երեսիդ վարդի նման բաց էլած,*
*Բլբուլը քու հասրաթ է երկու աչքով թաց էլած,*
*Էս քու տուած դարդերուն չարա անես, ռահմ անես,*
*Սրտով սիրածս դու ես, դիփուն սուլթան ու խան ես,*
*Աչքերդ ոսկէ փինջան, ունքերդ ղալամ ունես,*
*Ճերմակ երեսիդ մէջը ոսկէ զառ նշան ունես։*

*Մէ խալ ունես, լուսնիակլի նման է,*
*Փռանգի նախշքարը գովքդ կանէ,*
*Քու սիրողը քեզ չը տեսնէ, ինչ անէ,*
*Ձատ մարդի էշխի մէջը սպանում ես,*
*Էգ քու ձեռքով դուն իմ հոգին հանում ես,*
*Ինչ որ անես՝ հալալ է, թէկուզ ձեռքով սպանես,*
*Ջաւահիրի կտուրտանք ալմասեմէն թլաշած ես,*
*Լալ, գոհար ու մարջան ես,*
*Յարութիւնը-Բէգումը քեզ պէս նովջվան ունի։*



# ՅՈՎՍԷՓ

## Ա.

*Այբ՝ առաջ Արարիչն առեղծեց լոյսն խաւարեմէն,*
*Բեն՝ բղխեցան սրտէն խորհուրդ, հաստատուեց ուղիղ բանեմէն,*
*Գիմ՝ գոչեաց տիւ և գիշեր, թուեց սկիզբն համարեմէն,*
*Դա՝ դաս և դաս հրեշտակ առեղծեց լոյս զուարթ անճառեմէն,*
*Եչ՝ երանեալ ձայն բղխէր Աստծոյ սուրբ տաճարեմէն։*

*Զա՝ զօրութիւնն Աստուծոյ մաս և մաս ջուր բաժանեց,*
*Է՝ էրևցաւ ցամաքն, հուր, օդը միջէն հանեց,*
*Ըթ՝ ընծայեց ամենուն մի տերև աշխարհքի զօրեղ բանից, (*)*
*Թո՝ թափօրեց չորս կողմանը, ամենն մի մի նշանից,*
*Ժէ՝ ժամ և ժամանակն բոլորն կարգեց դարեմէն։*

*Ինի՝ ինչպէս, տես, հաստատեց երկինքն անսիւն անշարժական,*
*Լիւն՝ լուսին արեգակն տիւ գիշերուց իշխանական,*
*Խէ՝ խոնարհութեամբ ծառայեն, նայելու են քաղցր ական,*
*Ծա՝ ծիածանն, ծովեզէնն ցօղարեր են անձրևական,*
*Կեն՝ կապուտակ երկնից նշան եցոյց Աստուած կամարեմէն։*

*Հո՝ հոգին սուրբ հրամայեց՝ ելան ջրէն շունչ կենդանի,*
*Ձա՝ ձևօքն ոչ գործեաց, «Եղեն», եղեն տեսակ քանի,*
*Ղատ՝ գետական գիրքն է վկայ, որ ընթեռնու կու նշանի,*

Ճէ՝ ճշմարիտ խորհուրդ առան Երրորդութիւն միով բանի,
Մեն՝ մարդ ստեղծեց իւր պատկերէն, պատուէր եւ կենաց
ծառեմէն։

Յի՝ յիմունքն երկնի երկրի հաստատութեան օրն վեցին,
Նու՝ նշանեց, հանգեաւ Աստուած, այն օրն Աստծոյ նշանեցին,
Շա՝ շուտով սխալեցան Եւա Ադամ, անճառ դրախտը բաց ընկեցին,
Ո՝ ոչ գտին հանգերձ մարմնոյ, տերև թզենոյ կարեցին,
Չա՝ չարն դարձեալ սխալեց, գիր առաւ ձեռաց քարեմէն։

Պէ՝ պիտանի չէին դրախտին Եւա Ադամ, որ մերկացան,
Ջէ՝ ջանացին բժիշկ գտանել և ոչ գտին, շատ ողբացան,
Ռա՝ ռամիկ չէին, իմաստունք առաջինն էին, ռամկացան,
Սէ՝ սպասաւոր եղեն սատանին, ազգն Ադամայ անթիւացան,
Վև՝ վայ կոչէին տիւ և գիշեր չարաչար գիւահարեմէն։

Տիւն՝ տանջանքս բազում կրեցին ազգն Ադամայ ի ձեռն չարին,
Րէ՝ րոպէիցն սկսեալ՝ մինչև լրացաւ ժամ և տարին,
Ցո՝ ցաւագին նահապետքը, մարգարէքը խնդիրք արին,
Հիւն՝ հրեշտակ սուրբ աւետիս առաքեց Ամենաբարին,
Փիւր՝ փութով ընտրեց ընծայ երկնից Ամենաբարեմէն։

Քէ՝ քննութիւնն արարածոց արար սկիզբըն ամեն,
Եւ՝ Եւային փոխանակ ծնաւ սուրբ կոյս Մարիամէն,
Օ՝ օրէնքն քրիստոնէից նորոգեց իւր սուրբ կամէն,
Ֆէ՝ ֆէննային ծաղկի նման նախատեցաւ ի չար ժամէն,
Այր՝ Աստուածն էր ազատեց, Յովսէփն ասաց, խաւարեմէն։

---

## Բ

### ՄՈՒԽԱՄԲԱԶ

*Անկաջ արէք, սիրելիք, սիրեկանս ինչ բան է արել,*
*Ուշք ու միտքս բոլորովին գլխէս հիմնահան է արել,*
*Զունիմ հանդիստ գիշեր ցերեկ, յատուկ գիւական է արել,*
*Մոլորեցրել ա ճանապարհիցս, ինձ կորստական է արել,*
*Ով գտնէ ինձ՝ չը փչանամ, անումին նշան է արել։*

*Սէրի սերմը սրտիս մէջը հուր կրակի ծառ եմ տեսնում,*
*Տերևները ջանիս մէջը բողբոջւում ա, վառ եմ տեսնում,*
*Հալւում եմ մոմի նման, հանգցնող անճար եմ տեսնում,*
*Մութն ա աշխարհն ինձ համար, ոչ ձմեռ ամառ եմ տեսնում,*
*Քցել է բանտի մէջն, արհեստս խափան է արել։*

*Ինչ բժիշկ կան աշխարհքումն՝ դժուար սէրի դեղն իմանան,*
*Կամ ինչ տեղից կը գոյանայ, որդանից կը գայ, տեղն իմանան,*
*Արարած աշխարհին կասեմ շուրջ ու բոլոր գեղն իմանան,*
*Անթիւ վարպետ ոչ կարացին, թէ սէրի սպեղն իմանան,*
*Սողոմոնն էլ սէրով կորաւ, ինչ սերմնացան է արել։*

*Շատ իմաստունք յիմարացան, սէրից կորան աշխարհիցն,*
*Շատն ընկան ծովի մէջը, տէրից կորան աշխարհիցն,*
*Շատն ազգից, ազգականից, հէրից կորան աշխարհիցն,*

Ջատն ազգից, ազգականից, հէրից կորան աշխարհիցն,
Սէրն ա կայսերաց կայսեր, Ստեղծողն իշխան է արել։

Ոնչ լաւ եմ, ոնչ հիւանդ եմ, էլ կեանք ուր եմ ուզում,
Լերդ ու թոքս էրւում է, սիրեկանից ջուր եմ ուզում,
Խռովել ա, ջուր չէ տալիս, իրան դատաւոր եմ ուզում,
Թէ մեղ ունիմ, շուտ սրպանի, մի երկաթէ սուր եմ ուզում,
Ինչ չարչարեց՝ հերիք անի, տանջանքս բաւական է արել։

Մնացել եմ տարեկուսած, սէրս որ կրակէն էլաւ,
Միտք եմ անում՝ իմ աստղիցն է, գիտեմ՝ Երեւակէն էլաւ,
Ամեն ազգի սէրը առեղն եօթը մոլորակէն էլաւ,
Չորս տարերքիցն գոյացաւ, մէկ նիւթն արեգակէն էլաւ,
Աստղագէտքն են քննել, ռամը Սողոմոնն է արել։

Յովսէփն ասաց՝ երկու սէր կայ, մարդ միտք անէ՝ ո՞րն է գոված,
Մարմնոյ սէրից պատիժ կառնէ, սէրը հոգևորն է գոված,
Սիրով մեր հոգիքն ազատեց, երկնից թագաւորն է գոված,
Ով սէր ունի աստուածային, նա վերջի աւուրն է գոված,
Աստուած ամէն բանի համար ուղիղ դատաստան է արել։

## Գ.

*(Ի գովեստ Ներսէսի, 'ի 1845 ամի).*

Արժանի է՝ քեզ գովեմք, Ներսէս կաթողիկոս պատուական,
Այժմս ոչ գտանի քեզ պէս ողջ Հայաստան,
Ի վերայէն ես իմաստուն, բազում մարդ քեզ երանի տան,
Ամենայն խեղճ և հարուստք քո արհեստին զարմացած կան,
Աստղ ես լուսապայծառ առաւօտուայ՝ նշուլառու արեգական։

Հայրապետ ես երջանիկ, կարգդ Մովսէս և գովելի,
Հրամանդ աւետարանին կատարող ես, միտքդ է լի,
Տան ու վեց ամ բանտի էիր՝ նման գրոյն Դանիէլի,
Աւետիս եղեր մեր ազգին՝ նման հրեշտակ Գաբրիէլի,
Գժուար ճարուելու ծաղիկ ես, ծաղիկ ֆիննա թանգական։

Զկնի մեծն Ներսեսայ չէ ծնուած քեզ պէս իմաստուն,
Աստւել ազգասէր ես, ամեն տեղ ունիս վարժատուն,
Օրէնք քրիստոնէից ուսուցանող ամենեցուն,
Սիրտդ լայն ծովի նման, միջին բան կայ անթիւ, անհուն,
Այսօր նոր լուսաւորիչ Հայոց ազգիս ես լուսական։

Թէև վիճակն աստուածային էր, ընտրուեցար բովանդակէն,
Բարի ասողի ես ծնեալ եօթն ատեղ մոլորակէն,
Ամեն գրոց տեղեակ ես աստուածային սուրբ կտակէն,
Ամենայն սուրբ պատարագին քեզ պէտք է, որ յիշատակեն,
Հոգւով պատիւ յերկնից ունիս, մարմնով պատիւ կայսերական։

Արժանանաս սուրբ Աթոռին, երբ որ նստես Էջմիածին,
Օրհնես մեռոն հրաշական, բաժանես մեր Հայոց ազգին,
Հայրապետաց աղերսներ աղերսես սուրբ պատարագին,
Սրբոց մասունք կը օծանես զամենայն ինչ, որ կայ հին,
Կ'եռանայ առանց կրակ՝ աստուածային, հրաշական։

Շնորհակալ եմք քեզանից, աշխատող ես ազգին համար,
Արթուն ես միշտ հանապազ, դէմքդ է պատել լուսէն կամար,
Բժիշկ սպեղանի ես դու, վէրք եմ մեղօք, արա ինձ ճար,
Ոտանաւոր շարադրեցի՝ Թուով ուղիղ եռսուն համար,
Որբ Յովսէփի խնդիրքն այս է՝ որբ՚ին հայք, լեր օգնական։

---

## Դ

### ԲԱՅԻԹԱԻՈԻՐ

Ո՛վ սիրելի, աննման գեղեցիկ պատկեր ունես,
Նման ես սրեգական, ողջ աշխարհին էրում ես,
Մազերդ ամպհովանի, վզիդ օլորներ ունես,

Օլորուել ա, շարուել ա՝
Ինչ ձեռօք նկարուել ա,
Աշխարհըն զարմանում են,
Անտես տեղից ճարուել ա.
Անտես տեղից է բանակ,
Ի՞նչ բանի տանք նմանակ,
Եօթն աստեղաց ճրագ ես,
Դու ես ոսկի աշտանակ։
Աշտանակ միշտ վառ ես դուն,
Աղբիւր անսպառ ես դուն,
Քեզի նայող շատ կը գան,
Անուշահոտ ծառ ես դուն։
Անուշ տերևներ ունես,
Ծաղիկ գոյներ ունես,
Տարին չորս եղանակ ա,
Շատ եղանակներ ունես։

Ունքերդ կամարաձև, շուղքն ա ճակտիդ սնարին,
Աչքերդ վառ կանթեղ ա, վառւում ա անհնարին,
Ձայնդ համեմատենք՝ նման Դաւթի քնարին։

Ձայնդ քնար ասի,
Լեզուդ սիրահար ասի,
Ակռէքներդ սպիտակ՝
Մարգարտի պէս շար ասի.
Մարգարտի պէս շարած ա,
Դէմքդ ողջ զարդարած ա,
Ով պատկերքիդ նայել ա,
Ուշք ու միտքը տարած ա.
Ուշք ու մտքիցն ա էլած,
Քեզ պէս դժուար ա էլած,
Վիզդ ճերմակ սարդիոն,
Աստղի նման փայլած.
Աստղի պէս կը փայլէ,
Ժամանակ կը վայելէ,
Քեզ ո՞վ կարնայ մերձենալ,
Շատ պահապաններ ունես.

Շատ վարպետ քո պատկերքը կը տեսնէ, կը նկարէ,
Կը նայէ, կը հիանայ, սիրտը կը մխիթարէ,
Թևերդ սիրամարգ, ծծերդ ծովաքար է.

Ինչ մարդ հանէ ծովէն քեզ,
Տապանիցը նաւէն քեզ,
Ցովսէփ գեղեցիկին պէս,
Այսօր կը զովեն քեզ.
Գոված ակն ես լուս եկած,
Մաքուր ծնուած կուս եկած,
Զուրջ բոլոր կամարով՝
Լուսնիակ ես դուս եկած.
Լուսատու լուսնիակ ես,
Լրացած բոլորակ ես,

Քեզ ով նայէ՝ կայրուի,
Ոսկեվառած կրակ ես։
Ոսկի խնձոր մեզ համար,
Ծաղկել ես նոր մեզ համար,
Քու հոտով չենք կշտանում՝
Հոտդ անուշներ ունես։

Ինչքան զովեն աշխարհքն, մի՞թէ քեզ բաւական է,
Խելօք իմաստուն ես դուն, բաւդ արքայական է,
Բնութիւնդ ունիս աղաւնւոյ, միտքդ արեգական է։

Միտքդ հնոց դարէն է,
Խօսիլդ անգին քարէն է,
Խ(հ)ողեղէն մարդ չէ տեսած՝
Ազգդ էն աշխարհէն է։
Աշխարհք աշխարհք ման եկած,
Չրկայ քեզ նման եկած,
Արեւել արեւմտից՝
Դու ես նոր նշան եկած։
Նոր նշան ինչ տեղէն ես,
Մէկ տեսակ հրեղէն ես,
Երկնքի հրեշտակ ես,
Միթէ դուն խ(հ)ողեղէն ես։
Խ(հ)ողեղէն մարդ քեզ համար
Ճամն են ծառայ քեզ համար,
Յովսէփն ասաց քու զովքն,
Ամեն մարդոյ սէր ունես։

# ՆԱԼԲԱՆԴ ՕՂԼԻ

*Բարի սհաթի ռաստ եկանք մէկս մէկու, եար սիրեկա՛ն,*
*Սալամ տուիր ինձ դուր եկաւ, լեզուդ է ճարտար, սիրեկա՛ն,*
*Խնդրեմ, որ Աստուած պահէ քեզ էլ ինձ համար, սիրեկա՛ն,*
*Մի՛ մոռանար, ես էլ չունիմ քեզմէն աւել ճար, սիրեկա՛ն։*

*Ճար չունիմ, ճարս դուն ես,*
*Իմ սիրեկան եարս դուն ես,*
*Եար եմ ասում քեզ պատուական,*
*Մէ վախտ քէփ քաշենք, սիրեկա՛ն,*
*Հարուր տարին մէկ օրական,*
*Էս աշխարհքն անցւորական.*
*Աշխարհս անցաւոր է,*
*Մեծի ասած՝ փոքրի լսած,*
*Ինձ մի՛ թողուլ տարեկուսած,*
*Ինձ էլ մօտդ տա՛ր, սիրեկա՛ն։*

*Դուն ինքդ փարշեանգ ես, քեզ ծառայ է շատ անասուն,*
*Քու պայծառ գեղեցկութիւնդ...*
*Թէ Յովսէփ գեղեցկութիւնն աւելի չես, ոչ թէ ունիս դուն,*
*Մտնում ես՝ ձմեռնանում է, դուս գալիս բացւում ես գարուն* (1)։

*Գարունին կուգայ ծաղկազարդն,*
*Մայիսին բաց կուլի վարդն,*

---

1) *Այս տունը թերի է։*

Քեզ պահապան սուրբ Գեղարդն,
Նորա մօտ դիր ուխտ ու շաբթին։
Ուխտ արա հաւատով, յուսով,
Դուն կշտանաս անճառ լուսով,
Աստուած քեզ տայ լիքը թասով,
　　Չունիս բարեբար, սիրեկան։

Չեմ իմանում՝ ինչպէս անեմ, դու որ էդքան նազ ես անում,
Զուգւում ես քու հաղուստով, մէկս մէկու սազ ես անում,
Էշխից կրակն ջանս է մաշում, դուն ուրախ փարվազ ես անում,
Փարվազ արա, փարշեանգ ես, փայլում ես ամեն ռանգի,
Ում ղամաթն ես՝ նա կու ճանգի, սուրաթ ես նշխած փռանգի։

Ման եկայ Փռանգստան,
Անց կացայ Հնդստան,
Տեղ չը թողի Արաբստան,
Տեսայ Ղզլբաշ, Քիւրդիստան,
Ղարաբաղ, Գանջա, Դաղստան,
Նոր դուս եկայ Վրաստան,
Քեզի թամաշա արի,
Էշխից կարգը ինձ թուլ արի(*),
Իմ սիրտս մալ ու մուլ արի,
　　Չունիս բարեբար, սիրեկան։

Վարդի նման բաց ես էլի, նոր բհար ամառն ես դուն,
Ամառ ձմեռ մէջ դրախտին խնկաբերի ծառն ես դուն,
Յայտնապէս իմանում եմ, թէ արէլեան գառն ես դուն,
Սուրբ Յարութեան կանթեղի պէս գիշեր ցերեկ վառւում ես դուն։

Դուն վառւում ես, շամչրաղ ես,
Լաջվարդով նշխած օթախ ես,

Զայիր, չիման, բաղչա բաղ ես,
Քանի դու աշխարհքիս սաղ ես։
Թաք դուն սաղ ըլիս համեշա,
Քու ձայնդ է չորս քօշա,
Աշխարհք աշխարհք գան թամաշա,
Քանի սուլթան, շահ ու փաշա։
Դուն նստել ես փաշի նման,
Երբ կանգնում ես ռաշի նման,
    Զունիս բարեբար, սիրեկան։

Քու տեսակն ոչ ով չըկայ, թէ ենգի դունեմէն կուգայ,
Ենգի դունիա չի ճարուի, Խաթայ-Խութայեմէն կուգայ,
Խաթայ-Խութայի ո՞վ կուտայ, բալխի (*) Բուխարեմէն կուգայ։

Բալխի Բուխարի շատն ես պահի, (*)
Ենգի դունիա, շահլար շահի,
Ճատ սէյր արի Խաթայի,
Եկայ օ թային,
Ես էլ չըտեսայ քո թային,
Դու թայ չունես, աննման ես,
Տեմնողի հոգին կու քաղես.
Խօսացնես՝ դիւանս անես,
Անդատաստան չապանես՝
Դատաստանով բռնէ քու բանն,
Աստուած պահէ քու սաղ ջանն,
Նալբանդ օղլին շինել է գովասանքն,
    Չըկայ քեզ նման, սիրեկան։



# ՇԱՄՉԻ ՄԷԼՔՕ

## ՄՈՒԽԱՄԲԱԶ

Աւալի բաշտան քեզ գովեմ, խմում բաղ ու բաղչադ, Թէլէթ(1),
Սէյրանգահդ գովելի, անուշ է բուլաղդ, Թէլէթ,
Մեռնիմ քու ողորմութիւնին, աշխարհքս չէկայ քու թայն,
Դիփունանքս քեզ կու ատանք՝ որն Վրացի, Թուրք ու Հայն,
Որը խունկն ու մում կու բերի, որն արասին ու շահին,
Կարող ես դու, կու փրկիս չոլախին ու կաղին, Թէլէթ։

Քու դուռն համբուրելու շատ համքար ու ամնաֆ կուգայ,
Մեռնիմ քու ողորմութիւնին, շատ աղաւնի ու գառ-կուգայ,
Որը տաւար կու բերէ, շատ ոչխար ու՝ գառ կուգայ,
Թէ որ դու հաճոյ կուլիս, կու կտրին մատաղն, Թէլէթ։

Քաղքի տղէրքն մօտ կուլին, գիփ միանա թաղով կուգան,
Ոանգէ ռանգ ձիանէրով ոսկէ նարաղնածով կուգան,
Մոնթերն քաղցր ձէնով շարական ու տաղով կուգան,
Համբարձումի չորեքշաբթին կու կապենք իրղարն, Թէլէթ։

Ասում են՝ սազով կօսիմ, ես էս խաղն նազով կօսիմ,
Ջորս խանա թարիփլամէն էսպէս մուխամբազով կօսիմ,
Թիֆլիզու Ճամչի Մէլքօն համաշա սօյրաթով կօսիմ (2)։

---

1) Թէլէթը Թիֆլիսի մօտ մի գիւղ է, ուր է սուրբ Գէորգի յայտնի ուխտատեղին։

2) Վերջընթեր տողը պակասում է։

# ՉԱԽՄԱԽՉԻ ԵԱՂՈՒԲ

## *Թ Է Ջ Լ Ի Ս*

*Թէ Աստուած կու սիրիս, մէ անգաջ արա՛,*
*Մնա՛, ի՛նչ իմ ասում, բալի ճար իս դուն,*
*Գիշիրը քուն չունիմ, ցերեկը ղարար,*
*Սրտումս մնացած դարդ ու սար իս դուն։*

*Պատկիրքդ շատ սիրուն, ունքիրդ թուխ, եա՛ր,*
*Դօստը զոռի բա՛ն չէ, պիտի կամով, եա՛ր,*
*Էնանք բաղը սէյիր համդաշնիրով, եա՛ր.*
*Գուքաս դամաղը չաղ, թէ խումար իս դուն։*

*Ծուցդ բաղչա բաղ է, կայ եասամանի,*
*Գուզիմ, թէ հուտ կալնիմ, խիլքս կու տանի,*
*Ունքիրդ Հնդու է, խալդ Եամանի,*
*Թամամ հիտ աշխարիս բարեբար իս դուն։*

*Թէ որ լայեղ կոնիս, իմ տանու հուր իս,*
*Մէ քանց քի նազանի կայ, դուն նրա քուր իս,*
*Կշտէս մի՛ հիռանա, Աստուած կու սիրի՛ս,*
*Հէնց գիտիմ՝ ջաւահիր անգին քար իս դուն։*

*Չախմախչի Ծաղուբն իմ, խօսքերս ասիմ քեզ,*
*Էշխեմէդ հիւընդացայ, արի՛, հալս տե՛ս,*
*Իմ մեռնելու օրս մօտս գուզիմ քեզ,*
*Պատանքս ձեւած է՝ յալով կարիս դուն։*



# ՋԱՀԷԼ ՕՂԼԱՆ

## Ա.

### ՄՈՒԽԱՄԲԱՋ

*Բալասանի ծաղիկ, վրէդ մանանայ ունիս,*
*Մէջքդ բարակ շիմշատ՝ շատ գանանայ ունիս,*
*Բէնէդ Մասիսի սար, քիզ մազանայ ունիս,*
*Հուսդ մարդ կու մայիլէ, լաւ ըէհանայ ունիս,*
*Ես քիզի սիրեցի, ինչ մահանայ ունիս,*
*Աշխարհի բարիբար խալաթ գանայ ունիս,*
*Ինձ պէս ծառայ դուանդ բանդիվանայ ունիս։*

*Աշխարհիս գօզալ իս, գրում գրուած իս,*
*Կարմիր վարդի գոյնով ծաղկնիրով փռուած իս,*
*Դօնլուղ, դիբա, զարբար հաշիներով կարուած իս,*
*Նազլու սօնա դիլբար, մարգարիտով շարուած իս,*
*Գլխից ինչկլի վուտդ թամամ զարդարուած իս,*
*Ձխշխկալի ձէնդ ինչ շաւանա (*) ունիս։*

*Թոհմաթով մտիկ տուար, տարար դիտաւուրս (*),*
*Լիզուս պապանձեցրիր, ցամաքեցրար աղբիւրս,*
*Աչքիս արտասունք անցկացրար քարումս,*
*Լաւութիւնդ կու մնայ էս փուչ աշխարհումս,*
*Ճահմար իլանի պէս դիպար ջիգարումս,*
*Ունքդ սաղ սաղաղ, ինչ քամանայ ունիս։*

Քու էշխէն ջունուն իմ, մոլորեալ բանդ իմ,
Դուն ինչ գունահ ունիս, ես տկար հիւանդ իմ,
Ձեռիս հարաքաթ չըկայ, թէ իմ կեանքս քանդիմ,
Քանի վուր սաղ կուլիմ, էլի քիզ փէյվանդ իմ,
Թաք քու ձեռի մէջն ես իմ հոգիս աւանդիմ,
Բոլորքդ գօզալնիր նովչւան ունիս։

Անողորմած քաղցր իս, կանանչ միրգըեղէն իս,
Խմելով չիմ կշտանում, անուշ ջրեղէն իս,
Իսան իս կենդանի, մինթէ հուրեղէն իս,
Ջահէլ օղլանն ասաւ՝ երկնից հրեղէն իս,
Հրեշտակապետի պէս անչափ զօրեղէն իս,
Էշխիդ կրակը, գալում, ով դիմանայ՝ ունիս։

---

[1]) Ջահէլ օղլանը Մոզդոքում բազազ էր, ինքը Թիֆլիսի ծնունդ էր. խարազ (կօշկակար) Նստատէ Դրեկիլօյի տղան էր։
Տան. Գ. Հախվերդեանի։

## Բ

### Մ Ո Ւ Խ Ա Մ Բ Ա Զ

Եարեմէն, էս եարեմէն, գիլըարեմէն, սարղարեմէն,
Տէր, քեզանից կու խնդրեմ, դուն պահիս եարիս չարեմէն,
Մազերդ դաստա դաստա շարել իս մուշկ ամբարեմէն,
Գլուխդ կողպած զուլֆի է, զարդանդ մինա քարեմէն,
Ղօշղաբաղդ հալիլա է, ունքիր ունիս կամարեմէն,
Թերթերունքդ սիւ սաթ է, աչքիրդ անգին քարեմէն,
Քինթդ ածած մումի պէս քաշած է նախշքարեմէն,
Թշիրդ ալ վարդի նման քաշած է նախշքարեմէն։

Պռօշնիրը ղրմզի պէս, ատամնիրը սադափ արած,
Տեսնողն մայիլ կու մնայ, եարար թէ ինչպէս է շարած,
Լիզուն է բլբուլի պէս՝ կարմիր վարդին չափարած,
Բղի տակի ղաբարը դաստա դաստա ունէ արած,
Ուսիրքը սուրայի է դոշվարը ղալթ ու ղալթ արած,
Ծծիրն ղօշա ղօշա, պտուկնիրն զոհարեմէն։

Էշխով ինձ խիղտում է, բերանս ցամաք է անում,
Մատնիրն լուլա օսկի, ղնգնիրն մահանդ է անում,
Արմունկով զօշիս խփաւ, ինդացի՝ հանաք է անում,
Մէջքն էլ ինչպէս գովիմ, քօլ աշխարհքիս փաք է անում,



Կանէրը բարձրացնում է, խելիմ — տեղ շատը է անում,
Ղօլթուղի տակն է պահում, բոյ[redacted] է սարքում ծառանմէն:

Լաշն էնպէս նուրման է, սիպտակ ձիւ պէս քուրա քուրա.
Ծնկները խնձուրի պէս փռանները է (կտուրները է) բուրա բուրա.
Փաշէքն խիրմա (՚) էրծաթ, զարդարած է ինչպէս կուրա,
Կրնկները սուրայի է, կունիրն սնէ թօփի զուլա,
Պըճիզն կապած կօնա, միտնները թայիզուլ ա.
Հիմի թայլն շուր է, հաղնում, բէզար է զարդար խտանմէն:

Գունց Փրանգստան զուռ զուրայ, վունց հաւան Չինումաչին է,
Դօշին ծաղկներ է շարի, հիլ ու միխակ զարիչին է,
Իրէք հարուր անգամ է, մէկը մի աշխարհքի գին է,
Էս զովքն սատարա արէք, մէկ զամ կարին հնուց հին է,
Լաւն էն է, Ջահիլ օղլան, բանըդ Աստուած շինէ,
Մարդ ձեռն ինչպէս քաշէ էնպէս նաշխուն նիգարնմէն:

---

## Գ.

### Ղ Ա Ֆ Ի Ա (1)

Եար է սիրուն, շար է սիրուն, քար է սիրուն, վառ է սիրուն,
Իմ ջանս քո ձեռնեմէն թամամ դարբէզար է սիրուն,
Դաստա մազ է, դօշիդ սազ է, սալթ մուշկ ու ամբար է, սիրուն,
Աչքս մնաց, խիլքս գնաց, բօյըդ սալբու ծառ է սիրուն,
Սիգալ է, (°), անգլին լալ է. երեսդ պայծառ է սիրուն,
Համ թայգուլ իս, համ բլբուլ իս, էդ լիգուդ բարբառ է սիրուն,
Ինչ վուր կոսիս, հիտս խօսիս, ինձի դիզ ու ճար է սիրուն։

Բաղչա ու բաղ, գնանք ղոնաղ, ման իս գալի սէյիր անում,
Գլուխս փէշքաշ, կուլիմ սուտաշ, թէ սէրի հիտ սէր իս անում,
Մունաթ կանիմ, բաս ինչ կանիմ, էդ ղաղարն ինձ հերիք անում,
Խիլքս իս տանում, ջանս իս հանում, մարդու միղաց տէր իս անում,
Իմդատ արա՛, կուլիմ ծառայ, ջանս խիստ տկար է սիրուն։

Աչքս է լալի, ման իմ գալի, ձէն իմ տալի բայաթի պէս,
Ջանս է մաշած, բարակ քաշած, չարխով օլած խայաթի պէս,
Համ ջէյրան իս, համ սէյրան իս, ովչի իմ սայադի պէս,
Համ շիրին իս, շատ սիրուն իս, ջունուն իմ Ֆահրադի պէս,
Բաս ինչ անիմ, պէտք է բանիմ, քլունգով կտրիմ սար է սիրուն։

---

1) Անշուշտ Գ. Հախվերդեանը ունեցել է այս երգի հեղինակի անունը կրող օրինակը, որի հիման վրայ յատկացրել է Ջահէլ օղլանին։

*Ջահէլ օղլանին մի՛ քար ու քանդ անի,*
*Գուզիս՝ էն խաղն ասիմ, վուտն բանդ անի,*
*Քաշէ՛ էդ քամանչէն, շատ մի՛ դարդ անի,*
*Վուրն ուր իշխաննիր ին, մինձ ջուքամ ունին։*

— — —

## Ն։

### ՄՈՒԽԱՄԲԱՋ

Մէ փուքր անգաջ արէք, եարի ձեռից գանգատ ունիմ,
Չէլաւ՝ չըռեսայ, մոխկ տալի ձեռից գանգատ ունիմ,
Միջքի վրայ սազ է գալի, շալի ձեռից գանգատ ունիմ,
Երեսին երկու սեւ խալի ձեռից գանգատ ունիմ,
Դովրանս չէ բանում, իղբլի ձեռից գանգատ ունիմ,
Ընդդէմ խօսքով պատասխանի տալի ձեռից գանգատ ունիմ,
Էշխս ու ղուաէն մաշիլ է, հալի ձեռից գանգատ ունիմ։

Թաք հարգիղ չէի լսի իմ օրումս նրա անումն,
Էրուեկով ման իմ գալի, կրակն է գցի իմ ջանումն,
Էնպէս անգաջս ննգաւ, ասիլ էր Նազլու խանումն,
Մէ զամ հիտն կու խօսիմ, գայ միր չափալի եանումն,
Էնդաց էլ տեսնիլ չէլաւ, չալուի ձեռից գանգատ ունիմ։

Աչքեմէս չէ հեռանում նրա սիրուն բօյ բուսաթը,
Ասիլ էր՝ փախենում իմ, կու լսէ վուղջ ջամահաթը,
Արիլ է ինձ գարրէղար էն բերած գայ է, թէ ղամաթը (*),
Ասիլ էր՝ ջանդ դուս գայ, սիրել էր բէմուրվաթը,
Երեսին մէ պաչ տալի ձեռից գանգատ ունիմ։

Մէ թիքա ղաղ էր ղրկի, հէնց գիտիմ անմահական էր,
Մին էլ հիտս խօսիլ էր, երկուսն ինձ բաւական էր,

*Էն չախն կու իմանէի, եթէ հիտս սիրեկան էր,*
*Էն ինձ գժուեցրից, խաղալը շատ դուրեկան էր,*
*Իր չարխով վարքով պտուտ գալի ձեռից գանգատ ունիմ։*

*Քանի հոգիս բերնումս, ղուրբան կուլիմ Նրա պէսին,*
*Արտասունքի ջհաթէն աչքէս կաթաւ կարմիր արին,*
*Ափալս չէ հարցնում՝ վունց իմ դիմանում դարդ ու սարին,*
*Եարաբ ո՞ր ջուրը տանէ էս բէշարա Բաղդասարին,*
*Ջահէլ օղլանն իմ էս չափի, բաղի ձեռից գանգատ ունիմ։*

## Զ

### ՄՈՒԽԱՄԲԷԶ

Նազլու եարս հիւանդ է, դեղ գիտենամ՝ շուտ ճար կանեմ,
Ջամանամթ, եարիս համար ես էսպէս ահուզար կանեմ,
Աշխարհքի հէքիմ ջառահ չիմ գնչացնի, բէզար կանեմ,
Ինչ բերնիցս դուս եկաւ, չիմանաք, թէ նքար կանեմ,
Ինչպէս Մէջլումն արաւ, էն բարաթ դարդ ու սար կանեմ,
Թաք ինձի չըբարկանաս, գլուխս քեզի նոքար կանեմ։

Ինձ համա վարդ բաց կուլիս՝ ինչ սհաթի քեզի տեսամ,
Ուզում իմ՝ օր ու գիշեր մօտդ նստիմ, օչով չէհամ,
Բանի կենդան իս, կենդան իմ, քու ուղուրին բադա կէհամ,
Թարիփդ բարաթ բարաթ մուխամբազ նախշքար կանեմ։

Աշխարհքումս բարեբար մէ քեզ նման թայ չըկայ,
Վունց կայսըր, վունց թագաւոր, վունց թէ շահլար-շահ չըկայ,
Վունց վրացի, ռուս, վունց այլազգ, վունց մէ ասլ հայ չըկայ,
Էգ քու ջամլու սփաթն վուղջի հիտ բարեբար կանեմ։

Փռանգստանու սուրաթ է երեսդ, ունես շամշ ու ղամար,
Խալդ աստղ է, աչքդ լուսին, վրէդ կապիլ է ունքդ կամար,
Ջահէլ օղլանն ինչպէս անէ էս զանազան դարդի համար,
Կու նստիմ գիշեր ցերեկ կամաց կամաց դահր կանեմ։



# ՔԷՑԻՃ ՕՂԼԻ—ԲԱՆԳԻ

### ՄՈՒԽԱՄԲԱԶ

Բօյդ նման է սալբու ըռվանի,
Եա՛ր, քո մանգալդ խելքս կըտանի,
Ծծերդ, կասեն՝ շատ արմաղան ի,
Թաւագա կանի Հնդի Եամանի,
Էդ քու տեսնողն էլ ի՛նչ նազ անի։

Բօյիդ սազ կըգայ ածլաս ու գիւլխաս,
Թառլանի գէյիմ, թօվուզի լիբաս,
Ոսկէ կուլա ես, համ էրծաթէ թաս,
Աստուած կը սիրես, մէկ դուն մօտս պաս,
Էդ իմ բէչարա դարդս իմանաս,
Մուննաթ չեմ անի սուլթանի, խանի։

Վարդի համար բլբուլը կըլինի լաց,
Էդ իմ դարդերը քեզ անեմ իմաց,
Աստուա՛ծ կըսիրես, մէկ երեսդ բա՛ց,
Էդ քո երեսդ վարդաջրով թա՛ց,
Քաղցր խօսալով, եա՛ր, խելքս գնաց,
Հոգեհանի պէս կանգնել ես գիմաց,
Թէկուզ ազատէ, թէկուզ սպանի։

*Քաղքումը կասեն՝ սէրին չըկայ ճար,*
*Քո գովքը կանի ալամ ու աշխար,*
*Մատներդ մումեղէն, ակռէքդ անգին քար,*
*Աստուած կըսիրէս, ծիծաղի՛ փառ փառ,*
*Բերանդ տաճար, լեզուդ է ճարտար,*
*Աղօթք արա՛ Քէշիշ օղլու համար,*
*Քանի որ սաղ ա, քո գովքդ կանի։*



# ՀԱՄԱՌՕՏ ԲԱՌԱՐԱՆ *)

## Ա

Աբա—վերարկու։
Աբասի—քսան կոպէկ։
Աբուլ—առթիւ, պատճառաւ։
Աբուռ—ամօթ, պատկառանք, պատիւ։
Ադաթ—ծէս, սովորութիւն։
Ադալաթ—արդարադատ, խիստ։
Ադիլ դիւան—արդար դատաստան։
Ազար—ժանտախտ, ցաւ։
Ազբար—չայիր, անպատրաստից երգող։
Ազբար անել—բերանացի անել։
Ազիզ—սիրելի, հաղուագիւտ։
Ազնիւ զաղա—ազնուորդի։
Ազրայիլ—հրեշտակ։
Աթլաս, կամ ատլաս—բեհեղ։
Աթմորդի—Ադամայ որդի։
Ալամ աշխարհք—տիեզերք։
Ալան վերան—առնող տուող։
Ալլահ—Աստուած։
Ալմաղ—չողակն, չառնող։
Ալվալ—լուր, համբաւ։
Ալվան—գոյնզգոյն, փայլուն։
Ախմախ—տգէտ, անգէտ։
Ախմիշ ըլիլ—հոսել։
Ախտա խան—ներքինի խան։ Այսպէս էր կոչւում Թիֆլիսն աւերող աղայ Մահմատ խան շահը։
Ախր—վերջ։
Ահլի—ծերունի, խելահաս։
Ահուզար—երկիւղ, սարսափ։
Ահջամալ—պայծառ դէմք։
Ահվալ կամ ահւալ—դրութիւն, կեցութիւն։
Ահվալաթ—լուր, տեղեկութիւն։
Ամ—տարի։
Ամբարդա—կաթսայ։
Ամբարդայուքար—ճիգն։
Ամակ—երախտիք։
Ամալ—ներութիւն, ճար, գործ։
Ամալի գալ—ապաքինուիլ։
Ամանաթ—աւանդ։
Ամանակ—ժամանակ։
Աման տալ—ժամանակ տալ, ազատել։
Այիբ—ամօթ, ամօթանք։
Այրլմիշ անել—անջատել, բաժանել։
Անգեալ—ծոյլ, դանդաղ։
Անգէթ—անսխալ, անվնաս։
Անդուման—աներկմտելի, անյայտ։

*) Որքան և մեծ աշխատանք է գործ դրուած բառերի իսկական նշանակութեանց համար, բայց և այնպէս հաւանական է, թէ անստուգութիւններ կարող են պատահել։ վրենք աշուղ հեղինակները շատ անգամ բառերը խեղաթիւրել են։

Անդ—երդում։
Անդազայ—կաղապար, ձև, չափ։
Անդայաղ—աննեցուկ։
Անեղ—աղեղն, երկնից կամար։
Անթարթ աչք—առանց փակելու։
Անխլաճ—անճար։
Անխլաֆ—անարատ, անթերի։
Անհէսաբ—անհաշիւ, անչափ։
Աննահախ—անդուր։
Աննամուս—անպատկառ։
Անուր—օղակ։
Անջախ—հազիւ հազ։
Անջիգեար—անգութ։
Անցան—յանցանք։
Անփրսանդ—անհնարք։
Աշկեարայ—յայտնապէս։
Ապաշխարող—եկեղեցու աւելածու, մեռել լուացող։
Ապրշում—մետաքս։
Աջար—արդեօք։
Աջալ—ճակատագիր, վճիռ։
Աջայիբ—չնաշխարհիկ, զարմանալի։
Աջէյիբ—տես՝ աջայիբ։
Առ—ամօթ, պատիւ։
Առ ու ղայրաթ—պատիւ ու ճիգն։
Ասնաֆ—արհեստաւոր։
Ատենի—ժամագիրք։
Ասլ—ազգ։
Ասնաւ—արհեստաւորաց դաս։
Արալուխ—արանք։
Արախչիկ կամ արախչին—գլխի թասակ, ծածկոց։
Արաղի սապոն—Հալէբի սապոն։
Արբար—զրկանք, տուգանք, եւ մեծ, գլխաւոր։
Արզ—խնդիր։
Արզուհալ—խնդրուածք։
Արզ ու նամ—փափագ։
Արխ—առու։
Արմաղան—գեղեցիկ։
Աւադ—շէն։ Աւադ անել—շէնացնել։
Աւազա—փոխարէն։
Աւալ ախր—վերջ ի վերջոյ։
Աւալ աւալ—նախ և առաջ։
Աւալի բաշտան—սկզբից։
Աւարա—տարագիր։
Ափալ—դրութիւն։
Աֆսոն—թովչութիւն։

Բ

Բար—հաւասար, ընկեր։
Բարաթ բարաթ—տեսակ տեսակ։
Բարի—կերպով։
Բադ—վատթար, ոչինչ, հպարտութիւն։
Բադա—դոհ, պատասխան։
Բադա անել—ստեղծել։
* Բադալխան—
Բադամալ—յանցաւոր։
Բադան—իրան, մէջք։
Բադանգ—դոշար։
Բադի ռուզգեար—վատ ժամանակ։
Բադրանգ—վարնգանման պտուղ։
Բազար—շուկա։
Բազիրգեան—առևտրական։
Բալա—մանկիկ, հոգս։
* Բալի—գուցէ։
Բալխի Բուխարայ—Բուխարայում քաղաք է։
Բալ-դամ։
Բալքա, կամ բալքեա—գուցէ։
Բահար—սև պղպեղ։
Բաղման կամ բաղվան—այգեպան։
Բայ—գնող, գործող։
Բայդաղ—դրօշակ։
Բայթալ—անասնաբոյժ։
Բայթաւուր—Ջնջլլամայ, երգի տեսակ է, շղթայաշար։
Բայղուշ—բու թռչուն։
Բանաւուշ—մանուշակագոյն։
Բանգ կամ բանգի—բնափուն, խաշխաշ, թմրեցուցիչ նիւթ։
Բանդա—մարդ։
Բանդիւան—անտէր, անճար։
Բանդ—կապ։
Բաշ—գլուխ, ծայր, գլխաւոր։
Բաշմաղ—կօշիկ։
Բաս—դաշն, ի հարկէ։

